# ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

# ՏԵԱՌՆ ՄԻԽԱՅԷԼԻ

## ԱՍՈՐԻՈՑ ՊԱՏՐԻԱՐՔԻ

# ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ
# ՏԵԱՌՆ ՄԻԽԱՅԷԼԻ
## ԱՍՈՐԻՈՑ ՊԱՏՐԻԱՐՔԻ

ՀԱՆԵԱԼ Ի ՀՆԱԳՈՅՆ ԳՐՉԱԳՐԷ

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ Ս. ԷՋՄԻԱԾՆԻ
Տ. Տ. ԳԷՈՐԳԱՅ
ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

ՀՐԱՄԱՆԱՒ
ՊԱՏՐԻԱՐՔԻ ՍՐԲՈՅ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ
Տ. ԵՍԱՅԵԱՅ
ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԵՒ Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ Կ. ՊՈԼՍՈՅ
Տ. ՄԿՐՏՉԻ
ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

---

ԵՐՈՒՍԱՂԷՄ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑ ՅԱԿՈՎԲԵԱՆՑ
1871

# Ի ՑԻՇԱՏԱԿ

## ՄԵԾԱՀԱՄԲԱՒ ՏԱՆՆ

## ԱԲԳԱՐԵԱՆ

## ՈՐ Ի ՀՆԴԻԿՍ



ՆՈՒԻՐԷ

ԳԵՐԱՄԵԾԱՐ ԵՒ ԱԶՆՈՒԱԿԱՆ

ՊԱՐՈՆ ՍԷԹ Յ. ԱԲԳԱՐԱՑ

ՇՆՈՐՀԱՊԱՐՏ ԵՒ ՑԱՐԳԱԿԱՆ

ԶԳԱՑՄԱՄԲՔ ՈԳՒՈՑ

ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԱԹՈՌՈՅՍ ՍՐԲՈՑ

ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ՊԱՏՐԻԱՐՔ

ԵՍԱՅԻ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Յետ տպագրութեան մեր զժամանա-
կագրութիւն Մատթէոսի Երիցու Ուռհա-
յեցւոյ, պատշաճագոյն համարեցաք զՄի-
խայելի Ասորւոց պատրիարքի զպատմու-
թեան գիրս ածել 'ի հրապարակ, որ իբրեւ
զառաջինն չեւ է տեսեալ տակաւին զլոյս, և
ոչ արտաքս քան զնեամս ազգային գրադարա-
նաց անցեալ, թէպէտ և օտարազգիք կան-
խեցին քան զմեզ տալ զնորին ընթերցումն
'ի բարբառ Գաղղիացւոց եթէ ամբողջապէս
և եթէ ըստամանեայ (1), որք հարկադրեցին
զմեզ զմասնաւոր դիտողութիւնս մեր 'ի բաց
թողեալ փութալ 'ի տպագրութիւն սորին՝
առօք ինչ յառաջագոյն մտադիր եղելոյ
մեր 'ի սոյն։ Եւ որովհետեւ կրկին օրինակք
են առ մեզ զանազան և տարբեր թարգմա-

(1) Մասնական թարգմանութիւնս արար Ե. Տիւլորիէ, հրատարակեալ յԱսիական օրագրին, յամի 1849։

նութեանց, մին տօնորական(1) որ առ բա-
զում գտանի, յորմէ փոխեալ է և Գաղղի-
երէնն. միւսն փոքր մի համառօտեալ, այլ
գլխովին տարբեր Թարգմանութիւն, զոր
'ի դէպ համարեցաք տպագրել, իբրև միակ
օրինակ որպէս համարիմք, որ և բազում ու-
րեք օգնէ 'ի լուսաբանել զմիւսն: Զսոցանէ
հարկ է մեզ տալ լիովին տեղեկութիւն. այլ
նախ 'ի դէպ համարիմք խօսել կարճառօտիւք
զհեղինակէ գրոցս որչափ ինչ գտանեմք յա-
ռաջնոցն քան զմեզ խօսեցեալ հետախոյզ
քննութեամբ:

Ծնաւ Միխայէլ, որպէս կարծի, յԱն-
տիոք քաղաքի, յամի 1126, 'ի յԱսորի ծնողաց
Յակոբիկ կոչեցելոց. անուն հօր նորա Եղի-
աս երէց 'ի Մելետինոյ, 'ի Գանտիսեան տոհ-
մէ: Կեանք նորա անտիական անծանօթ է ա-
մենեւին. յերեսուն և վեց ամաց հասակի ե-
կաց նա վանահայր մենաստանի սրբոյն Բարսա-
մայ Ճանայի, մերձ 'ի Մերտին, ուր է այ-
ժմ աթոռ կաթողիկոսութեան Ասորւոց:
Զկնի վախճանի Յովհաննու ԺԱ. Պատրի-
արքի, ընտրեցաւ սա ինքն Միխայէլ յաջորդ
Աթոռոյն 'ի ժողովի եպիսկոպոսաց գումա-

(1) Տօնորական օրինակն ամօք ինչ յառաջագոյն տպա-
գրեցաւ 'ի Ս. Աթոռս, այլ հրատարակութիւն նորա յետա-
թողեալ ցարդ. սպասելով զերկոսին օրինակսն միանգամայն
հանել 'ի հրապարակ:

րելոյ 'ի վանս Փշնի, և է նա Հարիւրերորդ
'ի շարս աթոռակալացն. ծնաւ 'ի 18 ամսեա-
նըն Հոկտեմբերի, 1166. Ի սկիզբն անդ գա-
հակալութեանն ըստ վաղեմի սովորութեան
ազգին, որպէս գրէ նա ինքն (յէր. 472) ա-
ռաքէ զգիր դաւանութեան իւրոյ առ Ս.
Ներսէս Շնորհալի, և զաթոռն պատրիարքա-
կան՝ որ էր յայնժամ 'ի յԱմիթ քաղաքի, փո-
խադրէ 'ի վանս Մար Հանանեայ (Ս. Անանի-
այ) մերձ 'ի Մերտին քաղաք. Յետ այնորիկ
և Միխայէլ յաջորդութիւն վանացն, հաս-
տատէր վանահայրս, և քաղաքաց քաղաքաց
կարգէր եպիսկոպոսունս. Էջն ել և յԵրու-
սաղէմ յերկրպագութիւն սուրբ Տեղեացն, և
դարձաւ անտի յԱնտիոք յամի 1168. Ի միւ-
սում տարւոջ առաքեցաւ առ նա Քրիստա-
փոր հանդերձ Թղթով 'ի կողմանէ Մանու-
էլ կայսեր վասն խնդրոյ միաբանութեան (1).
Ի նոյն նպատակ արդէն իսկ սկիզբն լեալ էր
Թղթակցութեան 'ի մէջ Ս. Ներսեսի Շնոր-
հալւոյ և Կայսեր, որ վասն եկեալ էր 'ի Հռ-
ոմկլա երկիցս անգամ Թէորիանէ և Յով-
հաննէս փիլիսոփայ յունական առ յիշեալ
Կաթողիկոսն. յորմէ հրաւէր հասեալ և առ
Միխայէլ Պատրիարք երթալ առ նոսա 'ի
ժողովն Հայոց. Նա փոխանակ առաքէ յա-

(1) Մէջ. Չամչեան. հա. Գ. յէր. 107.

ռաջնում նուագի զՅովհաննէս եպիսկոպոս Բեանդոյ, և յերկրորդումն զԹէոդորոս Քառ—Վեհեքոն կոչեցեալ, տալ պատասխանի բանից Թէոփրանեայ։ Միխայէլ գովութեամբ յիշատակէ 'ի պատմութեան իւրում (400) զՅովհաննէս եպիսկոպոս ասորի, մինչև յաղթահարել նորա բանիւք զիմաստասէրն Յունաց։ Նա կասկածեալ զՆերսիսէ, զոր յանդէպս համարէր նա հակառակէր լինել ընդունելոյ զդաւանութիւնն յունական եկեղեցւոյն, հրաժարեալ 'ի ժողովոյն դառնայ յետս։ Յետ ընդունելոյ Կոյսեր զԹուղթ խոստովանութեան Հայոց, զնոյն խնդրէ և 'ի Միխայելէ. և նորա առաքեալ զդաւանութիւն հաւատոյն, կոչէ զքանոնն յայտնելով եթէ ցանկալի է նմա կալ ընդ Յոյնս 'ի սէր միաբանութեան առանց հեռանալոյ յուղղափառութենէ հարց իւրոց և 'ի հայրենաւանդ ծիսից։ Այսպէս խնդիրն միաբանութեան մնայր առանց յաջողելոյ որպէս ընդ Հայս՝ նոյնպէս և ընդ Ասորիս։

Միխայէլ Պատրիարք այր հաստատամիտ և կապեալ սիրով ընդ հայրենի կրօնս իւր, սիրող էր և պայծառութեան եկեղեցւոյն իւրոյ. քանզի մինչդեռ ընդ Շնորհալւոյն Թղթակցէր վասն վերոյիշեալ խնդրոյն, 'ի նմին ժամանակի ձեռն արկանէր 'ի շինութիւն եկեղեցւոյ վանացն Սպու—Բարսումայ մերձ 'ի

Վարքայ։ Յերկրորդում ամի 1170, պատմէր նա 'ի վանս Մար Հանանոյ, 'ի ժամանակի յորում շարժն ահագին սասանեցուցանէր զքաղաքս Մուրեայ (463)։ Նաեւ ինքն Մխիթարէ ոչ գլուր դադարէր յայցելութեանց իւրոց և 'ի չքնաւթենէ եկեղեցեաց ընդ պաշտպանութեամբ խնամոց քրիստոնեայ իշխանացն Փռանկաց, յորոց ձեռս էր յայնժամ իշխանութիւն քաղաքացն Ասորեաց։

Յառաջոց անտի դաւանակցութեան իւրոյ ունէր Մխիթարէ պէշխանութեան իւրոյ թեկնածուս և նախանձոտս յեպիսկոպոսաց անտի, որք ընդ ակամբ հայէին 'ի նա, վասն որոյ և 'ի պատեհ առեալ զանցականութիւն նորա յաթոռոյն, ընտրեն 'ի ժողովի եպիսկոպոսաց զնախայիշատակեալն Աթեղոգոս Տար—Վ եհերոն, որ կոչեցաւ Յովհաննէս. և այսպէս յերկուս ձեղքեր պատրիարքութիւնն՝ ունելով իւրաքանչիւր միձանս առանձին։ Իսկ Մխիթարէ գումարեալ զեպիսկոպոսունս իւր, ընկենու զՅովհաննէս յԱթոռոյն. և նա, քան գրեալ Ասեմանեաց, յետ ոչ բազում ամաց հաստատի յիշխանութեան իւրում 'ի ձեռն Լեւոնի Բ. 'ի սահմանս Կիլիկիոյ. այլ ոչ տեւեալ առաւել քան զամս 13, խափանի աթոռ նորա և դադարէ երկպառակութիւնն (1). Նոյնպէս

(1) Մէջ. Չամչեան. Հտ. Գ. եր. 183։

Միխայէլ բազմահնար և բազմագան կենաց եւ յընտանի խռովութիւնս անցուցեալ զաւուրս իւր՝ վախճանի յամի 1199, ՚ի հասակի 73 ամաց, կացեալ յաթոռն ամս 33. և մարմին նորա ամփոփի յիւրաշէն եկեղեցւոջ վանացն սրբոյն Պարսամայ, յայրի միում զոր ինքն էր փորեալ ՚ի կենդանութեանն ։

Ոչ դուզնաքեայ ոք էր Միխայէլ յազգի անդ իւրում և առաջի եկեղեցւոյն, այլ զօրաւոր բանիւք եւ լի ազդեցութեամբ. յամբառնալ իւրում յաթոռն Թէպէտ և ունէր անձին հակառակորդս, այլ նա ամենայնի յաղթէր. որպէս և զերզօրորդի իւր ըզՅեսու, որ զայդ խորամանկէր ՚ի ծերութեան նորին զբարձրագոյն աթոռն թեկնածելով, նախատակած արարեալ ցրուէր զխորհուրդս նորա զամենայն ։ Համարումըն և զվարկ ազգին իւրոյ ստացեալ ունէր ՚ի շնորհս հանճարոյ իւրոյ և գիտութեան, եւս առաւել աշխատութեամբք և մեծախորհում վաստակօքն զոր վաստակէր ՚ի շինութիւնս վանորէից և եկեղեցեաց. այլ առաւել քան զառաւել նշանաւոր էր ՚ի նմա նախանձ ազգային եկեղեցւոյն իւրոյ և հայրենաւանդ ծիսից, որով թերեւս փոքր ինչ քան զչափն անցեալ Թուեցի յաչս քննասէրաց, եթէ չիլ ակամբ և միակողմանի դատիցեն զնորա հակակրութիւնն զոր ցուցա-

նէ յամենայն առ խիթս ընդդէմ չորրորդ ժողովոյն և քաղկեդոնականաց, վասնորոյ և առ Ա. Ներսէս Շնորհալի գրեալ զգուշացուցանէ զնա 'ի ժամանակս խնդրոյ միաբանութեանն, յասելն (459). «Այդ կրօնքդ 'ի մե-
»րոյս մերձ է. բայց ես ոչ կամիմ զճշմար-
»տութիւն կրօնից հարցն ձերոց փոխել. զի
»թէ մեծ և կամ փոքր և կամ դաւանութիւն
»փոխէք, երեւի թէ թերի էիք մինչեւ ցայ-
»ժըմ և արդ լնայք, և դեռ կատարեալ ե-
»ղերուք անկ առեալ մարդոյ»: Բանզի այն պակասութիւն զոր տեսանեմք 'ի Միխայէլ, որ 'ի մոլեռանդութիւն ածէ զմարդ, բաց մասպատիկ առաւել տեսանելի է 'ի Յոյնս և յեկեղեցականս նոցին, որք որպէս զհայս զնոյն օրինակ և զԼատինս հերետիկոսս համարէին վասն ոչ ընդունելոյ զչորրորդ ժողովոյն խոստովանութիւն, այն է երկուս բնութիւնս 'ի Քրիստոս: Այլա ուրեմն ոչ է ստգտանելի պատմագիրս եթէ 'ի զգուշութիւն եկեղեցւոյն իւրոյ և ապագայ սերընդոյն բազում ինչ և կասկածելիս և դժուարահաւանելի դէպս և արտամէջս 'ի մէջ բերէ 'ի գիրս յայս, որք համարին ստուերանձս արկանել զիմաստութեամբ նորին և զքաջախոհութեամբ:

Միխայէլ ոչ միայն ընդհանուր պատմութեան, այլ և աստուածաբանական խնդրոց

ցուցանէ զնոքն հմուտ գոլ, որպէս տեսանի
'ի քահանայութեն Ճառին որ յաւարտ պատ-
մութեանս. տեղեակ թուի և յունական,
հռովմէական և Ասորւոց լեզուաց. իսկ
հայերէն բարբառոյ ոչ այնչափ, մանաւանդ
եթէ և անգէտ իսկ ազգային պատմութեա
նորա վարկանի, որպէս երեւի 'ի պատմել անդ
զմահուանէ Ներքոսիթայ, զորմէ ասէ մե-
ռանել ընդ փղատակօք աշտարակին, և սակս
'ի գիտնոցն Հայոց անշուշտ տեղեկացեալ
ուղղէ զկարծիսն՝ յասելն (16). "Մտուգե-
" ցաք յետ ժամանակի սպանանել նմա 'ի Հայ-
" կայ որդւոյ Թորգոմայ". Որչափ մեծ է հա-
կակրութիւն նորա առ քաղկեդոնականս,
նոյնչափ առաւել համակիր է և համախոհ
ընդ եկեղեցւոյն Հայոց և ընդ ազգին,
մինչեւ զթագաւորութիւն և զքահանայա-
պետութիւն Հայոց պարծանս համարել Ա-
սորւոց, և նոքօք ունել աճումն եկեղեցւոյ
իւրեանց 'ի Քրիստոս և սուրբ հաւատոյ-
թեան (Ճառ. քհ. 31,) վասն որոյ և զՃառն
իսկ քահանայութեան համարի յօրինեալ 'ի
նպաստ և 'ի պարծանս հայկական եկեղեց-
ւոյս զոր և աւարտէ 'ի մեր քահանայապե-
տութիւն, 'ի մէջ բերելով զպատուապանագիր
Կաթողիկոսացն Հայոց մինչեւ ցաւուրս իւր.
Այսչափ ինչ զքաղաքավարութենէ կենաց
և զանձին յատկութեանց խօսեցեալ հեղի-

նակի՛ս, խօսեցայք և զնորին գրոցն պատմութեան։

Որպէս կանխեցաք ասացաք, կրկին են առ մեզ թարգմանութիւնք մի քան զմի զանազանեալք եթէ շարակարգութեամբ պատմելեացն իրաց և եթէ յապաւմամբն և յաւելմամբ ինչ ինչ պարագայից։ Մեք 'ի բազում պատճառաց և 'ի մասանց համարիմք զերկուսն եւս ուրոյն յեղեալ 'ի մեզ յասորի բնագրէն, թէպէտ և 'ի նմին թարգմանչէն ; և 'ի նմին յարմարակէ ըստ լեզուիս մերոյ. քանզի որչափ տարբեր իցեն թարգմանութիւնքն այնչափ մերձաւորք են միմեանց 'ի յոլով տեղիս ոճով ասացուածոյն և բառից ընտրութեամբ և զուգադրութեամբ։ Եւ որ անկասկած առնէ զմեզ 'ի կարծիս մեր զանազան լինել թարգմանութեանցս, այն է զի 'ի համառօտութեանս յայտնիկ գտանին պարագայք և մանաւանդ յիշատակութիւնք բոլորովին այլազգ քան զմիւսն։ Օրինակ իմն, զծագմանէ Աբգարեանցն խօսելով, օրինակն մեր առնէ (431) երկուս որդիս Աւնէ Աբգարայի, այն է Աբգարինի և Աղուբ, որք յանցեալ ընդդէմ պատուոյ հօր իւրեանց՝ փախուցին 'ի կողմն Ափրիկեյ։ Իսկ միւս թարգմանութիւնն առէ․ Աղեայ խալխալին Եգիպտոսի էին որդիք երեք, յետ մահուան հօրն երէցն իշխանացեալ՝ խորհէր սպանա-

գիրն յորմէ ընդօրինակեալ է երկրորդս այս , գրեալ է քան և հինգ ամօք յառաջագոյն , այն է 'ի թուին ՈՂԵ , որպէս ցուցանէ մակ-բայս այժմ (507)։ Առաջնոյ ընդօրինակողին է շարայարութիւնն սկսեալ յամէ 1216 մինչև 1229 , այն է թիւն Հայոց ՈՀԸ . յորում կրկ-նէ որ ինչ զՍամուէլէ և զնորին անուանութե-նէ են բանք։ Իսկ Միխայէլ , որ վախճանեալ համարի յամի 1199 , որպէս երևայ և մեզ , հասուցեալ զպատմութիւն իւր մինչև ց1196 կամ ցհայ թուականութիւնն ՈԽԵ (603) , ա-ւարտէ երիւք ամօք յառաջ քան զթագա-ւորութիւն Լևոնի Բ . և որ ինչ յետ այ-նորիկ համառօտ բանք զՍամուէլէ , համարի և այն յայլմէ յաւելեալ յասորի բնագրին , մինչև ցամն ՈՀԸ , յորում ժամանակի էին Սամուէլի ուսանելք և դասելք 'ի Հեթմոյ ։ Ապա թէ ոչ՝ հարկ լինի մեզ ընդունել , եթէ կեանք Միխայէլի անցեալ իցեն զհարիւրա-մենիւք , որպէս և Գրիգոր 'ի կրկին յիշատա-կարանս իւր (525 . 44) նմա ընծայէ որ ինչ մինչև ցՈՀԸ պատմին բանք ։

Իսկ թէ ո՛ ոք թարգմանիչք եղեն կրկին երկասիրութեանցս , ոչ ոք ցարդ ճշգրտա-գոյն ինչ լուսաբանեաց ։ Առաջին թարգմա-նութիւնն եղև որպէս համարի , ձեռամբ Ի-շօխ քահանայի և Վարդանայ՝ աշակերտի Վա-նականին՝ նմին տառապչի , որպէս և յօրինակս

ինչ նոյն Թարգմանութեանն յանուանէ յի-
շատակի այսպէս . «Այլ և մեք իսկ տառա-
պեալ ոգի Վարդան վարդապետս» (1) : Արա-
րեալ է ըստ խնդրոյ Կոստանդին Ա Կաթողի-
կոսին յամի 1248, ՚ի Թուին Հայոց ՈՂԷ, որ
ստուգագոյն հաշուով պատասխանէ 1248
ամին Քրիստոսի (42) : Իշոխ էր ազգաւ Ասո-
րի, որոյ անուն ՚ի մեզ Յեսու լսի և ոչ Իսա-
հակ, որպէս ոմանք իմանան : Ի հնագոյն ձե-
ռընտրի միում գտանեմք զճառն Յակոբայ
Մծբնացւոյ ՚ի սուրբն Թադէոս և յԱբգար,
«Թարգմանեալ ՚ի Թուին ՈՂԷ, յԱսորւոց, ՚ի
» ձեռն Շմոնի քահանայի ասորւոյ, հրամա-
» նաւ Վարդան վարդապետի». առանց տա-
րակուսանաց և սոա Շմոնն է Յեսուն. քան-
զի ՚ի նմին ձեռագրի յիշատակի դարձեալ ՚ի
սկիզբն գրոցն յորում խօսի ՚ի վերայ բնու-
թեան աշխարհի և բնական աշխարհագրու-
թեան, անուն հեղինակին Իշոխ քահանայ,
որ է ասէ՝ ըստ հայումս Յեսու : Այն սա
հաւանիմ ասել՝ եթէ իցէ եղբօրորդի Մի-
խայելի պատրիարքի Յեսու անուն, զոր մե-
րագոյն յիշեցաք, այր գիտնական և հմուտ
բժշկական արուեստի : Որք յառաջելոցս տե-
տի դիւրին է մեզ մակաբերել՝ եթէ Թարգ-
մանիչ երկոցունցս իսկ օրինակաց իցէ Իշոխ

(1) Տես յաւելուածն օրինակի տպագրին, յեր. 613.

քահանայ։ Իսկ Վարդան վարդապետ յար-
դարիչ և ենթ լեզուին՝ պարզ և ընտանի խօ-
սիւք ժամանակին իւրոյ յարմարեալ։ Քանզի
երկուքին իսկ բնագիրք առեն թարգմանեալ
հրամանաւ նորին Կաթողիկոսի և 'ի մի և 'ի
նոյն թուականի (41)․ նախ զհամառօտն մեր
զայս, և ապա զմիւսն, որ և տարածեալ կայ
յազգիս։

Ի տարագրութեան յայսմիկ կարեւոր դա-
տեցաք դնել 'ի ստորեւ իւրաքանչիւր իրի
զբացայայտութիւն մթին իմացուածոց բա-
ռից և իմաստից որք թուին աղրդեալ յա-
ւէտ յառաջի թարգմանչէն քան յընդօրինակ-
չէս, քանզի միօրինակ մթութիւնք գտանին
և 'ի միւսում թարգմանութեան՝ մանաւանդ
'ի յատուկ անուանս մարդոց և քաղաքաց,
զոր ուղղեցաք յայտուստ կամ 'ի մէջ փա-
կագծի եդեալ և կամ 'ի ստորեւ։ Եւ ուրեք
եւս հարկ եղեւ մեզ լուսաբանել զպարա-
գայս ինչ դիպաց, յոր հեղինակն կարի սղ-
ութեամբ խառնեալ էր, մինչեւ անյայտ
մնալ պատմութեան՝ որոց չիցեն տեղեակք։

Երկրորդ գիրք երկասիրութեան Միխա-
յելի է ճառն յաղագս Քահանայութեան,
զոր 'ի վախճան պատմութեան իւրոյ 'ի միւս
թարգմանութեան հայերէնին (532) խոստա-
նայ գրել ասելով. "Դարձեալ նովին յուսով
ու . . . . երկրորդ անգամ ծովամուխ լիցուք.

» յանհատական խորս քահանայական կարգաց
» և զարդուց, ևթէ ուստի՛ սկսաւ և ո՛ւր ըն-
» ցաւ և յո՛ կատարի։ . . . . » Ի սմին ճառի
փայլէ առաւելապէս հմտութիւն հեղինա-
կիս յաստուածաբանական գիտութեան և
խորին հանճար նորին։ Նա սկիզբն եդեալ
քահանայութեան զԱդամ, առեալ իջու-
ցանէ մինչեւ 'ի ճշմարիտ քահանայապետն
Յիսուս, և անտի յԱռաքեալս։ Խօսի ուրոյն
և զհնգից Աթոռոցն, 'ի մէջ բերեալ և ըզ-
կարգ աթոռակալացն. և կնքէ զճառն 'ի
կաթողիկոսութիւնն Հայոց, հիմն եդեալ
նորա զՅիսուս կամ զԼուսաւորիչս և զԹա-
դէոս առաքեալսն, և զեկեղեցին Հայաստա-
նեայց կոչէ «Պատկերեալ 'ի Փրկչէն անդրա-
նիկ հաւատով 'ի ձեռն Աբգարու » (27). և
զգաւազան հայրապետացն հասուցանէ մինչև
'ի Ներսէս Շնորհալի։ Ի սմին ճառի առաւել
զգալի ցուցանին տարբերութիւնք Թարգմանու-
թեանցն, և է քան զպատմութիւնն առաւել
համառօտեալ, մինչեւ առաջնկոյ տպագիրն
հազիւ թէ զերրորդ մասն միւս Թարգմա-
նութեան կազմէ։ Այլ ոճ ասացուածոց եր-
կոցունցն համեմատ է բարձրութեան իմաս-
տից ճառին, յորմէ յայտնագոյն երեւի լինել
Վարդանայ քան այլոյ ուրուք հետեւորդ
մատենագրի, որ և լրացուցանէ զկարգ Կա-
թողիկոսացն մինչեւ ցաւուրս իւր Կոստան-

գին Ա. զոր ներբողական բանիւ գրուատէ ։

Եւ Միխայելի և այլ գրաւոր աշխատու-թիւնք և եկեղեցական մատենագրութիւնք որք չեն Թարգմանեալ 'ի Հայումս ։ Նորա է դարձեալ և խոստովանութիւնն հաւատոյ-որ, գտանի 'ի միւսում Թարգմանութեան (574) կից Ճառին քահանայութեան ։

Իսկ որ ինչ յաղագս Գրիգոր վարդապե-տի են գիտելիք, որ է գրիչ հայերէն բնա-գրիս, որ խոստանայ յեր. 528, գրել զանցս 44ից ամաց, սկսեալ յամէ 1248 մինչեւ 1272, այն է զյարձակումն Թաթարաց 'ի Հայս, որոյ գործ ընծայի յազգիս մերում Մաղաքի-այ ուրումն աբեղայի, խօսեցեալ է մեր ար-դէն 'ի յառաջաբանի նորին պատմութեան Թաթարաց տպեալ 'ի սուրբ Աթոռս յա-մի 1870 ։

# ՏԵԱՌՆ ՄԻԽԱՅԵԼԻ

## ԱՍՈՐԻՈՑ ՊԱՏՐԻԱՐՔԻ

# Ժ Ա Մ Ա Ն Ա Կ Ա Գ Ր Ո Ւ Թ Ի Ւ Ն

յԱդամայ սկսեալ մինչեւ առ. մեզ։

## Ա.

Ես, եղբարք աստուածասէրք եւ ուսումնասէրք, հայելով 'ի բազմութիւն ժամանակագրաց որում կարօտեալ էի, խնդրեցի յիմ. եւ յոլովից լսելիս 'ի յանձնախութենէ զրուցաց, եւ համառօտեցի՝ քաղելով զպիտանին եւ ըզ-շահաւորն՝ յեկեղեցականացն եւ յարտաքնոցն. ընդոստուցանել զմահաբեր ծուլութիւնս բազմաց, եւ 'ի բաց հանել զանփոյթութեանն խաւար, ակն կալեալ վերին հատուցմանն աշխատութեանս մերոյ. Թողլով զսա գանձ Եկեղեցւոյ եւ վարժարան մանկանց Նորոյ Սիոնի, որ զկնի մեր գալոց են։

Եւ պարտ է մեզ սկիզբն գրոցս դնել զըս-կիզբն մարդկութեանս զԱդամ, զի շինուա-ծըն հաստատեսցի հիմամբ. և է այսպէս ա-գուտ ասողացս և լսողացն։ Բայց պարտ է նախ դնել զանուանս պատմագրացն՝ ուստի հանդերձեալ եմք ժողովել զնիւթ շինուա-ծոյս մերոյ։

Ափրիկանոս և Յեսու (1), և Հեքսիպոս (Հեգեսիպպոս) և Յովսեպոս հրեայքն գրե-ցին մինչեւ 'ի գալուստն Քրիստոսի։

Անանոս կրօնաւոր աղէքսանդրացի, գը-րեաց 'ի յԱդամայ մինչեւ 'ի Կոստանդիանոս թագաւորն։

Եւսեբիոս Պամփիլեայ, յորոց գրոց ժո-ղովեաց զիւրն և անուանեաց Եկեղեցականս։

Զոսիմոս և Սոկրատ և Թէոդորետոս հերետիկոս, 'ի Կոստանդիանոսէ սկսեալ մինչ 'ի Թէոդոս (փոքրն) գրեցին։

Յովհաննէս Անտիոքայ և Ծեպելու (2), և Թէոդորէ գրակարդացն Կոստանդնուպօլսոյ, և Զաքարիա եպիսկոպոս Մելտենւոյ գրեցին 'ի Թէոդոսէ մինչև 'ի Յուստինոս Ծերն։

Յովհաննէս ասիացին գրեաց յԱնաստա-սայ մինչ 'ի Մօրիկ։

(1) Յեսուայ՝ կամ ըստ բնագրին Յեսովայ պատմագրի գործք կորուսեալ համարին. Նոյնպէս և Ալիւա երէց Մելիտի-նոյ և Դիոնէսիոս Աղէքսանդրիոյ, են՝ իսպառ մեզ անծանօթք։

(2) Ծեպել քաղաք է 'ի սահմանս Լիբանանու։

Կաւրոս (Կորիա կամ Կիւրոս), 'ի Յուս֊տինիանոսէ մինչ 'ի Հերակղ գրեաց, և վասն ժամանելոյն Տաճկաց յերկիրն Ասորւոց, որ ե֊ղեւ 'ի ժամանակս Հերակլեայ։

Եւ սուրբն Յակոբն ուռհայեցին հա֊մառօտ ընդ ամենն էանց։

Եւ Դիոնէսիոս պատրիարքըն գրեաց 'ի Մօրիկէ մինչ 'ի Թէոփիլէ թագաւորն Յու֊նաց, և մինչ 'ի յԱհարոն (Հարուն) ամիրայն Տաճկաց։

Իգնատիոս եպիսկոպոս Մելտենւոյ, և Սլիբա երէց Մելտենւոյ և Յովհաննէս 'ի Քեսնոյ, և Դիոնէսիոս (Աղէքսանդրացի) Սալի֊բին որդին, արարին համառօտ պատմագրու֊թիւն յԱդամայ մինչև յիւրեանց ժամանակն։

Արդ՝ առաջեալ ժամանակագիրքդ հայե֊լով 'ի յօժարութիւն ուսումնասէր լսողաց ժամանակին՝ փարթամագոյնս գրեցին. իսկ մեք 'ի յերեկոյացեալ ժամանակս հայելով 'ի ծուլութիւնս մեր, կարճագոյն և թեթե֊ւակի անցցուք ընդ իւրաքանչիւրսն։

Այլ և պարտ է ուսումնասէր արանց ոչ անգիտանալ վասն աւելի և պակաս գտնելոյն զթիւ ժամանակաց, զի ճշմարիտ է բանն Տեառն, թէ Հայր եդ յիւրում իշխանու֊թեան զգիտութիւն ժամուց և ժամանա֊կաց։ Զ. է յոլով զանազանութիւն գտանի յԵւթանասնիցն թարգմանութիւնն, և զոր

ունին Ասորիք, զայն որ Աբգար արքայ ետ
թարգմանել, եւ ստուգեաց Յակոբ. ուռհա-
յեցի հնարիւք լեալ իբրեւ զմի 'ի Հրէից՝
զի մի թագուսցեն զճշմարտութիւն 'ի նմանէ:

Արդ՝ ըստ Եւթանասնիցն՝ Ադամ լեալ
երկերիւր եւ երեսուն ամաց, ծնաւ զՍէթ.
եւ եկեաց այլեւս չորեքհարիւր վաթսուն ամ:
Եւ լինին ամենայն ժամանակք կենաց նորա
ինն հարիւր երեսուն ամ, մինչեւ 'ի հարիւր
երեսուն եւ եւթն ամն Մաղաղիէլի. եւ մեռա-
վաթսուն ամաւ յառաջ քան զծնունդն Ե-
նովքայ. եւ է միջոցն սխալ եւ ոչ իմանան:
Իսկ ըստ Ասորւոցն՝ Ադամ լեալ հարիւր երե-
սուն ամաց, ծնաւ զՍէթ. եւ եկաց այլ եւս
ութ հարիւր ամ, որ ճշմարտապէս ինն հա-
րիւր երեսուն ամ է: Ասանոս կրօնաւոր առա-
նու վկայութիւն յԵնովքայ գրոցն, թէ Ա-
դամ յետ ելանելոյն 'ի դրախտէն, զկնի եւ-
թանասուն ամի գիտաց զԵւա, եւ ծնաւ ըզ-
Կայէն, եւ յետ եւթն ամի ծնաւ զԱբէլ. եւ
զկնի յիսուն եւ երեք ամի ծնանելոյն զԱբէլ,
սպան զնա Կայէն. եւ սգային զԱբէլ Ադամ
եւ Եւա հարիւր ամ, եւ ապա ծնաւ զՍէթ
որդի մխիթարութեան:

Եւ Մադիդիոս (Մեթոդիոս) պատարիացի
ասէ, թէ յետ երեսուն ամի ելիցն 'ի դրախ-
տէն՝ ծնաւ զԿայէն եւ զԿլիմիա քոյր իւր,
եւ զկնի երեսուն ամի ծնաւ զԱբէլ եւ զԼե-

լուղա քոյր իւր. և զկնի հարիւր երեսուն ամի սպանաւ Աբէլ, և յերկերիւր և երեսուն ամին Ադամայ ծնաւ Սէթ. Եւ այսու գիտասցես զամենայնութիւն պատմագրացն.

Յադամայ մինչև յԱրեդի վեցերորդ-ծնունդն ժողովին ամք ինն հարիւր երեսուն. Յայնքան ժամանակս ոչ գոյր Թագաւոր, զի Ադամ ձեռագործ Աստուծոյ յերկիւղ և 'ի խորին կարգաւորութեան բաւական էր նոցա. և յետ նորա մահուանն իշխէր Սէթ հարիւր եւթանասուն և ութ ամ. Եւ 'ի ժամանակս Սեթայ յիշեցին որդիքն նորա զկեանս դրախտին և հրաժարեցին յամուսնանալոյ, և ելին 'ի լեառն Ահերմոնի, և կային ժուժկալութեամբ, և վասն այնորիկ անուանեցան Որդիք Աստուծոյ և հրեշտակք.

Սէթ՝ ըստ Եւթանասնիցն կեցեալ ամս երկերիւր և հինգ, ծնաւ զԵնովս, և ըստ Ասորւոյն հարիւր յիսուն ամ. և լինին ամք ժամանակաց նորա ինն հարիւր եւթանասուն ամ ըստ Յունաց և Ասորւոց.

Ենովս՝ ըստ Ափրիկանոսի և Ենանոսի ծընաւ որդի 'ի (հասակի) հարիւր իննսուն ամաց. և ըստ Ասորւոցն՝ իննսուն ամաց. Սա յուսացաւ կոչել զանուն Տեառն Աստուծոյ, և յորդորէր զմարդիկ 'ի գործս բարեաց. և լինին ամք նորա ինն հարիւր և հինգ.

Կայենան հարիւր եւթանասուն ամաց

ծնաւ որդի ըստ Եւթանասնիցն, և ըստ Եբրայեցւոց՝ եւթանասուն ամաց. և ամենայն ամք նորա ութ հարիւր յիսուն։

Մաղաղիէլ հարիւր վաթսուն և հինգ ամաց ծնաւ որդի ըստ Եւթանասնիցն, և ըստ Եբրայեցւոցն վաթսուն և հինգ ամաց. և ամենայն ամք նորա ութ հարիւր իննսուն և եւթն ամ։

Յարեդ՝ ըստ Եւթանասնիցն և ըստ Եբրայեցւոցն հարիւր վաթսուն և երկու ամաց ծնաւ որդի, և ըստ Սամարացւոցն վաթսուն և երկու ամաց. և լինին ամենայն ժամանակք նորա ինն հարիւր վաթսուն և երկու ամ, մինչև ՚ի վեց հարիւր ամն Նոյի։

Ի քառասուն ամն Յարեդի լցաւ հազար ամն։ Եւ յայսմ ամի ձանձրացեալ որդիքն Սեթայ իջին ՚ի լեռնէն Հերմոնի, և անկան ՚ի ցանկութիւն կանանց, և էին թուով երկերիւր։ Եւ ՚ի նոյն ժամանակս կացուցին թագաւոր՝ որում անունն էր Սամարիոս (1), և վասն այսորիկ պատմէ Ենանոս, թէ յիջանելն ՚ի լեռնէն և ՚ի հրեշտակական վարուցն որդւոցն Սեթայ, բարկացան եղբարք իւրեանց, և ոչ ետուն նոցա կանայս։ Եւ նոքա գնացին առին ՚ի դստերացն Կայենի զորս ընտրեցին. և ծնան ՚ի նոցանէ հսկայք անբարտաւանք, մեծապատկերք և սպանողք։ Եւ

(1) Աբուլֆարաճ Սամիրոս կոչէ զսա. իսկ Վարդան և միւս Թարգմանութիւնն Սամիրա կամ Եամիրս։

մինչ 'ի յայս ժամանակս կայր Երկիւղ Աս-տուծոյ և խաղաղութիւն, և առատ բարեաց, և կալաւ զնոսա խռովութիւն և ապստամ-բութիւն և ապականութիւն։ Եւ լուան զայս որդի-քն Սեթայ որ կային յերկրորդ կլիմն, որ է բաժին, և եղին և նոքա իւրեանց թա-գաւոր 'ի Քաղդէացւոց երկրին զԱլորոս (1)։ Սա եգիտ զաստեղագիտութիւնն և զթիւս կենդանատեսակաց և մոլորակաց և զշրջմուն-նոցա. և 'ի սմանէ առաւելեցաւ քաղդէ-ութիւն։ Եւ սա թագաւորեաց ամս յիսուն և ութ *։ Եւ զկնի նորին որդի իւր Ալփարոս թագաւորեաց ամս քսան և հինգ և աւուրս երկերիւր յիսուն և հինգ։ Եւ զհետ նորա թագաւորեաց Ալմիոն քաղդէացի 'ի Փու-դիւիլոն քաղաքէ, ամս հարիւր քսան և ութ և աւուրս ութսուն։

Չորրորդ թագաւոր՝ Ամմենոն քաղդէա-ցի թագաւորեաց ամս հարիւր ութևտասն, և աւուրս հարիւր երեսուն։

Հինգերորդ՝ Ամակարոս քաղդէացի թա-գաւորեաց ամս հարիւր եւթանասուն և եւթն, և աւուրս հարիւր յիսուն և եւթն։

Վեցերորդ՝ Դաւոս հովիւ քաղդէացի թա-գաւորեաց ամս յիսուն և ութ, և աւուրս երկերիւր երեսուն։

(1) Եւսեբիոս այսպէս ուղղագրէ զանուանս թագաւորացս. Ալորոս, Ալապարոս, Ամելոն, Ամմենոն, Ամեգալարոս, Դաւո-

Եւթներորդ՝ Եւսուրինքոս քաղդէացի թագաւորեաց ամս հարիւր եւթանասուն և հինգ, և աւուրս հարիւր իննսուն և հինգ։

Ութերորդ՝ Ամփիոս քաղդէացի յԼա-նարքոն քաղաքէ, թագաւորեաց ամս հարիւր իննսուն և հինգ, և աւուրս երկերիւր երե-սուն։

Իններորդ՝ Օտիարտոս 'ի Լնարքոն քա-ղաքէ, թագաւորեաց ամս եւթանասուն և ութ, և աւուրս երեք հարիւր երեսուն։

Տասներորդ՝ Քսիսութրոս որդի նորա թա-գաւորեաց ամս հարիւր եւթանասուն և եւթն, և աւուրս հարիւր իննսուն և հինգ։ Ժողովքն ամք հազար հարիւր ութսուն և ե-րեք, և աւուրք երկերիւր և հինգ։ Եւ յա-ւուրս սորա եղեւ Ջրհեղեղն ըստ քաղդէա-ցի գրոց։

Որ զժամանակ թագաւորացն հազար հա-րիւր ութսուն և երեք[1], և զաւուրց թագա-ւորութեան ժամանակն հազար յիսուն և երկու, և առնի ընդ ամենայնն միանգ 'ի Ջըր-հեղեղն՝ երկու հազար երկերիւր քառասուն և երկու ամք ըստ Աստուածաշունչ գրոց։

Իսկ Ենովք եղեալ հարիւր վաթսուն և

նոս, Եդովրախոս, Ամենփսինոս, Ոտիարտէս, Քսիսութրոս։

(1) Միւս թարգմանութիւնն ունի 1180 ամ, իսկ զա-նիշխանութեան ժամանակն դնէ 1062, որով զումարին նը-շանակեալ ամքն 2242։

հինգ ամսոյ՝ ծնաւ որդի ըստ Եւթանասնից (զՄաթուսաղա), և ըստ Եբրայեցւոց վաթսուն և հինգ ամաց։ Սա եգիտ գիր, որով Քաղդէացիք վարին։ Եւ հաճոյ եղեալ Աստուծոյ զերկերիւր ամ, փոխեցաւ որպէս գիտէ փոխողն Աստուած՝ ուր կայ։ Ոմանք ասեն թէ 'ի դրախտն ուստի ել Ադամ։

Մաթուսաղա լեալ ամաց հարիւր ութսուն և եւթն՝ ծնաւ որդի ըստ Եւթանասնից և Եբրայեցւոց։ Եւսեբի և Եպիփանու հարիւր վաթսուն և հինգ ամաց ասեն, իսկ Սամարացիքն վաթսուն և երկու։ Եւ ինքն ամենայն ժամանակք նորա ինն հարիւր վաթսուն և երկու, մինչեւ յիննսուն և ութ ամին Ենովայ։

Ղամէք լեալ ամաց հարիւր ութսուն և ութից, ծնաւ որդի ըստ Եւթանասնից, և ըստ Եբրայեցւոց հարիւր ութսուն և երկու ամաց, և ըստ Սամարացւոցն յիսուն և երեք ամաց։ Եւ լինին ամենայն ժամանակք նորա եւթն հարիւր եւթանասուն և երեք ամ, մինչեւ 'ի վաթսուն և ինն ամին Ադամայ. և սա մեռաւ նախ քան զհայրն քսան և ինն ամաւ։

Ի հազար վեց հարիւր վաթսուն և վեց ամի եղեալ Ադամայ ծնաւ Նոյ. այր արդար 'ի ծնողացն իւրոց. և այնհետեւ հինգ հարիւր ամ և ըստ Եբրայեցւոց հինգ հարիւր երկու ամ. և յերեք հարիւր յիսուն և ութերորդ ամին նորա կատարեցան երկու դարք։

Ասէ Անիանոս, թէ 'ի յաճախել մեղաց մարդկանն, թողեալք եղեն 'ի ձեռաց Աստուծոյ. և յորդեցին 'ի նոսա պատերազմունք և կռիւք, և լցաւ երկիր ոսկերօք ըսպանելոցն, և կուտեալ լինէին իբրև ըղբլուրս. և բարկացեալ Տեառն Աստուծոյ՝ ած ջրհեղեղ 'ի վերայ նոցա, և կորոյս զնոսա յերկրորդ ամսեանն Իար իէ: Եւ տևեաց ջուրն ամ մի, մինչև 'ի նոյն ամիսն և 'ի նոյն քանիս աւուրն. և ելին հրամանաւ Աստուծոյ Նոյ և որդիք իւր կանամբք իւրեանց 'ի տապանէն. և մատոյց Նոյ պատարագ Աստուծոյ 'ի սուրբ անասնոցն, և հաստատեցաւ Տէր 'ի հաշտ անուշից: Եւ էր Նոյ դարագլուխ երրորդ: Յովսեպոս ասէ, թէ տապանն մնաց յԱւփիմէ լեռան 'ի Գխրդացւոց երկիրն. բայց ճշմարտապէս կայ 'ի Հայք մեծ, 'ի լեառնս Արարադայ, որ է Մասիս ըստ բնագրոցն:

Եւ էին որդիք Նոյի Սէմ, Յաբեթ, Քամ. յինեսուն և ութ ամին Սեմայ եղև ջուրն, և հարիւր ամաց ծնաւ որդի: Եւ բաժանեաց Նոյ որդւոց իւրոց զերկիր. և ետ Սեմայ զՊարսից աշխարհն, և զՊեկտուրա մինչև 'ի Հնդիկս, Ռինոկորուրա, որ է Նեղոս: Եւ Քամայ ետ Ռինոկորուրայէ մինչև 'ի Գադիրան: Յաբեթի ետ 'ի Մադիէ մինչև 'ի Գաւթիրան հիւսիսոյ:

Ընդ Յաբեթի ունին յանկէն Տեգրիս

գետոյ, որ բաժանէ ընդ Մադէ (1) և ընդ Պարս ։ Եւ ազգն Սեմայ բնակեցին յարեւելից և յարեւմտից Եփրատայ և Դիգլաթու ։ Եւ ազգն Քամայ ունին զՊեհոն գետ, որ բաժանէ զհարաւային նոցա ։ Եւ որդիք Յաբեթի են Հայք և Մակեդոնացիք և Մադացիք և Յոյնք և Լատինացիք և Վրացիք և Ալանք ։ Եւ որդիք Քամայ են Հնդկացիք, Եգիպտացիք, Հեթացիք, Յեբուսացիք, Հարաւչիք՝ որ են Քուշացիք, Փերզեսացիք, Արուաթացիք ։ Եւ որդիք Սեմայ՝ Աթուրացիք, Քաղդէացիք՝ որք են Ասորիք, Եբրայեցիք, Ջրանդք, Պարսիկք ։ Եւ Սեմացիք ունին յարեւելից մինչեւ յարեւմուտս ընդ մէջս երկրի ։ Եւ որդիք Յաբեթի ունին զհիւսիս յարեւելից մինչեւ յարեւմուտս ։ Եւ որդիքն Քամայ զհարաւ ունին ։

Եւ զի ետես Նոյ նախ քան զՋրհեղեղն մեծ՝ զպատերազմունս եւ զապստամբութիւնս կորուսելոցն, վասն այն պատճառի բաժանեաց նոցա զերկիր, և ետ նզովս զի մի զրկեսցեն զմիմեանս վիճակօք ։

Ի յետ Ջրհեղեղին ասեն՝ թէ որդի եղեւ Նոյի Մանիտոն (2) անուն, որ յայտնեցոյց ծածկեալն. ևս զաստեղաբաշխութիւն իւր ։ Եւ խնդրեաց ի հօրէն յանկերպոյն Ադամայ, և ետ նմա

(1) Յօրինակին Մադդէ ։
(2) Միւս թարգմանութիւն Մանեթոն ։

զկոտումն ծննդեանն ՚ի յիշատակ ։ Եւ սա ա-
ճեցոյց զաստեղագիտութիւնն ։

Յետ լեալ հարիւր երեսուն ամաց ծնաւ
զԱրփաքսադ ըստ Եւթանասնիցն, և ըստ
Եբրայեցւոց հարիւր ութ ամաց ։ Արփաքսադ
հարիւր երեսուն և հինգ ամաց ծնաւ զԿայ-
նան ։ Զսա Կայնան և զժամանակս իւր Եւ-
սեբի ոչ յիշէ ։ Իսկ Կայնան բազմացոյց ըզ-
Քաղդէացւոցն զհմայութիւնն և զկախար-
դութիւնս ըստ աստեղացգ բղձութեան ։
Եւ որդիք նորա իբրեւ Եմովծոյ երկրպա-
գեցին նմա, և կանգնեցին նմա պատկեր ՚ի
կենդանութեան իւրում, և այս է սկիզբն
կռոց երկրպագութեան ։ Սա շինեաց քա-
ղաք և անուանեաց Խառան ՚ի վերայ ան-
ուան որդւոյ իւրոյ ։ Եւ Ղուկաս յիշէ զսա
յԱւետարանին, և Մովսէս ոչ յիշէ վասն
պատճառիդ ։

Արփաքսադ լեալ ամաց չորեքհարիւր
վաթսուն և հնգից, և ըստ Եբրայեցւոյն չորեք-
հարիւր երեսուն և ութ ամաց (մեռաւ)։ Կայ-
նան լեալ ամաց հարիւր երեսուն և ինից՝
ծնաւ զՍաղա ։ Սաղա հարիւր երեսուն ամի
ծնաւ զԵբեր, և եկաց չորեքհարիւր վաթ-
սուն ամ. և ըստ Եբրայեցւոց երեսուն ամաց
ծնաւ, և եկաց չորեքհարիւր երեսուն և
երեք ամ և մեռաւ ։

Եբեր հարիւր երեսուն և երեք ամի ծը-

նաւ զփաղէկ, և այսպէս զԱնկատան ըստ Անա-նոսի ժամանակագրի, իսկ ըստ Ասորւոցն ե-րեսուն և չորս ամաց. և եկաց երեք հարիւր քառասուն և երեք ամ: և են որ ասեն, թէ սովաւ կոչեցան Եբրայեցիք, զի 'ի հարիւր քսան ամի Փաղեկայ բաժանեցաւ երկիր յա-ճախել ազգին: Ռագաւայ

Ի սկիզբն աւուրցն Ռագաւայ սկսան շի-նել զաշտարակն յերկիրն Սենաար: Եւ Նեբ-րովթ հսկայ որսայր շինողացն որս, և կերա-կրէր զնոսա: Եւ շինեցին զամս քառասուն՝ երկուցեալք 'ի նզովիցն Նոյի, զի անցին զերդմամբ և զնզովիւք նորա, և զրկեցին զերեւորս և ակն ունէին ջրոյ. և զայս հնարք իմացան, զի ապրեսցին սովաւ: Եւ իջեալ Տէրն բաժանեաց զլեզուս նոցա, զմի լեզուն յեւթանասուն և երկու լեզուս: Եւ Եբեր այր ծեր և աստուածապաշտ՝ ոչ միաբանեաց ընդ նոսա, և ասեն՝ թէ բուն լեզուն Ադա-մայ առ նմա մնաց: Եւ նա անուանեաց զեր-կիրն զայն Բաբելոն, որ թարգմանի խառնակ ըստ Քաղդէացւոց լեզուին՝ որ է Ասորւոցն: Եւ սուրբն Յակոբ և սուրբն Եփրեմ և սուրբն Վասիլ և սուրբն Գրիգոր նիւսա-ցին վկայեն այսմ, թէ առ Եբեր մնաց լե-զուն Ադամայ: Եւ սուրբն Յակոբ ուռ-հայեցին և Յովհաննէս իթրացին և այլք ասեն թէ, այն է լեզուն Ադամայ որ մնաց առ

Նոյեան, զոր այժմ Հրէայք ունին, և ոչ Քաղդէ-ացիքն զոր Ասորիք ունին(1)։ Բայց զարմանամ թէ որպէս ծածկեցաւ այս 'ի նոցանէ ; որ ըն-կերքն ազգին Խորայեցի Յակոբ է, և յայժամ անցին ընդ ծովն, ապա անուանեցան Եբ-րայեցիք. և ոչ վասն Եբերայ, զի Եբրայե-ցին անցին թարգմանի, և 'ի յանցանել ծովուն առին նոր լեզու որպէս զայլ պարգեւսն, ըստ Սաղմոսին որ ասէ. "Յեղանելն յերկրէն

(1) Մեթին են բանքս, թուի եթէ ասիցէ՝ ու Քաղդէացին։ Սոյն այս հաստատած բանիցս զասանի 'ի գիրս Ապուլֆարա-ճայ, առեալ 'ի բնագրէն պատմութեան Միխայելի. "Վարդա-պետացն մեր Վասիլ և Եփրեմ ասեն, եթէ յԱդամայ մինչեւ յԵբեր միմիայն լեզու էր մարդկան, ասորականն, զոր ընդ Ադամայ խօսեցաւ Աստուած։ Եւ լեզուս այս բաժանեցաւ յերրեակ բարբառս, յորս ընտրելագոյնն է արամեանն զոր Եդեսացիք, խառանացիք և բնակիչք Ներքին Ասորւոց 'ի կիր առնուին։ Երկրորդն է Պաղեստինեանն զոր Դամասկա-ցիք, բնակիչք Լիբանանու և միւսցեալ մասն բնակաց Ներքին Ասորւոց խօսին։ Երրորդ բարբառն որ է խոտադոյնն, է Քաղդէացւոցն Նաբաթեանց, որ 'ի գործ ածի 'ի լերինս Ա-սորեստանի և յաւանս Իրաքայ։ Յովհաննէս եդեսացի հաս-տատէ, եթէ ազգ մարդկան ոչ գաղափարեալ երբեք 'ի խօսե-լոյ զլեզու եբրայական յետ խառնակութեան լեզուացն 'ի Բա-բելոն։ ("Պատմ. Հարստութեանց. յեր. 11)։ Եւ 'ի Տօրէ Գիրքն ասորական (յեր. 9), ասէ. "Սուրբն Բարսեղ և սուրբն Եփ-րեմ ասեն, եթէ նախ քան զբաժանումն լեզուացն՝ առաջին լեզուն էր ասորականն, որպէս երեւի 'ի բառէս Բաբելոնաց-ւոց՝ խառնակումն։ Իսկ սուրբն Յակոբ և սուրբն Յովհաննէս մեդացի ասեն՝ Հրէիցն լինել այն լեզու որ մնաց առ Եբեր, որ էր այր արդար և ոչ միաբանեաց ընդ նոսա 'ի շինութեան աշտարակին Բաբելոնի։"

Եղիպտացւոց, լեզու զոր ոչ գիտէր՝ լուաւ։ Եւ առաջին լեզու քաղդէացին է, ուստի Իսրայելացիք են, և ունէին զհինն՝ մինչեւ զնորն առին, այս առաջինն բարձաւ ՚ի նոցանէ, և այլ ոչ կալան զայն։

Փաղէկ լեալ ամաց հարիւր երեսնից ծնաւ զՌագաւ, և ըստ Ասորւոցն երեսուն ամաց. և եկաց երկերիւր քառասուն և երեք ամ, իսկ ըստ Ասորւոցն երկերիւր երեսուն և ինն ամ։

Ի ջրոյն մինչ ՚ի բաժանումն լեզուացն ըստ Եւթանասնիցն վեց հարիւր վաթսուն ամ է, նոյնպէս և ըստ Ասորւոցն։

Ռագաւ լեալ ամաց հարիւր երեսուն և երկուց՝ ծնաւ զՍերուք, և ըստ Ասորւոցն՝ յիսուն և երկուց ամաց. և եկաց երեքհարիւր երեսուն և ինն ամ, իսկ ըստ աստի գրոց՝ երկերիւր երեսուն և ինն ամ։ Ի ժամանակս յայս Նեբրովթ շինեաց երիս քաղաքս, զԱրեգ, զՈւռհա և զՄծբին։ Եւ զկնի ցրուելոյ յաշտարակէն, որդիքն Քամայ եկին յերկիրն Փղշտացւոց և Լիբանանու. և հայեցեալ ՚ի պարարտութիւն երկրին և ՚ի վայելչութիւն, հաճեցան և բնակեցան անդ, և ոչ գնացին ՚ի վիճակն իւրեանց որ կայր յարեւմտից Եգիպտոսի, և ժառանգեցին զկրկնակի նզովքն Նոյի, զծիծաղելոյն և զանհնազանդութեանն զոր

'ի բաժանել վիճակին նոցա եղ։

Ի յեւթանասուն և չորրորդ ամին Ռա-գաւայ լցաւ երեք դարն, որ է երեք հա-զար ամ, և 'ի յեւթանասուն ամին նորա շինեցաւ աշտարակն. և զկնի քառասուն ա-մի շինուածոյն ցրուեցան ընդ երկիրն ամե-նայն. և լցաւ երկիր պատերազմօք, և որ յաղթէր, պատկեր յաղթութեան կանգնէ-ին նմա և երկրպագէին։ Ի հարիւր և տա-սըն ամին Ռագաւայ անկաւ աշտարակն։ Զկնի չորոյն առաջին թագաւորեաց 'ի Բաբե-լոն Նեբրովթ. և 'ի քառասուն ամին Ռագա-ւայ թագաւորեաց Նեբրովթ. և 'ի սասանէկ ընչմանէ աստուածաւք հողմոյն շրջեցաւ աշտարակն. և մեռաւ Նեբրովթ սպանմամբ աշտարակին զարկուցմանէ (1), և են ժամա-նակք թագաւորութեան նորա վաթսուն և ինն ամ։ Որպէս Ամանեդրոս պատմէ մոգն, և յերկրորդ գիրքն Յովսեփայ(2) պատմի, թէ թագ նորա հիւսածոյ էր և ոչ կռանակոփ։

Ի մեռանելն Փաղեկայ տեսին որդիքն Յեկտանայ եղբօր Փաղեկայ, թէ նոցա ոչ

(1) Միւս թարգմանութիւնն գրէ օրինակ պատմէ. "Ո-մանք ասեն զՆեբրովթ 'ի յաշտարակին անկմանէն մեռանել. բայց մեք ստուգեցաք յետ ժամանակի սպանանել նմա 'ի Հայկայ որդւոյ Թորգոմայ։ . . . ." /

(2) Վկայութիւն Յովսեփայ երկրորդ Գրոցն ոչ յիշէ 'ի միւս թարգմանութեան. և Յովսեփին կարծի Յովսեպոս ընկեր

գաւառութեանն Խորգոմայ, և ոչ կամեցաւ այր առնուլ. և էր յաղթող, և ելանէր աւերէր զգաւառս աշխարհս: Իւր եղեւ նենգութիւն ինչ ՚ի զօրաց նորա, և զայրացեալ կոտորեաց զարուական զօրս իւր, և այսպէս զօր կանացի. և միանգամ յամին առ ամպաս ակաւ երեթային խառնեսին ընդ արս յայլ աշխարհ, և զծնեալ էգան ապրեցուցանէին. և զարուն սպանանէին: Իւր զայն առեալ՝ ժողովեցան յամենայն աշխարհէ մեռուսան թագաւորութիւնք, և աւերեցին զամրոց թագաւորութեան նոցա զԱլբուն քաղաք ՚ի կողմն հիւսիսոյ, և այսպէս բարձաւ անկարգութիւնն. և արքն առին զիշխանութիւնն որք ծնեալ էին ՚ի կանանց անտի, որքոց ամենայն երկրի, և արքէին որովքն և լցաւ աշխարհն:

Զկնի քառասուն ամի մահուանն Նեբրովթայ և խափանելոյ թագաւորութեանն յորդւոցն Քամայ ՚ի Բաբելոն, թագաւորեաց Կամբիւրոս քաղդէացի ՚ի ժամանակս Սերուքայ. ՚ի յիսուն և վեց ամին: Սա շինեաց զՀաչ քաղաք(1), որ ասեն զԽալանեան. և յայսմ ժամանակի տարածեցաւ զինագործութիւնն, և սկսան գերել զմարդիկ և վաճառել: Ի յեւթանասուն ամին Սերուքայ Կամբիւրոս անքայ քաղդէացի, պատերազ-

(1) Վարդան Ս. Բրովթայ ասէ շինեալ զՀաչ: Դամ. Էջ. 24. Տեղ. Մովսէսայ:

մեալ ընդ Կալատու ազգին(1), յաղթահարեաց զնոսա և ելին 'ի լերինս ։ Սերուք ուսոյց Նաքովրայ զաղանդն Բաղդէացւոց կախարդել և հմայել 'ի նշանս աստեղաց ։ Կամբիւրոս թագաւորեալ ամս ութսուն եւ հինգ · զկնի նորա երրորդ թագաւորեաց 'ի Բաբելոն Սամիրոս 'ի հարիւր և վեց ամին Սերուքայ, ամս եւթանասուն և երկու ։ Սա պատերազմեցաւ ընդ Յոյնս և ընդ Փռանգս և ընդ Քանանացիս, և 'ի ներքոյ հարկի կացոյց զնոսա · և շինեաց բազմութիւն քաղաքաց յաշխարհին Բաղդէացւոց և Պարթեւաց · և սա սկսաւ չափ և կանգուն և կշիռ (սահմանել)։ Եւ սա ետ դնել խայտուածս և պատկերս 'ի կտաւս, և գտաւ զարուեստ ապրիշում գործելոյ(2). և զամենայն գոյնս ներկուածոյ սա սահմանեաց ։ Եւ զայս ասաց Սամատրոս(3) մոգ յիւր պատմութեանն վասն նմա, եթէ երեք աչք ունէր և եղջիւր · և սա էր հսկայ քաջ, որ և եհան 'ի Բաղդէացւոցն զՆեբրովթեանսն, և ջնջեաց զազգըն նորա անտի ։ Նաքովր լեալ ամաց եւ-

(1) Ի միւս թարգմանութեան՝ Սամիրոսի աստ տուեալ · պատերազմ ընդ ազգին Կալատու (Գաղատացւոց)։

(2) Միւս թարգմանութիւնն նրբագործութիւն դնէ · որ զնոյն նշանակէ · որպէս ունի և Վարդան · իսկ 'ի տպեալն տուաջին՝ անգիտաբար փոխեալ է 'ի նրբագործութիւն ։

(3) Յօրինակիս Սանտրոս ։

րահամու մօրն Սալչա Բուէր անուանն(1). և յետ տասն
ամի ծննդեանն Աբրահամու ծնաւ Սարա դուստր
Թարայէ 'ի Զմրութայ(2) կնոջէ՝ և ոչ 'ի մօրէն Աբրա-
համու, որպէս ինքն ասէ առ Փարաւոն և առ Աբիմե-
լէք (Թէ. քոյր իմ է(3)) 'ի հօրէ և ոչ 'ի մօրէ։

Իսկ Աբրահամ եղեալ եւթնեւտասան ա-
մաց, սկսաւ 'ի կամաց իւրոց խնդրել զԱս-
տուած։ Յայսմ ժամանակի եղեւ բարկու-
թիւնն Աստուծոյ 'ի վերայ Բաբելացւոցն։
Զի թռչունք զոր Ճայ կոչեն, ուտէին զան-
դաստանս նոցա. և իւրաքանչիւր ոք այն-
չափ հերկէր և ցանէր, զոր պահել կա-
րէր 'ի բաց քշելով զթռչունսն. և 'ի պահե-
լըն Աբրահամու զանդաստանս հօր իւրոյ,
ձանձրանայր 'ի հալածելոյ զձագսն. և խըն-
դրեաց օգնութիւն յամենայն անուանեալ
աստուածոցն, և ոչ եգիտ. և յարեգակնէ
և 'ի լուսնէ և յաստեղաց և յերկնէ հայ-
ցեաց և ոչինչ օգտեցաւ. ապա ասաց. «Ան
հասանելի Աստուած՝ ամենից վերագոյն և
արարիչ այս թռչնոց և անդաստանաց, յայտ-
նեա զքեզ ինձ և հալածեա զնոսա։» Իսկ
վաղվաղակի վերացան թռչունքն; և այլ ոչ
դարձան յանդաստանսն։ Յայն ժամն ծա-
գեաց շնորհ ողորմութեանն Աստուծոյ 'ի

(1) Վարդան ունի «Մողքաթու էր անունն»։ Ընդ։
(2) Ոմանք յօրինակաց 'ի Ջրմութայ։
(3) Ծննդոց. ի. 12։

տիրոն Աբրահամու, և ասաց. «Պատայ զԱստուած զարարիչն ամենայն արարածոց:» Եւ յանձնեաց Աբրահամ 'ի խնդրուածն երեւելին նմա Աստուծոյ (1):

Յայսմ ժամանակի թագաւորն Վ իլոս մեռաւ, և թագաւորեաց Նինոս որդի նորա ամս յիսուն և երկու, երկրորդ (Բէլ) թագաւոր Աթուրացւոց: Սա շինեաց զՆինուէ, և փոխեաց զաթոռ թագաւորութեանն իւրոյ յԱթուրեայ 'ի Նինուէ. և կանգնեաց կուռս մեծ արձանու (2), հօր իւրոյ Բիլոսի (Վ իլոս) անուն եդ. և եա երկրպագել նմա: Եւ յայնժամ շինեցան Սարուգթ և Սասան և Քաղանէ. և ապա շինեցաւ Եդուացդէ մի Եւ Աբրահամ զատուն կռոց հօր իւրոյ որ կայր 'ի յԱխուհա, այրեաց, և Նաան եղբայր իւր Հանեաց փրկել զկուռսն յայրմանէ, և ընդ նմին այրեցաւ: Եւ 'ի վախճանն ամին Աբ-

(1) Ի գիրս ծննդոց համառօտակի խօսի զկոչմանէն Աբրահամու. խակ 'ի գիրս արտաքնոց պատմութեանց. Հրէից և Ասորւոց. զատանէն բանք երկրպագութեան զԱբրահամէ. առանասուրգս համարեալ. որպէս և Գիրքն Արդարոյ կոչեցեալ. յորոյ հանեալ է և Միխայէլ զայս ինչ առասպելաբանութեանց խօսի զկարուցն Աբրահամու: Ի միւսում թարգմանութեան յաւելեալ անուանքն և այլ պարագայք. յորում և զկարուցն Մելքիսեդեկի բանք ևս՝ հետեւելով անստոյգ պատմութեանցն րաբունեաց Հրէից:

(2) Միւս թարգմանութեան օրինակքն 'ւնին կամս մեծագին. կամ մեծ ատուգին՝ ունելին: Իւ Թեփոփսի՝ կամ կոչմամբ

տայց թէ չէ հաճոյ հօրն, եւս զՍողայէթ դուստր Խամայելի ։

Յայսմ ժամանակի շինեաց Նեմրովթ հայր Աքուքեմայ՝ քաղաք, եւ կոչեաց զնա յանուն որդւոյ իւրոյ Աքուքեմ, յորմէ յաջորդեցան Դինա երկոտասան ամաց. եւ որդիքն Յակովբայ սպանին վասն նախանձու քեռն իւրեանց երեք հազար անձինս ։ Եւ Եսաւ բնակեցաւ ի Սէիր ։ Յակոբն ութսուն ամաց եղեալ՝ առ զԼիա, եւ ութսուն եւ հինգ ամաց եղեալ ծնաւ նմա Ռուբէն, եւ ութսուն եւ եւթն ամաց եղեալ ծնաւ Շմաւոն, եւ յութսուն եւ ինն (ամաց) ծնաւ Ղեւի. Յերրորդ ամին Ղեւեայ եւ յինսուն եւ մի ամին Յակովբայ ծնաւ Յովսէփ. եւ ի սոյն ամին Ղեւեայ ել Յակոբն առ Իսահակ հայր իւր. եւ ի քսան ամին Ղեւեայ վաճառեցաւ Յովսէփ. եւ յերեսուն եւ մի ամին Ղեւեայ մեռաւ Իսահակ հարիւր եւ ութսուն ամաց ։ Զկնի մահուանն Իսահակայ վարձեցին որդիքն Եսաւայ զորդիսն Եմմորայ եւ Սոդոմայ. եւ զԵսաւ, եւ եկին ի Քեբրոն պատերազմել ընդ Յակովբայ եւ ընդ որդիս նորա. Եւ խաղացեալ Յակոբն՝ եհար նոսա. եւ սպան զԵսաւ. եւ փախեան եկեալքն ի վերայ նոցա ։ Յակոբն հարիւր երեսուն ամաց եղեալ էջ յԵգիպտոս, յերկրորդ ամի սովոյն եւ ի յինն ամի իշխանութեանն Յովսեփայ ։ Իսա

Ասորւոցն եւթանասուն ոգի մտին յԵգիպտոս, և ըստ Եւթանասնիցն և ըստ սրբոյն Ստեփաննոսի Նախավկայի՝ եւթանասուն և հինգ։ Եւ այս է պատճառն. զի Ասորին զՅովսէփ և զերկոտասան որդիս Յովսեփու միայն հաշուէ, և Եւթանասունքն զորդիս որդւոցն Յովսեփու՝ որք դեռ չէին ծնեալք՝ թուեն։

Ղեւի լեալ քառասուն և վեց ամաց ծնաւ զԿահաթ. ոմանք զՅոբայ փորձանքն յայսմ ժամանակի ասեն։ Կահաթ լեալ վաթսուն ամաց՝ ծնաւ զԱմրամ. և եկաց հարիւր երեսուն և երեք ամ, մինչեւ յերրորդ ամն Մովսիսի։ Ամրամ եւթանասուն ամաց ծնաւ ըզՄովսէս. և յերեսուն և հինգ ամի իշխանութեանն Յովսեփու թագաւորեաց Աթուրացւոցն Աշպապարոս (1)։ Եւ յերեսուն և ութ ամի իշխանութեանն Յովսեփու թագաւորեաց Եգիպտացւոցն Քեբրոն՝ ամըս երեքտասան։ Եւ մեռաւ Ամրամ յԵգիպտոս նախ քան զելանելն Իսրայելի երեքտասան ամաւ, կեցեալ ամս հարիւր երեսուն և հինգ։ Եւ եկաց Յովսէփ հարիւր և տասն ամ, և մեռաւ ՚ի վեց ամին Աբրահամու և խոստմանն Աստուծոյ յերկերիւր ութսուն և վեց (ամին). և զկնի մահուան նորա մտին ազգ նորա ՚ի ծառայութիւն։ Եւ յայնմ ժամա-

(1) Ըստ Սամուէլի Աշպապարոս որ տիրեաց ամս 32։

Նակլի Թագաւորեաց Ամափթիս[1] Եգիպտո-
սի ամս քառասուն և երեք ։ Սա սկսաւ հեղ-
ձուցանել զորդիսն Իսրայելի 'ի Նեղոս գետ ։
Եւ ծնաւ Մովսէս յեւթանասուն ամին
Ամրամու, և յերեքհարիւր յիսուն ամի խոստա-
մանն Աստուծոյ ։ Եւ ընկեցեալ 'ի գետն ,
դուստրն Թագաւորին՝ Թերմոնթիս , և Եբ-
րայեցին կոչէ զնա Մարիա , զոր Քանթարա
Թագաւորն Մեմփիս քաղաքի առ 'ի կնու-
թիւն , սա առ զՄովսէս 'ի ջրոյն , և եղեալ
տասն ամաց՝ տուաւ յուսմունս յՅանէսն և
յՅամբրէսն , և նոքա ուսուցին զնա ։
Ի մտէն յԵգիպտոսի մինչեւ յելն՝ երկու
հարիւր հնգետասան ամ ։ Ի քսան և երկու
ամին Մովսիսի նեղել սկսաւ Թագաւորն
զԻսրայել շինուածովք քաղաքաց ։ Եւ 'ի քսան
և ութ ամին Մովսիսի շինեցին զՀերմուպօ-
լիս[2]. և արարին պատերազմ Քուշացիք ընդ
Եգիպտացիսն , և յաղթեցին և տարան գե-
րի զՀռաքուսա մայրգերն Մովսիսի , և առին
'ի կնութիւն ։ Եւ յերեսուն և եւթն ամին
Մովսիսի ծնաւ Յեսու որդին Նաւեայ , և
Մովսէս շինեաց զՀերմուպօլիս , և պատե-

(1) Ըստ Եւսեբեայ Ամենոփթիս , որում տայ ամս 30 կամ
31 ։ Քրոն. Հա. յեր. 24. 96.

(2) Վարդան ( Պատմ. յեր. 28 ). Թէրմուպօլիս անուանէ
յանուն Թերմութեայ մայրապրին իւրոյ . և այս մեզ ուղ-
ղագոյն թուի .

րազմեցաւ ընդ Եթիուքաս Թագաւորին Փը-
ղշտայւոց (1) զտասն ամ, և յաղթեաց նմա,
և առ 'ի նմանէ զՀռաքուսա. և Քամփա-
րայ՝ (2) այրն Թերմութեայ ոխացաւ ընդ Մով-
սիսի, և կամէր սպանանել զնա. և զչարէք
վասն յաղթութեանն նորա, և չկարէր մեղան-
չել նմա վասն Թերմութեայ անուանեալ մօրն
Մովսիսի, զոր Մովսէս դարձոյց 'ի գերու-
թենէն. և յորժամ մեռաւ կինն այն, առա-
քեաց զՔանթիս սպանանել զՄովսէս. և
Մովսէս իմացաւ զայն և փութացաւ սպան
զնա. և ինքն փախեաւ, և գնաց յԱրաբիա
առ Ռագուէլ Մադիանացին։

ՅԱբրահամայ և 'ի Կենդուրայ ծնաւ Յեկ-
սան (3), և յՅեկսանայ ծնաւ Դադան, և 'ի Դա-
դանայ ծնաւ Ռագուէլ, և յՌագուէլայ ծնաւ
Յոթոր, և 'ի Յոթորայ ծնաւ Յոբաբ։ Եւ առ
Մովսէս զՍեփովրա դուստր Յոթորայ իւր 'ի
կնութիւն. և քառասուն ամաց էր Մովսէս։

Յայսմ ժամանակի երեւեցաւ Ասկղեպի-
դէս բժիշկ. և սա էր Կեկրոփս, որ թագա-
ւորեաց յԱտիկէ, որ է յԵգիպտոս (4)։ Ասան

(1) Միւս Թարգմ. ընդ Եթովպացիսն ասէ տուեալ Մով-
սէսի պատերազմ, և զԹագուհի նոցա զԹեսբաա վարեալ 'ի
գերութիւն։ իսկ Հռաքուսա՝ նոյն է զոր և Թերմութիս կոչէ։

(2) Նոյն է զոր վերագոյն կոչեաց Քանփարս. իսկ միւս
Թարգմանութիւնն ունի Քանադրս։

(3) Նոյն է որ 'ի սուրբ գիրս Յեկտան կոչի։ Ծնընդ. ԻԵ. Բ։

(4) Յօրինակիս Թուին բանք վրիպեալք 'ի գրչէ. Քանզի

սմա ասեն թէ յառաջին ամին Գրոդոնիկէի Թագաւորեաց. և Յոյնք ասեն թէ սա շի-նեաց զԱթէնս յանուն կնոջ իւրոյ Աթենայ. Սա տիրեաց ամենայն Ասիոյ, և անուամբ նորա կոչեցաւ գաւառն Կապադովկիա։ Եւ յաւուրս սորա երեւեցաւ ձիթենի ՚ի դղե-կին Աթենայ. և սա արար գիր Յունաց յԵ-գիպտացի գրոյ, զի գիտէր զերկուցն լեզուն։ Սա եբեր զքնակիչս Մեմփիս քաղաքի և բը-նակեցոյց յԱթէնս, ուստի սերմանեցաւ ի-մաստութիւնն ՚ի կողմանս Հիւսիսոյ։

Իսկ Մովսէս եւթանասուն և ութ ամաց եղեալ, երեւեալ խօսեցաւ ընդ նմա Աստ-ուած ՚ի լեառն Սինեայ։

Յայսմ ժամանակի յԵգիպտոս Թագա-ւորէր Փառաոն. ծնաւ սմա որդի, և ան-ուանեաց զնա Ամենոփիս։ Եւ սա արար մեծ նեղութիւն Իսրայելացւոցն. Եւ սա կոչեաց զանուն իւր կրկին Եգիպտոս, զի նախ Երիա կոչէր(1)։ Եւ ՚ի չորս հարիւր և երեսուն ամի խոստմանն Աստուծոյ, որ է ուխտն առ Մովսէսի, արժանի եղեւ ե-րեւմանն Աստուծոյ. և առ հրամանն հանել զԻսրայէլ յԵգիպտոսէ։ Եւ անցին Եբրայե-

կեկրոպս Թագաւորեաց Ատտիկէ, և ըստ ոմանց նախ յԵ-գիպտոս Թագաւորել ասի։ Տես և յԵւսեբիոս. ՚ի Քրոն. Հտ. Բ. էր. 100.

(1) «Եգիպտոս որ յառաջագոյն Աերիա կոչէր, յԵգիպ-տոսէ արքայէ անուանեցաւ» Եւսեբ. Քրոն. էր. 108.

՚ի Թուոյն, և մնացին յուղղափառութեան հարիւր քահանայն և երեք եպիսկոպոսք երեւելիք: Իսկ ՄԵԾՆ Սահակ Հայոց մեծաց անզգամաց եղեալ, գրեաց Թուղթ հաւանութեան զոր ինչ և սահմանեցին: Այլ և բազմութիւն քահանայից և կրօնաւորաց. և գլխաւորք էին այսոքիկ. ՚ի Հռոմայ Արիադէոս և Պրոկղիոս եպիսկոպոսք փոխանորդք Կելեստինոս Հռոմայ պապուն. Կիւրեղ՝ Աղէքսանդրի. Մեմնոն՝ Եփեսոսի, Յովհաննէս՝ Անտիոքու, Ակակ՝ Մելտենւոյ, Յոբնաղ՝ Երուսաղէմի, և այլք որ արարին նզովս Նեստորի. և Յովհան՝ Անտիոքու(1), և քսան և վեց եպիսկոպոսք ընդ նմա ոչ գրեցին նզովս Նեստորի, մինչև ինքեանք նզովեցան ընդ նմա: Իսկ գնաց Նեստոր յաքսորս: Իսկ ապա եղեւ ընդ Կիւրղի Յովհաննէս, և խոստովանեաց զանգիտութիւն, որ ոչ գիտէր զչարութիւնն Նեստորի. և այս հաստատեցին և ասացին. «Եթէ ոք այլ ժողով կամ եպիսկոպոս կամ Թագաւոր, նոր հաւատ և նոր սահման դնէ յետ այսորիկ, եղիցի նզովեալ. այլ զՆիկիայն հաստատութիւն կալցի սուրբ եկեղեցի մինչև ցկատարած աշխար-

(1) Յովհաննէս եպիսկոպոս Անտիոքայ աշակերտակից գոլով Նեստորի, զնորա կողմն ունէր զառաջինն. այլ յետոյ ՚ի վերայ հասեալ մոլորութեան նորին, յետս եկաց ՚ի հաղորդակցութենէ նորա:

հի ։ Նաեւ նզովեալքն զկնի ՚Նեստորի աղանդին էին. Թէոդորիտոս՝ Կիւրոսի քաղաքի. Անդրէ՝ Սամոսատայ, Աղեքսանդրոս՝ Մնբեճայ. Աբիանոս՝ Սրոյ, Յովհաննէս՝ Կիլիկիոյ. Եւթերիոս՝ Տիանոյ. եւ այլք ընդ նոսա. եւ ՚ի տեղի ՚Նեստորի եդին զՄաքսիմոս ՚ի Կոստանդինուպօլիս (1) ։

Պատճառ ժողովոյն Քաղկեդոնի ։

Ի քսան եւ յինն ամի Թագաւորութեան իւրոյ լուաւ Թէոդոս զաղմուկն Փլաբիանոսի եպիսկոպոսի Կոստանդինուպօլսի, եւ զԵւտիքի վանականի, եւ հրամայեաց երկրորդ ժողով լինել յԵփեսոս, զկնի ութ եւ տասն ամի առաջին ժողովոյն որ առ Կիւրղիւ (2). եւ գրեաց առ Դէոսկորոս զայս օրինակ.

« Ինքնակալք կայսր Թէոդոս եւ Վաղենտինիանոս յաղթող Թագաւորք. առ պատուելի Հայրդ Դէոսկորոս եպիսկոպոսապետ առաքելական աթոռոյդ Աղեքսանդրու ։ Դիտութիւն լեալ սրբութեան ձերոյ, զի արմատ դառնութեան ՚Նեստորի չառաւ բղեալ թուի առ Փլաբիանոս, եւ Մանեայ կարծիքն առ

(1) Սոկրատ․ ԶՀԱ ։

(2) Երկրորդ ժողովն Եփեսոսի եղեւ յամի 449. ՚ի 42 ամի Թէոդոսի, եւ ոչ ՚ի 29 որպէս սխալմամբ գրէ Միքայէլ ։

տայ Թագաւորին և Պօղքերայ, և իշխանօքն և 'ի Լեւոնէ եկեալ եպիսկոպոսօքն առաքեցին ընդ աշխարհ, և 'ի հաւան ածին ձեռագրով չորս հարիւր քառասուն և վեց եպիսկոպոս ։

Եւ յորժամ դարձան և տարան առ Թագաւորն և առ Պօղքեր զԼեւոնի տումարն, յորում կայր չորս հարիւր քառասուն և վեց եպիսկոպոսաց ձեռագիրք, խնդացին և իւրեանք այլ ձեռնագրեցին. և հրաման ետուն ժողովել ընդ ամենայն երկիր՝ բաց 'ի Հայոց, որ չէր ընդ իշխանութեամբ նոցա։ Եւ յերկրորդ ամին Մարկիանէի՝ ժողովեցան եպիսկոպոսք վեց հարիւր. և գլխաւորք էին այսոքիկ. 'ի Հռովմէ փոխանորդ Լեւոնի՝ Տրամոպիկոս, Լիտօրաս, Լիկինիոս, Նակողայոն. Յոբնաղ Երուսաղէմի, Դէոսկորոս՝ Աղէքսանդրի, Դոմնոս՝ Անտիոքայ, Վասիլիոս Սելեւկիոյ, և Պետրոս Կորինթացին՝ եպիսկոպոսն Գաղատացւոց և գլխաւոր Փղշտացւոց աշխարհին, և Թէոդորիտոս զոր Կիւրեղ նզովեալ էր Անտիոքա՝ եդին գլուխ ժողովոյն. և ասաց Դէոսկորոս. «Ո՞նչ է այդ անօրէնութիւն. առէ տառապեալն Պաւղոս, թէ — Որ քակեցին՝ վերստին շինեցեմ, յանցաւոր առնեմ զանձն իմ (1)։ — Ո՛ քակեալդ նզովեալ զիարդ

(1) Թղ. առ Գաղատացիս. Բ. 20։

դնէք գլուխ, և չինիչ զմեռեալդ։» Եւ օգ-
նէր նմա զատուսջինն Յորնաղ. և շարժեցան
և եղեն ամենին ընդ Դէոսկորոսի և ասացին.
«Ալիւրեդ ամհմանեաց նզովիւք, որ այլ նոր
իրք չդնիցի. և մեք զնոյնն ասեմք, նզովեալ
եղիցին որ այլ նոր սահման դնեն և կամ
նզովեալն Ալիւրղի ընդունին։» Եւ յետ այ-
սորիկ թագաւորն սկսաւ փաղաքշել, և ինքն
անձամբ սպասաւորէր, և աղաչէր և կաշա-
ռէր. և եա Յորնաղայ երեք գաւառ ՚ի
Փղշտացւոց աշխարհէն. և բազում թախան-
ձանօք ած զնա ՚ի հաւան չորս հարիւր քա-
ռասուն և վեց եպիսկոպոսօքն, որ նախ ձեռ-
նագրեալ էին։ Եւ մնացին յուղղափառութե
ընդ Դէոսկորոսի երկերիւր յիսուն և չորս,
որ կրեցին բանդ և կապանս և նեղութիւնս
և մահ, և ոչ մերժեցան ՚ի տիրոյն Քրիստո-
սի։ Եւ հաւանեալքն առաջարկին Լեւոնի, եր-
կու բնութիւն ասացին յատկացեալ, և խա-
բէութեամբ զնոյն Նեստորականին, զի թէ
յատկանաց բնութիւն մարդոյն ըստ նմա
չարչարեցի. զիարդ է Նեստորականին։ Եւ
լցան արեւելք խաւարութեամբ և սգեամբ.
երկու ամ և կէս յամեաց ժողովն. և դար-
ձան աքսորեալքն և նզովեալքն ՚ի Ալիւրղէ և
՚ի Դէոսկորոսէ ՚ի պատիւ և յիշխանութիւն
զօրականօք և թղթով թագաւորականաւ.
ընդ որս և Յորնաղ գնաց յԵրուսաղէմ։

կեղծն ուրացան զՔրիստոս. դուք պինդ կացէք 'ի հայրենի հաւատդ որ շնորհեցաւ ձեզ 'ի Տեառնէ և աշխարհիդ ձեր. զի որպէս երբեմն սերմն մարդկութեանս այդ ուստի սփռեցաւ ընդ աշխարհ, նոյնպէս առ ձեզ պահեցաւ սերմն ուղղափառ հաւատոյ. և 'ի ձէնջ տարածելոց է ընդ բազումս։ Ողջ լերուք յանուանն վէմն Քրիստոս, որդեակք իմ։ » Ընդ որս և մեք հաւատացեալքս 'ի յԱստուած Հայրն ամենակալ, և յՈրդին միածին 'ի Տէրն և 'ի Փրկիչն մեր Յիսուս Քրիստոս, և 'ի Հոգին սուրբ Աստուած ճշմարիտ, փառաւորեմք զսուրբ Երրորդութիւնն և զմի Աստուածութիւնն, այժմ և հանապազ յաւիտեանս յաւիտենից. ամէն։

---

# Բ

Յովհաննու միայնակեցի տեսանողի, աշակեր_տի Գէորգայ եպիսկոպոսի Կիլիկեցւոյ, եթէ ա_նօրէն եւ ամպարտաւան ժողովն Քաղկեդոնի 'ի բարկութենէն Աստուծոյ եւ 'ի թողլոյ 'ի ձե_ռաց եղեւ եւ ոչ 'ի Հոգւոյն Սրբոյ, որպէս Նի_կիայն, Կոստանդնուպօլսին եւ Եփեսոսին. եւ վկայեն այսմ նախատեսութիւնք սրբոցն որ ե_ղեն յառաջագոյն եւ որ զկնի ժողովոյն.

Ա. « ԱՅՍՄ ապացոյց սկիզբն Նեստոր ե_ղեւ, զոր պատմեաց մեզ հայրն մեր և հայ_րապետն սուրբն Պետրոս. եթէ՝ Ես էի 'ի Կոստանդինուպօլիս, և 'ի տօնի սրբոց Բա_դաանիցն հայեցաւ Նեստոր 'ի պատկեր Տի_րամօրն որ կայր յեկեղեցին և ասաց. « Մի՛ պարծիր, ով Մարիամ, թէ զԱստուած ծը_նար. զի ոչ ծնար զԱստուած, այլ դու մարդ ես և մարդ ծնար։» Եւ 'ի նոյն ժամն ըկեցաւ 'ի դիւէ, և զարկաւ զգետնի, և բարձեալ սարկաւագացն տարան 'ի յարկս իւր։ Եւ այս եղեւ սկիզբն պղտորման և ամբոխի սուրբ Եկեղեցւոյ։ »

Բ. « Պատմէր մեզ նոյն հայրն մեր վասն Գաղակիոսի ուռհայեցւոյ, որ էր այր սուրբ միայնաւոր, և ունէր հոգի մարգարէութեան.

սա լուաւ զհերձուածն Իբասայ (1), և սաստեալ նմա և զայրացեալ եկն 'ի Փիլիշա, և կայր հանդարտութեամբ։ Եւ էր անդ Իսիլոս եպիսկոպոս, այր սուրբ և սքանչելի, և հանապազ գայր առ նա 'ի Գաղացւոց քաղաքէն վասն հոգեւոր իրաց. և յաւուր միում եղեւ 'ի զարմացման, և հարցեալ զնէ զպատճառն՝ ասէ ցՊետրոս. «Յառնէ թագաւոր մի Մարկիանոս անուն, և առնէ ժողով և հաստատէ զուղղափառսն. և կրեմք ես և դու, և 'ի նոյն կատարիմք։» Եւ էր այս յառաջ քան զեւթն ամն ժողովոյն։»

Գ. «Նոյն յիշեցեալն Պաղակիոս յաւուր միում ետես տեսիլ, և սկսաւ ասել. «Վա՜յ Պողքեր, վա՜յ Պողքեր.» և ժողովեցան 'ի հարցանել, և ասաց. «Պողքեր՝ որ նուիրեաց զինքն Աստուծոյ, պատնկեալ անկանի յԱստուծոյ, և հալածէ զուղղափառ հաւատացեալսն 'ի նա 'ի ձեռն Մարկիանոսի։»

Դ. «Պատմեաց մեզ Պաղակիոս վասն Պամփիլոսի սարկաւագի։ «Յաւուր միում, ասէ, աղօթէր 'ի սուրբն Գողգոթայ յԵրուսաղէմ, որ եղեւ 'ի հիացման, և սկսաւ ասել երիցս անգամ. «Վա՜յ Եւփիլիոս (Պրոյեկտոս)

(1) Իբաս եպիսկոպոս Եդեսիոյ համամիտ գասու Նեստորի խոստովանութեանն. վասն որոյ և 'ի բաց մերժեցաւ յաթոռոյն։ Այլ յետոյ 'ի Թագաւորութեանն ժողովոյն Քաղկեդոնի դարձաւ կրկին յաթոռն իւր և վախճան եղեւ ցեւտն։

պատրիարք Երուսաղէմի։» Եւ հարցեալ զնա՝ ասէ. «Այս Եւլիլոս որ տեսանէք պատուեալ յամենեցունց, լինի ժողով 'ի Բաղկեդոն, և ընկենուն յանարգանս և յաքսորս և 'ի մահ։»

Ե. «Եւ ասաց Պոլակիոս ցՊետրոս հայրապետ և ցՅուլեսփ 'ներքինի. «Այժմ կատարեցէք զգործանդ, զի զգուշանջիք եկեղեցւոյ զոր յանձնեալ ձեզ Աստուած։ Զի դայ ժամանակ, որ ոչ պարտայէք 'ի հալածանաց։» Եւ Պետրոս զարմացաւ և ասէ. «Զինչ ասես։» Եւ նա ասէ. «Տրամութիւն մեծ կրեսցէ սուրբ եկեղեցի յետ աւուրց. և յորժամ լինի, յիշեցէք զիս։» Եւ ինքն սկըսաւ միայն աղօթել զայս. «Տէր Աստուած իմ անսասան պահեա զիս յուղիղ հաւատս. և մի տանիր զիս 'ի ժամանակ տրտմութեան եկեղեցւոյ քո, այլ որպէս կամիս, առ զհոգիս՝ թէ՛ 'ի տուէ, թէ 'ի գիշերի, թէ 'ի տան և թէ 'ի բացեայ։» Եւ յաւուր միում երթալով նմա 'ի Ճանապարհ, ետես այր մի սուրբ և ասէ ցնա. «Յիշեա զիս յաղօթս քո։» Եւ ինքն անկեալ մեռաւ. և ազգ արարեալ առնն 'ի մերձակայ գեղջն, եկին և տարան, պատուով թաղեցին։»

Զ. «Պատմեաց մեզ Յովհաննէս քահանայն աղէքսանդրացի, թէ «Մինչ էի ես մանուկ, գնալ կամեցայ 'ի մեծ քաղաքն Ատալիս յուսումն իմաստասիրութեան, և

'ի գնալն մտի յայրն ուր կայր մարգարէն մե-
ռեալ. և սկսայ աղօթել՝ հանդիպիլ հաճոյի-
ցըն Աստուծոյ. և եղև ձայն առ իս. «Ար-
դեանկ չկայ խաղաղութիւն, չկայ ժամանակ
բարւոյ. զի յառնէ Թագաւոր Մարկիանէ
անուն և առնէ ժողով, ուր ուրանան ըզ-
մահն Աստուծոյ խաչիւ. և յառնէ պատրի-
արք ուղղափառ Դէոսկորոս անուն, որ կայ
ընդդէմ չար ժողովոյն, և 'ի նոյնն կատարի
վկայութեամբ. և փոխէ զդաւանութիւն
նորա Տիմոթէոս անուն. և չփոլթ ժողովոյն
մնայ մինչև ց'Նեռնն:»

Է. «Հայրն Օհնան որ կոչէր մարգարէ,
'ի Բրազըրու գեղջէ՝ փղշտացի, ասաց ցհայ-
րըն Մոնեփաննոս. «Թէ կամիս բարեգոր-
ծութիւն առնել, արդ արա. եթէ կամիս
յօտարութիւն գնալ, արի գնա, զի ժողով
կամի լինել չար, և հալածումն յառնէ ե-
կեղեցւոյ:» Եւ ինքն խնդրեաց յԱստուծոյ
մահ, և ննջեաց քան զժողովն Քաղկեդոնի
յառաջ:»

Ը. «Պատմեաց հայրն Անաստոս Պամ-
փիլեցի գլուխ եղբարց, թէ «Այր մի սուրբ
բնակէր յառանձնական տեղւոջ, և եկն առ-
նա սատանայ և ասէ. Հնազանդեաց ինձ:
Եւ նա ասէ. Մ'ի, քաւ քեզ(1): Եւ ասէ
սատանայ. Չհնազանդիս. ահա առնեմ ժո-

(1) Ցօրինակիս Մի՛ քաւ քեզ.

զով որ ամենեքեան հնազանդին ինձ։ Եւ
զայս ասաց զի հաւանեցոյց զժողովն ասել.
թէ ոչ խաչեցաւ Աստուած, այլ մարդն։”

Թ. “Նախ քան զժողովն, յորժամ կամէր
լինել, նսեմացաւ արեգակն. և տեղաց օդ
քարինս և հող. և քարինքն որպէս ձեռա-
գործ էին մարդկան։ Եւ ոմանք Երուսաղէ-
մացիք և Փղշտացիք առին ի ձեռս և կու-
րացան։ Եւ Եւսեբի առեալ ի քարանցն ա-
ռաքեաց առ Եւդոքսիա ի Կոստանդնուպօ-
լիս. և գուշակեաց թէ՝ պատճառ խաւա-
րման եկեղեցւոյ լինելոյ է։”

Ժ. “Եւ Պետրոս և Անդրէ աշակերտանի իւր
վկայեցին, թէ յորժամ եղեւ ժողովն, կու-
րացեալքն այն ծածկէին զաչս իւրեանց ա-
րեամբ սպանելոյն վասն ուղղափառութեան,
և բժշկէին։”

ԺԱ. “Եւ յետ ժողովոյն, ի Կեսարիա
յորժամ վիճէին Քաղկեդոնացիքն, թէ մար-
դըն խաչեցաւ, եղեւ պատարագն իւրեանց
միս և արիւն մարդոյ. և չկարացին ճաշա-
կել, և մնաց առ բազում պահեալ։

ԺԲ. “Եւ յորժամ զառաջինն Թագն ի
գլուխն եդաւ Մարկիանոսի, խաւար կալաւ
զամենայն երկիր, գուշակելով զխաւարումն
եկեղեցւոյ. և ինքն ասաց թէ՝ “Այսն նշանա-
կեաց որ մինչեւ յիս խաւար էին աշխարհքս,
և ինեւ սկսանի լոյս և բարութիւն։”

ԺԴ. "Յեկեղեցւոյն վերայ, որ շինեալ կայ 'ի տեղւոջ համբառնալոյ Տեառն, կայր խաչ մի ոսկեղէն, և ընդ լինել ժողովոյն՝ յանկարծ այրեցաւ և փոշի եղեւ, և սուգ եղեւ ժողովրդոցն. և գրեցին 'ի Կոստանդնուպօլիս, և առաքեցին խաչ պղնձի և եդին 'ի տեղւոջն։"

ԺԳ. "Ասաց հայրն Եսայի թէ՝ "Ասաց ինձ հայրն Պօղոս Եթէովպացի, որ էր հարիւր և տասն ամաց. թէ յետ քսան ամի լինի շփոթ մեծապէս 'ի ձեռն Մարկիանէի, որ թագաւորէ վեց ամ։ Եւ զկնի լինի սակաւ մի խաղաղութիւն եկեղեցւոյ, և դառնան անդրէն 'ի նոյն չարիս մինչեւ 'ի սուտ Քըրիստոսն։"

ԺԵ. "Ասաց հայրն Զենոն, որ ասի Ե-[illegible], որ յանդիման (1) Աղէքսանդրի էր, թէ "Գնացի առ նոյն հայրն Եսայի, և տեսի որ զսիրայն 'ի ձեռքն ունէր, և միտք իւր վերացեալ էր, և կարծեցի թէ աղօթէր, և դարձայ. և կոչեաց զիս և ասէ ցիս. Գըրեա՛, թէ սուրբն Տիմոթէոս, որ այսօր յաքսորս է, յետ սակաւ ժամանակի դառնայ, և կանգնէ զուղղափառութիւնն երկու ամ, և ապա ննջէ։ Եւ յետ իւր լինի սարկաւագապետն եպիսկոպոս. և յաւուրսն յայնոսիկ լինի պատառումն յեկեղեցի, որ ոչ ող-

(1) Յօրինակին յանդրանոյն ։

ջանայ մինչ 'ի յայտնել պիղծ Ներոնին ։»

ԺԶ. «Հայրն Պաւղոս անապատացին պատմեաց, թէ «Մին միայնակեաց տեսանող տեսանէր, զի ժողովեալ էին ամենայն եպիսկոպոսք և վառէին թոնիր. և կալան լուսապատկեր երիտասարդ մի, և ձգեցին 'ի ներքս և ծեփեցին. և յետ երեք աւուր ետես ելեալ, և ասէ Տէր. «Ով էին որ այրէին ըզքեզ, և զիարդ զերծար»։ Եւ ասէ. «Հրեայքն Նեստորականք, Քաղկեդոնեայք եպիսկոպոսուքըն, որ ասեն՝ մարդն խաչեցաւ, և այրեն զեկեղեցի իմ։ Եւ ծեր մի որ ոչ միաբանեաց ընդ նոսա, զերծոյց զիս ամենեւին յայրմանէն։ Եւ ասեմ. Տէր, ո՞վ էր նա։ Եւ ասէ, Դէոսկորոս. և որպէս կիւրենացին էր Աթանաս, որ եբարձ զխաչն իմ. և Կիւրենա աշխարհէ Եգիպտոյ, որ բառնան զխաչն իմ պարծանաց 'ի ձեռն Դէոսկորեայ եւ պահեն զուղղափառութիւն ։»

ԺԷ. «Տիմոթէոս 'ի ժամ ննջման իւրոյ պատմեաց, թէ «Մինչ մանուկն էի և երթայի 'ի դպրոց, հանդիպեցաւ ինձ փառաւորեալ ծեր մի, և համբուրեաց զգլուխ իմ և ասաց երեք անգամ. Ողջոյն ընդ քեզ Տիմոթէոս, հայրապետ կատարելութեան (1)։»

ԺԸ. «Եւ դարձեալ ասէ նոյն Տիմոթէոս,

(1) Միւսն յաւելու. Դու լինիս պարծանք ուղղափառեան աւանդոյ Քրիստոսի ։

թէ «Ի տեսլեանն երթայի ես 'ի Սեղովամ, և տեսի վանք մի աւերակ. և դարձեալ եկին մրգաբեր ծառքն 'ի փուշ և այգին բեկո-տեալ. և հարցի թէ այս ի՞նչ է. և ասէ ոմն ցիս. «Այս վանքն Եւթիմիոսի (Յորնաղի) է, յորմէ կոչեցաւ յեպիսկոպոսութիւն, և եղեւ հակառակ Դիոսկորոսի 'ի ժողովն Քաղկեդոնի. և կատարեցաւ առ նա բանն, թէ «Եղիցի բնակութիւն նորա աւերակ, և 'ի յարկս նորա մի ոք իցէ որ բնակիցէ [1]։»

ԺԹ. «Ի յաղուհացան շրջէր Եւթիմիոս ըստ հին ժամանակին 'ի վանորայսն, և գնաց 'ի դուռն տեսանողի մենաւորի ումեմն. և փակեաց ընդդէմ նորա։ Եւ նա բախէր. և ասէ մենաւորն. «Դնա սուտ քրիստոս, գնա Յուդա մատնիչ։» Եւ ասէ. «Պահքն տարեալ է զխելքն։» Եւ գնացին ամօթով։»

Ի. «Անագնոս [2] մի յԵրուսաղէմ 'ի Պրոպատիկէն տեսանէր զՏէրն, զի մտանէր 'ի Տաճարն հրեշտակօք, որ ունէին լապտերս չքնեղս, և ասէր. «Մնացանն զերախտիս իմ և զպարգեւսն իմ։ Եղկելին Եւթիմիոս արար զտունս իմ այրս աւազակաց, բոզանոց և պոռնկանոց և չնանաց։» Եւ բացաւ առաջի նորա խորհրդանոցն, և ակիհն էր աղտեղի և փոշոտեալ հանդերձիւ ծածկեալ. և ա-

(1) Սաղմոս. ԿԸ. 26։
(2) Ընթերցող։

ւոյ Տէրն. «Հանէք, ձգեցէք, զի ոչ է իմ դատ»: Եւ ցանապանմանն ասէ. «Պաղ տանիք»: Եւ նա ասէ. «Ողորմութեամբ օգնեա՛ ինձ Տէր»: Եւ ել Տէրն և գնաց: Եւ այս տեսիլ յայտնի եղեւ ամենայն քաղաքին. և լուաւ Իւլինիոս թէ համբաւեցաւ տեսիլն. և 'ի գիշերին աներեւոյթ արարին զմանուկն. եւ թէ զի՞նչ արարին, Աստուած գիտէ»:

ԻԱ. «Յաւուրսն յայնոսիկ Պետրոս ոմն սուրբ, ետես զսուրբ խորհուրդն ապականեալ. և այլ ոչ եւս հաղորդեցաւ մինչեւ ցմահ»:

ԻԲ. «Այն ճգնաւորն որ Գաւրոս անուն, որ բնակեալ էր հեռի յԵրուսաղեմէ հնգետասան միլ, տեսանէր դաշտ մի, և 'ի մէջ դաշտին բլուր մի, և 'ի բլրին խորան մի, և 'ի վերայ խորանին սեղան մի ոսկի՝ ակամբք և մարգարտով զարդարեալ. և ցոլմունք շառաւիղաց հրեղինաց հատանէին 'ի նմանէ. և շուրջ զնովաւ բազմութիւն զօրաց՝ որ կային նմա 'ի պաշտօն. և եղեւ ձայն յերկնից որ ասէր. «Նզովեալք են ամենեքեան որ ասեն երկու բնութիւն»: Եւ որք շուրջ զխորանաւն կային, ասացին. Ամէն: Եւ ազինք ամենայն լցեալ ունէին զդաշտն սատանեայք յոյժ: Եւ եղեւ այլ ձայն որ ասէր. «Նզովեալք եղիցին որ բաժանեն զմին զանբաժանելին. Նզովեալք եղիցին ուրացողքն

զվկնեաւ և ամենեքեան ազատակէ լին. Ամէն :»

ԻԳ. «Նոյն յետ. սակաւ մի առաքին զՍիւ- նէոս զի անցանէր, և ասաց. «Աստն այսօրիկ անցանեմ ընդ քեզ, զի այլ անկն ոչ ունիմ տեսանել զքեզ. 'ի պատերազմ երթամք, և նեղութիւն ունիմք կրել. կամ կոխել ընդ խորհուրդն Աստուծոյ կայ առաջի; կամ մե- ռանիլ. զի խնդրեն 'ի մէնջ ուրանալ զՀայրե- նի հաւատս մեր, և զՄաքսիմին և զՀռոմէից խոստովանել, թէ ոչ էր Աստուած որ չար- չարեցաւ և մեռաւ (1) :»

ԻԴ. «Օհեա այսր եռեւս նոյն ինքն ծերն Պաւղոս զՅորդանան մերկ կանգնեալ յանկեան մի և սեւացեալ երեսն զմխոան : Նա ասէ ծերն. «Ընդէ՞ր է այդպէս» Նա ասէ. «Տեսա- նեմ զամօթ իմ, զի ոսկի բազում ժողովեալ եմ սուտ քրիստոսին, այն որ պատերազմե- լոց է ընդ բնութիւն հօրդ :» Նա խնայեաւ ծերն, թէ ընդ մարդկայնոյն բնութիւնս է պատերազմելոց, որ 'ի հօրդ առնեղծեալ :»

ԻԵ. «Էր վանք մի 'ի սահմանս Տրապո- լեայ, (որոյ) առաջնորդ էին անուն Պանտոփրի- ոս, որ եղեալ էր 'ի Հայրէէ եպիսկոպոս : Նա Վասիլիոս եպիսկոպոսն Սելեւկիոյ մինչ եր- թայր 'ի ժողովն Քաղկեդոնի, տարաւ զնա

(1) Թարգմանիչն 'ի բացատրութիւն անուանս Իմմանուէլ կամ Էմմանուէլ յաւելեալ ունէր աստ զայս բան. «Մեր բա- նակս Ցորդանայ էր այս :»

՚ի հետ. և ետես զի զառաջինն ամենեքեան Նզովէին զատողսն երկու բնութեան, միաբանեալքն ընդ Դէոսկորոսի. և յետոյ դարձեալ ուրացան զմինն և աքսորեցին զԴէոսկորոս. և Նորա արամեալ արգելեալ զինքն ՚ի տուն մի, և արտասուօք հայցէր ինքն յԱստուծոյ յայտնել նմա զկամս իւր: Եւ եղեւ ՚ի հիացման, և տեսանէր կոնդակ մի ոսկեգիր տարածեալ ՚ի կամարէն երկնից մինչև ՚ի վայր, և յերկուց կողմանց՝ գրեալ լուսաւոր գրով. "Նզովեալ լիցի ժողովն Քաղկեդոնի. ուրացան զիս, ուրացան զիս. Նզովեալ եղիցին, Նզովեալ եղիցին:" Եւ ՚ի գիշերին մտեալ ՚ի նա, գնաց և պահեաց զքաղաքն Տրապոլիս յուղղափառութեան հնգետասան ամ:"

ԻԶ. "Ստեփաննոս հայր եղբարց, ՚ի Սելեւկիայ Դուկու վանից, ասաց թէ "Չհաւատամ թէ Սախլիոս եպիսկոպոս անկաւ ՚ի ճշմարտութենէն, զի գիտուն և (այր) շնորհաց է:" Եւ յորժամ դարձաւ ՚ի ժողովոյն, խնդրեաց ՚ի Տեառնէ ցուցանել նմա՝ թէ ունիցի՞ զուղղափառութիւն. և տեսանէ տեսիլ՝ զի մտանէր յեկեղեցին, և պատուեցին զնա ժողովուրդքն. և եմուտ ընդ նմա այր մի լուսաւոր. և յորժամ կամէր բանալ զբերանն և ասել աղօթս, էած զմատն ՚ի բերանն, և դարձոյց եհան զնա յեկեղեցւոյն

և ասէ. «Չես արժանի. այլ որպէս դարձու-
ցեր դու զերեսդ յԱստուծոյ, դարձուսցէ
Աստուած զիւրն 'ի քէն»։

ԻԷ. «Այս Սոփրոնիոս խնդրեաց յԱս-
տուծոյ ցուցանել նմա ստուգութեամբ,
թէ զի՞նչ կոչի ժողովն Քաղկեդոնի. և տե-
սանէր զմի յառաքելոցն Քրիստոսի, որ տա-
նէր զնա յարքունիս, ուր կային եպիսկոպոսք
ժողովոյն, և ասէ. «Այս են ատելիքն Քրիս-
տոսի, այս են ուրացողք նորա»։ Եւ ետ նր-
մա խարազան և ասէ. «Հան զամենեսեան
զատելիքդ Քրիստոսի»։

ԻԸ. «Այր մի հոգևորս Ռոմանոս ա-
նուն, 'ի գեղջէ Աբելմէուլայ (Պաղեստի-
նի) առաջնորդ եղբարց վեցհարիւրոց. որք
ասէին ընդ նա, թէ «Ընդէ՞ր լռեալ կաս,
և ոչ նախանձիս զնախանձ Տեառն վասն չար
ժողովոյն Քաղկեդոնի»։ Եւ ասաց. «Ներե-
ցէք ինձ զաւուրս սակաւ»։ Եւ գնաց ընդ ա-
նապատն 'ի կողմանս հարաւոյ և աղօթեաց
անսուաղ տասն օր. և խնդրեաց 'ի Տեառ-
նէ յայտնել նմա զճշմարտութիւնն։ Եւ ե-
ղեւ ձայն առ նա. «Գնա պահեա զհաւատն
Նիկիոյ»։ Եւ չոգաւ պատմեաց եղբարցն,
և նորա ասեն. «Իսկ Յոյնք ասեն թէ զնոյն
մեք ունիմք, այդ զի՞նչ է»։ Եւ դարձեալ
գնաց կրկնեաց հայրն զպահքն. և եղեւ
ձայն. «Գնա ընդ Պետրոսի, Դէոսկորոսի,

Գրիգորի Աստուածաբանին, Գրիգորի Նիւ-
սացւոյ, Բարսղի, Գրիգորի սքանչելագործին»։
Եւ գնաց պատմեաց վանիցն. և նոքա ասեն.
«Այսմ Քրիստոսի սրբեա զմեր սիրտս, զի և
նոքա ասեն, թէ մեք զԳրիգորին և զԲարսղին ունիմք և զայլն 'ի յուղղափառացն հաս-
տատեցաք»։ Եւ գնաց երրորդեաց զպահքն.
և եւեթ տումար պարզեալ յերկնից մինչեւ
յինքն, և էր գրեալ. «Աւրացան զիս 'ի Քաղ-
կեդոն, և անցին ընդ սահման ուղղափառ-
ացն. վայ է նոցա, և նզովք է բաժին նո-
ցա»։ Եւ իբրեւ ընթերցաւ, ոչ գնաց առ
եղբարսն, այլ յԵրուսաղէմ գնացեալ պատ-
մեաց։ Եւ շարժեցան եկեղեցականքն 'ի վե-
րայ Յոբնաղիոյ։ Եւ ընկեցին 'ի յաթոռոյն և
եդին պատրիարք զԹէոդոսիոս։ Եւ լուաւ
Մարկիանէ, և առաքեաց վերստին հաս-
տատեաց զՅոբնաղ յԵրուսաղէմ։»

ԻԹ. «Պատմեաց քահանայն Աւփիլոս կե-
սարացին, թէ «Մինչ էր Տիմոթէոս յաքսորս
'ի Խերսոնեսոնաս կղզի (1), գնացի առ նա,
և տեսի յոտս նորա վէրս սաստիկ, նա՝ սուր
անբժշկելի. և մերձակայքն ոչ դարմանէին
զնա. և ես աղաչեցի զի թոյլ տայցէ ինձ հը-
պիլ և մաքրել զթարախն, և ասէ ցիս. «Ոչ
տեսանես զպի յաչս իմ»։ Եւ ասեմ՝ «Այո»։
Եւ ասէ ցիս. «Մինչ կայի ես 'ի ժողովն Քաղ-

(1) Ըստ այլ Թարգմանութեան Խերսոնեսոս։

հերոնի, և առանձնացեալ կայի յաղօթս, երեւեցաւ ինձ սեաւ մի Եթեովպացի. և ունէր 'ի ձեռին տումար մի, յորում կայր ձեռագիր բազում եպիսկոպոսաց. և ասէ ցիս. «Ընդէ՞ր չդնես զձեռագիր քո 'ի սմա. դի՛ր, թէ չէ՝ աւից զոգիդ:» Եւ իբրեւ ոչ լուայ նմա, եզարկ զաչս իմ, և փայլեցաւ արիւն յաչացս իմ. և թողեաց թէ՝ փլաւ պատուղն. և պոհացեալ զԱստուծոյ, եդի զձեռս իմ անուամբն Քրիստոսի աչացս և բժշկեցայ, և մնաց սպիս յիշատակ իրացն: Նոյնպէս և այս վէրս 'ի սատանայէ է, որ կաղացոյց զիս. և արդ թող տուր, թէ պատեհ տեսանէ Տէր, կարող է բժշկել. և այս չէ շատ 'ի դիւական ժողովոյն ինձ:»

Լ. «Ասէ Պետրոս՝ զօրապետ Սարկիսանէի պատմեաց զօրապետոյն Զենոնի, թէ «Յորժ սիրով ընկալայ զժողովն Քաղկեդոնի. և էի հալածիչ ուղղափառացն, մինչեւ տեսի 'ի տեսլեան ոմն որ ասէր ցիս. «Իջարէդ 'ի բաց կաց. և եկ տես զոր ցուցանեմ քեզ:» Եւ տարաւ եցոյց ինձ տեղի անճառելի լուսով լցեալ. և կայր անդ Թէոդոս (1). և եցոյց (այլ) տեղի, յորում հուր բորբոքէր, և անդ կայր Սարկիսանոս և ամենայն դաւանողքն Լեւոնի. և զայն տեսեալ 'ի բաց կացի, և եղէ ընդ Դէոսկորոսի և ընդ Տիմոթէի:»

(1) Միւս Թարգմանութիւնն յաւելու և [illegible]

նեաց ուժգին և ասաց. «Ո՛նռաւ այսօր ուղղափառութիւն 'ի բազմաց. ահա փլաւ երկինքն, և ոչ ոք է որ ցաւի և ողբայ զաղէտս»։

ԼԶ. «Յորժամ էր Նեստոր յաքսորս 'ի Փեւքաս Եգիպտոսի, գնաց ոմն 'ի Թագաւորէն Կոմիտոս տալ հաւաք զօրացն արքունի. և երթեալ առ Նեստոր ասաց, թէ «Կամին մեծարել զքեզ 'ի ժողովն»։ Եւ զկնի այնորիկ եկն մագիստրոս ոմն 'ի խնդիր նմա. և ըմկլաւ ասել Նեստոր. «Ո՞հ թէ սուտ ասէի՝ թէ Մարիամ չէ Աստուածածին և ոչ ծնեալն 'ի նմանէ Աստուած»։ Եւ նոյն ժամայն թափեցաւ լեզուն, և սկսաւ ուտել զլեզուն և զայլ մարմինս, մինչեւ սատակեցաւ և գերեզմանն չընկալաւ զնա։ Եւ զայս պատմեաց Տիմոթէոս 'ի գիրս իւր»։

ԼԷ. «Փոտինոս միայնակեաց սկիւթացի, եկն յԵգիպտոս և ասաց. «Պետրոս հայր, մի՛ տրտմիր վասն չար ժողովոյն և Պռոտերի զոր առաքեցին աստ պատրիարք. քանզի երկնաւորն Երուսաղէմ աղաչեն զԱստուած վասն սուրբ եկեղեցւոյ և վաղագոյն սատակեն զՊռոտէր»։

ԼԸ. «Ոմն սարկաւագ Վասիլ անուն, աշակերտ հօրն Պետրոսի Թեբայեցւոյ, որ կեցեալ էր առանձնական երեսուն և հինգ ամ, եղեւ ձայն առ նա երկնաւոր, թէ «Ել յաշխարհ և օգնեա ուղղափառութեան»։

Եւ եկն 'ի Սիկիլիա գաւառ և բնակեաց անդ երկոտասան ամ։ Եւ եղեւ կրկին ձայն առ նա թէ՝ "Երթ յանդիմանեա զՆեստոր։" Եւ մինչ յանդիմանէր, և նա չլսէր, և առեալ զնա մագիստրոս ումն, տանջեաց զնա և արկ 'ի բանտ. և նա աղաչէր զՏէր 'ի բանտին, և յանկարծ անկաւ 'ի գլուխն Թէոդոսի Թագաւորին կղմինտր մի յօդուցն և չար ցաւեցոյց. և 'ի տեսլեանն ասացաւ նմա, թէ "Վասն Վասլի տանջանացն եղեւ քեզ այդ." զի յորժամ՝ յանդիմանէր զՆեստոր, Թագաւորն մօտ կայր և լռեաց։ Իսկ յորժամ՝ զտեսիլն ետես Թագաւորն, զահի հարաւ և եհան զՎասիլն 'ի բանտէն, և առեալ խրատ 'ի նմանէ և թողութիւն. և խրատն էր ժողովն Եփեսոսի որ եղեւ։"

ԼԹ. "Կին մի անունն Ալինէ (Հեղինէ) երկիւղած յԱստուծոյ, ետես տեսիլ թէ՝ "Յետ երեք ամի Նեստոր անուն լինի պատրիարք, և դու մի հաղորդիր 'ի նմանէ." բայց լռեաց զտեսիլն մինչ Վասիլն յանդիմանեաց զՆեստոր. զնոյն տեսիլ ետես և վասն ժողովոյն Քաղկեդոնի որ եղեւն։"

Խ. "Պատմեաց հայրն Պետրոս փիւնիկեցին, թէ "Մինչ մանուկն էի ես առ վարդապետին իմում, և էաք 'ի Կոստանդինուպօլիս, և անկաւ 'ի վերայ իմ հիացումն, և սկսայ որոնել՝ թէ զմարդ Երրորդութիւնն

*միահաւասար է, և երեք՝ և մի է։» Եւ երեւեցաւ ինձ սուրբն Պետրոս առաքեալն, և եհան զիս 'ի բլուր մի, և եցոյց ինձ լոյս անպարագիր մեծութեամբ և անհաս, և ասաց. «Սա Հայրն։» Եւ եցոյց ինձ այլ լոյս նոյնպէս անպարագիր և ասաց. «Սա Որդին։» Եւ ասեմ. «Նման է Հօրն։» Եւ եցոյց ինձ այլ լոյս անպարագիր և ասէ. «Սա Հոգին Սուրբ։» Եւ ասեմ՝ նման է Հօր և Որդւոյ։» Բայց Որդին մարդկապէս փայլատակէր անճառ և անհասական, և կայր 'ի մէջն յաջմէ Հօրն, և սուրբ Հոգին յաջմէ Որդւոյ։»*

ԽԱ. *«Անիծոս ոմն աղէքսանդրացի, որ մկրտեալ էր 'ի հօրէ մերմէ, ունէր կին Քաղկեդոնի աղանդոյն, և չմիաբանէր ընդ հաւատ առն՝ մինչև հիւանդացաւ մերձ 'ի մահ, և յափշտակեցաւ 'ի տեսիլ, և ետես դրախտ անպատմելի և ասացին. «Այս է տեղի առն քո։» Եւ ետես խաւար, և անտի գայր ձայն լալոյ. (և ասեն. «Այդ է տեղի այդմ աղանդոյ ուր կաս։»(1)) Եւ առողջացաւ և դարձաւ յուղղափառութիւն։»*

ԽԲ. *«Սաւտինէ, որ կոչի խոստովանութիւն, այսինքն խնամատար եկեղեցւոյ, էր յոյժ ողորմած, բայց խմորեալ էր 'ի ժողովս Քաղկեդոնի։ Եւ սա հիւանդացեալ ետես*

(1) Ի մէջ փակագծի եղեալն պակասէր յօրինակէս, և լրացուցաք 'ի միւս թարգմանութենէն.

տեսիլ նման ասացեալ կնոջն. և ետ տանել զինքն 'ի վանքն Բամանոսի, և հաղորդեցաւ յուղղափառութիւնն ։ Եւ յետ երեք աւուր ննջեաց. և իւր ողորմածութիւնն եղեւ պատճառ փրկութեան իւրոյ, որ չեթող զինքն 'ի կորստեան ։»

ԽԳ. «Պունիտոս ոմն երէց՝ ազգաւ Ֆռանգ, որ ոչ հաւանէր երկու բնութեանն՝ ոչ մտօք և ոչ բանիւ, ետես 'ի տեսլեանն հոտեալ մեռեալ մի 'ի սուրբ Յարութեանն, որ յանկարծակի կենդանացաւ. և ունէր 'ի ձեռին թուղթ ոսկէներկ արտաքոյ և ներքոյ. և յորժամ եբաց, լցեալ էր աղտեղութեամբ. և յորժամ զարթեաւ, մեկնեաց և ասաց. «Դարձեալ նորոգի աղանդն Քաղկեդոնի.» զի յայնժամ նորոգեալ էր 'ի Օենոնէ արքայէ ։»

ԽԴ. «Սարկաւագ մի սպասաւորէր սուրբ Յարութեանն (տաճարի) յԵրուսաղէմ. և եղեւ նմա շնալ ընդ կնոջ, և եմուտ ննջել զգիշերն 'ի սուրբն Գողգոթա. և եղեւ ձայն թէ՝ «Սպականեաց Յոբնաղ և աշակերտք իւր զտեղի սրբութեան իմոյ։» Եւ վաղիւն գաւաձգեալ 'ի փողոցին, և խոստովան եղեւ զեղծեալն. և լուեալ բազմաց ողջացան յաղանդոյն ։»

ԽԵ. «Պատմեաց Վասիլիոս երանելին թէ, 'ի գեղ մի էր Պատաւլինէ անուն ե-

րէց մի Քաղկեդոնիկ, որ վիճէր ընդ աշխար-
հականի ուղղափառի. և կատարումն լրացն
եղեւ, զի երէցն խնդրեաց հրով փորձել
զհաւատսն. և կապեցին զմէկ ձեռն ուղ-
ղափառին և զերիցուն ընդ միմեանս, և վա-
ռեցին 'ի ներքոյ հուր, և այրեցաւ ձեռն ե-
րիցուն, և ուղղափառն անհոգ կայր, և փա-
ռաւորեցին զՔրիստոս:»

ԽԶ. «Ի գիւղ մի անուն Սալտու, այր
մի Եպիփան անուն չհաղորդէր ընդ այլսն,
և երէցն սպառնացաւ, և նա առեալ զկինն
իւր փախեաւ. և երէցն նոյն օրն հարեալ
'ի բարկութենէն Աստուծոյ՝ մեռաւ: Եւ
դարձուցեալ զԵպիփան 'ի տուն իւր, ամէն
դեօղն դարձան յուղղափառութիւն:»

ԽԷ. «Յորժամ Պետրոս պատրիարքն էր
յԱղէքսանդրիա յաքսորս, եղեւ ձայն առ
Պիուր միայնաւորն սուրբ, թէ «Երի գնա
առ հայրն Պետրոս, և մխիթարեա զնա:» Եւ
առաջնորդեաց նմա սիւն լուսոյ, և ած զնա
ուր կայրն Պետրոս, 'ի տան միում: Եւ ետես
տանուտէրն շնորհ երկնաւոր 'ի վերայ նոցա,
և աղաչեաց մկրտել զորդին իւր, և դարձան
յուղղափառութիւն:»

ԽԸ. «Ետես հայրն Պիու, զի բազում
աբեղայք խաչ մի առեալ ձգէին առ իրեա-
րս և վիճէին. և ասաց թէ «Հերձուած
մի լինի, որ ոչ բժշկի մինչեւ 'ի կատարածս:»

ԽԹ. «Կին մի երանելի յԵրուսաղէմ Սուբ-ւակիա անուն, գնաց երկրպագել ՚ի տաճար Համբարձմանն, և ետես զՏիրամայրն անդ նստեալ փառօք, և յերեսս ՚ի վայր անկաւ. և Տիրուհին կանգնեաց զնա և ասէ. «Մի՛ վախեր, և կաց յուղղափառութեան, զի չարչարանք Որդւոյ իմոյ պլայլեցաւ ՚ի բերան պղծոց. և եղեւ եկեղեցի որպէս ընկոտորեալ անտառ առ լերամբ, և ոչ խաղաղի մինչեւ ՚ի կատարած:»

Ծ. «Լեւոնտիոս ասկաղոնացի, մարգարէացաւ վասն նորա Զենոն անապատական թէ՝ «Լինիս եպիսկոպոս, բայց ոչ մեռանիս եպիսկոպոս:» Եղեւ եպիսկոպոս և սիրելի Նեստորի. և ՚ի յաքսորելն Նեստորի, աղաչէր զՅոբնաղ հաստատել զՆեստորի աղանդն: Եւ ՚ի լինել ժողովոյն գնաց առ նա (Լեւոնտիոս) և ջանայր յոյժ յերկու բնութիւնն. և ՚ի դառնալն յիւր քաղաքն, կամեցան քարկոծ առնել, և փախեաւ ՚ի Կիպրոս, և բարկութեամբ (Տեառն) սատակեցաւ. և իւր ընտանիքն գնացին և բերէին զնա նաւով. և եղեւ հողմն սաստիկ և ընկեցին զնա ՚ի ծովն նաւորդքն, գիտելով թէ աշխարհական է, զի կայր աշխարհական մի այլ Կոստանդնուպօլսեցի մեռեալ. և այնպէս ՚ի գլուխ ել մարգարէութիւնն Զենոնի սրբոյ առնն Աստուծոյ:»

ԾԶ. "Թէոդոսիոս այր իմաստուն և սուրբ, տանջէր 'ի խորհուրդս իւր վասն երկու բնութեանցն, և խնդրէր յԱստուծոյ լալով՝ յայտնել նմա: Եւ երեւեցաւ նմա Յովհաննէս Աւետարանիչն և ասէ. "Որ էրն 'ի սկզբանէ, նա է զոր շօշափեցաք, զԲանն կենաց, և ոչ է երկու բնութիւն:" Եւ զայս լուեալ հաստատեցաւ 'ի մի բնութեանն:"

ԾԷ. "Այր մի սուրբ տեսեալ բազում ժողով եպիսկոպոսաց, և 'ի միջի նոցա Պաւղոս առաքեալ որ ասէր. "Այդ է իմ պատուէրն, զայդ ուսուցի. արդ եկայք առէք 'ի սափորս և լուացէք զերեսս ձեր" Եւ իբրեւ լուացին՝ ամենեքեան սեւացան, և ասէ. "Այդպէս ամենեքեան սեւացայք:"

ԾԸ. "Մարկիանէ ոմն աշխարհական յանդիմանեաց զՊամփիլայ եպիսկոպոսն, որ առնէր քարոզ երկու բնութիւն ասելով. և մատնեցին զնա տուկի (դըքսի) քաղաքին, և տանջեաց զնա արջառաջլօք. և այր մի լուսաւոր մօտ կայր նորա՝ եդեալ ձեռն, և ոչ ցաւէր նմա, սակայն իջանէր արիւն. և առաւ բժշկութիւն ցաւոց 'ի ժամուն յայնմիկ:"

ԾԹ. "Սուրբն Տիմոթէոս պատմեաց հօրն Յովհաննու յորժամ յաքսորս էր, թէ "Յորժամ կամէր լինել ժողովն Քաղկեդոնի, և եկին հրաւիրել զիս. և յայնմ գիշերի տանէին

ղիս յեկեղեցին 'ի պատարագի, և նշխարն էր սեւացեալ իբրեւ զածուխ, և բաժակն քացախ, և ոչ կարացի հաղորդել, և խնա-ցայ զոր կամէր լինել:»

Կ. «Ստատոս աբեղայ ուռհայեցի, ա-շակերտեցաւ հօրն մերում Պետրոսի և հա-ղորդեցաւ 'ի նմանէ, և յայնմ գիշերի նոր մկրտեալ տեսանէր զինքն, և ամն ծեր մեկ-նեաց, թէ յուղղափառութիւն դառնալ՝ նորանալ է սրբութեամբ:»

ԿԱ. «Թամամսխոն երէց պատմեաց մեզ, թէ «Յորժամ գայր հերետիկոս եպիսկոպոսն 'ի ժողովս Քաղկեդոնի, մկրտէի ես տղայ մի, և տեսայ ես և ժողովրդականքն, զի Հո-գին Սուրբ աղաւնակերպ ել յաւազանէն և գնայր, և ասաց յօդաւոր ձայնիւ, թէ «Ես ոչ այլ դառնամ յայդ աւազանդ:»

ԿԲ. «Պատմեաց մեզ հայրն Պետրոս, որ կայր իւր եկեղեցական մի, որ խոնարհեալ էր յաղանդն Քաղկեդոնի, և դիպեցաւ նմա 'ի նեղ շուկայ մի, և ջանաց դարձուցանել զե-րեսս իւր; և նեղ էր տեղին՝ չկարաց. և ե-կեղեցականն երկրպագելով ողջոյն ետ, և նա յամօթոյն էառ զողջոյնն. և յայնմ գիշե-րի տեսանէր դաշտ մի, ուր ժողովեալ կային ամենայն սուրբք, և Քրիստոս Աստուած 'ի մէջ նոցա փառօք նստեալ: Եւ գնաց եր-կրպագեաց նմա, և Տէրն դարձոյց զերեսս

իւր 'ի նմանէ. և գիտաց թէ այն է պատ-
ճառն, զի էառ զողջոյն հերետիկոսին, և ան-
կաւ յերեսս իւր. և մինչ բարեխօսէին ամե-
նայն սուրբք, ոչ հայեցաւ 'ի նա ։»

ԿԳ. «Ոմանք աշխարհականք արեւելեան
ուղղափառք գնացին ճանապարհաւ 'ի Բիւ-
րիտոնիա, և գնացին առ Մինակեաց մի, և
նա ասաց ցնոսա. «Լսեմ թէ ոչ հաղորդիք
յեկեղեցիսս մեր ։» Եւ նոքա ասեն. «Ու-
նիմք առ մեզ հաղորդ 'ի հօրցն մերոց ուղ-
ղափառաց, և նովաւ հրամանաւ հաղորդիմք ։»
Եւ նա սաստեաց և ասէ. «Դուք աշխար-
հականքդ և զիա՞րդ իշխէք նախատել զմեզ.
և զոր ունիք առ ձեզ, այդ չէ հաղորդ ։»
Եւ նոքա տրտմեցան և ասեն. «Զի՞նչ է
այս ։» Եւ յաւուր կիւրակէի առեալն զհա-
ղորդն իւրեանց և էր վառեալ լուսով և ա-
նոյշ հոտով. և ոմն 'ի նոցանէ հաւատացեալ
էր Մինակեցին, և տեսանէր զիւր մասն
միս արիւնաթաթախ, և մեղայ ասաց. և
հաստատեցան յիւրեանց կրօնսն, և փոխե-
ցաւ մասն և հաղորդէին անխիղճ ։»

ԿԴ. «Սոփրոնիոսի սարկաւագապետին
Երուսաղէմի քոյր մի կոյր կուսան սուրբ,
որ պահօք և աղօթիւք կատարէր զաւուրս
իւր. և եհաս 'ի կատարելութիւն այնչափ,
որ յորժամ երթայր յեկեղեցին սուրբ Սոփ-
րոնիոսի և Յովհաննու, տեսանէր զսուրբն

Ստեփաննոս և զՅովհաննէս. և յետ ժողո-
վոյն Քաղկեդոնի դարձեալ գնայր աղօթէր
ըստ սովորութեանն ընդ խմորեալն յաղան-
դըն: և երեւեալ նմա սուրբն Ստեփաննոս
ասէ. «Քոյր, երթ նիստ 'ի տան քո, մի գար
այսր. և մեք առ քեզ եամք. զի ընդ այս
ժողովոյս չկամիմք լինել ուրացողաց Քաղ-
կեդոնացւոց:»

ԿԵ. «Այրն մի ուղղափառ պամփիւլացի բը-
նակէր յԵրուսաղէմ, և գնաց ընդ մեծ ժո-
ղովոյ 'ի տաճար Համբարձմանն, և դիպեցաւ
նմա մնալ 'ի տաճար Համբարձմանն, և փա-
կեցաւ դուռնն, և զգիշերն աղօթեաց յե-
կեղեցին, և վաղւն չոգաւ 'ի խրճիթն.
Եւ յետ աւուրց կալաւ զնա ցաւ մահու,
և տեսանէր զի կային առ ընթեր նմա հրեշ-
տակք, և վիճէին ընդ նմա. դարձաւ առ
մերձակայսն և ասէ. «Տեսէք զինչ ասեն
ընդ իս մեղադրութիւն, թէ զիարդ վճա-
րես ուղղափառութեամբ զկեանս քո, և
համարես զքեզ կատարեալ, զի զանարժա-
նիցն պատարագն ետես և զհաղորդութիւ-
նըն, և աղօթեցեր ընդ նոսա:» Այն կինն
այն կանգնեալ 'ի հիւանդութենէն՝ ապաշ-
խարեաց, զի խնդրեաց յԱստուծոյ և ընկէց
զինքն յանդիման սեղանոյն Աստուծոյ, և
գոչէր արտասուօք թէ՝ զիարդ խոստովանեա-
ցուք զհաւատն ուղղափառ, յայտնեա մեզ

սուրբ եկեղեցի։ Եւ եղեւ ձայն 'ի սուրբ սեղանոյն և ասաց. «Որդին Աստուծոյ նոյն է որ ծնաւ 'ի կուսէն, նոյն է որ խաչեցաւ, նոյն է որ թաղեցաւ, նոյն է որ յարեաւ և գալոց է։»

ԿԶ. «ՅԱնատոլիա(1) Պամփիլացւոց կուսանաց վանաց առաջ մի կոյր, որում անուն էր Օսկի, և էին ուղղափառք։ Եւ յաւուր միում յափշտակեցաւ մտօք 'ի դրախտն, և ցուցին նմա զծառն կենաց. և տեսանէր թէ որպէս պարք մեղուաց գային և ջանային յարենալ 'ի ծառն կենաց։ Եւ սարկաւագ մի լոյս զգեցեալ հալածեաց զնոսա. և հարցանէր Օսկի թէ՝ «Զինչ է այդ։» Եւ ասէ սարկաւագն. «Ծառս Քրիստոս է, և մեղուքս ժողովն Քաղկեդոնի, որք չեն արժանի մերձենալ 'ի Քրիստոս։» Եւ մինչ եկն Եպոդոնիոս եպիսկոպոսն Անատոլիա(1), յանդիմանեաց ընդ նա Օսկի, թէ ընդէ՞ր ձեռագրեցեր 'ի տոմարին Լեւոնի։ Եւ նա ասաց. «Սատանամբ գրեցի, և ոչ մտօք։» Եւ ասէ Օսկի. «Մեռեալ ձեռք զիա՞րդ կարէ գրել առանց կենդանի մտանց։» Եւ հրաժարեաց 'ի նոյանէ իւր կուսանօքն։»

ԿԷ. «Լեւոնտիոս անապատական տեսանէր զեկեղեցի մերկ, և զխորհուրդն վայ-

(1) Յօրինակին խոտան.

թեալ, և ասէին. «Այս է նոցա եկեղեցին և պատարագն, որ չորրորդութիւն խոստովանեցան ՚ի Քաղկեդոն։»

ԿԸ. «Եւ այլ ոմն սուրբ և տեսանող տեսանէր զեկեղեցին Կոստանդինուպօլսի ախոռ լեալ, և լի անսուրբ անասնովք և գարշ և զազիր հոտով։»

ԿԹ. «(Սպիկտոխոս) եպիսկոպոս Հայրմանից Պամփիլոյ տեսանէր զեպիսկոպոսն Ամղէքոս զԱդեսեայ քաղաքի, այն՝ որ կոչէր ողորմած, և զԱպիփան Պերկացի՝ թաղեալ ՚ի ցեխս գարշ մինչև ցպարանոցն։ Եւ ասէ Ամղէքոս (ցԱպիփան). «Դու բարի գործովք զարդարեալդ, զիա՞րդ եղեր այդպէս։» Եւ պատասխանի ետ (Ապիփան) և ասէ. «Բարին Աստուծոյ էր և չարս ՚ի մէնջ. զի հնազանդեցաք ժողովոյն Քաղկեդոնի»։ Եւ ասէին թէ՝ նա էր նորոգել զտումարն Լեւոնի։»

Հ. «Այն մի սուրբ և զգաստ Ակթասալի անուն, յետ ժողովոյն Քաղկեդոնի մտօք յերկուս բաժանեալ տարակուսէր՝ թէ յորո՞ց հաղորդիցի, և հայցէր յԱստուծոյ ցուցանել նմա. և տեսանէր եկեղեցի մի երկխորանի, և մեծ խորանն էր մերկ և Քաղկեդոնիկ մի ՚ի վերայ, և փոքրն զարդարուն և ճառագայթաւոր և մանուկ մի հրեղէն ՚ի վերայ նորա, և ասէր՝ թէ «Այսր եկ՝ հաղորդեաց, ՚ի բաց կաց յուրացողացդ։» Եւ էր

ինքն Քրիստոս որ ասէր զայս ։»

ՀԱ. «Ի վանս հօրն Ռոմանոսի էին եր-
կու եղբարք, Տիմոթէոս և Յովհաննէս.
Տիմոթէոս վախճանեցաւ և պատեցին զնա
և տարան 'ի թաղել, և յանկարծ նստաւ 'ի
դագաղին առընթեր գերեզմանին և ասէ.
«Ներեցէք, եղբարք, որ առ իս չկայր այլ մեղաց
պատճառ քան զայն՝ որ իբրու կարծէի զեր-
կու բնութիւնն ։ Եւ վասն այնորիկ տանին
զիս 'ի տանջանս, և խնայեցաւ յիս ողորմու-
թիւնն Աստուծոյ, որ ասեմ ձեզ զայս վասն
ձեր զգուշութեան, և որ հայցէք վասն իմ
թողութիւն ուղղափառութեամբն ձերով ։»

ՀԲ. «ՅԱնտիոք Ասորւոց մերձ յարքու-
նիսն բնակեալ էր ոմն այր սքանչելի, որ ոչ
առնոյր ինչ յումեքէ, բայց սակաւ բանջար,
որով լնոյր զպէտսն իւր. և զի սաստիկ և
յայտնի յանդիմանէր զՔաղկեդոնիկոն, բռ-
պանեաւ 'ի նոցանէ տանջանօք. քանզի ասէր
նա՝ թէ «Հոտ անօրէնութեան գայ ինձ հա-
նապազ 'ի տեսանելն իմ զնոսա. և ոչ կա-
րեմ տանել լռութեամբ ։»

Գ.

Ի վեց ամին Մարկիանէի և 'ի ՉԿԹ թուին Տորւոց սպանաւ Վաղենտինիանոս Հռոմայ թագաւորն. և աստ պատառեցաւ թագաւորութիւնն Հռոմայ 'ի Կոստանդնուպօլսէ։ Որպէս Մարկիանէ առանց Հռոմայ կամացն նստաւ յաթոռ թագաւորութեանն, նոյնպէս և նոքա գնացին ըստ կամաց իւրեանց։ Ընդ նմին և պատառեցաւ կարգ եկեղեցւոյ և բարձաւ խաղաղութիւն եկեղեցւոյ զկնի ժողովոյն Քաղկեդոնի։ Եւ մեռաւ Մարկիանէ լցեալ նզովիւք 'ի սրբոց արանց ժամանակին, թագաւորեալ վեց ամ։ Եւ 'ի նոյն ամի թագաւորեաց 'ի Հռոմ Լեւոն Թրակացի ազգաւ՝ յիշխանացն Մարկիանէի (1)։ Եւ 'ի նոյն ամի թագաւորեաց Պարսից Պերոզ, և արար հալածումն Քրիստոնէից. և արար պատերազմ ընդ Հռոմայեցիս։ Եւ Լեւոն ետ զդուստր իւր Զենոնի, և կացոյց զնա թագաւոր կողմանցն արեւելից (2), և զՎասիլիսկոս արար ստրատե-

(1) Լեւոն Թրակացի որ էր հրամանատար, կոչեցաւ 'ի ծերակուտէն յաթոռն կայսերական Կոստանդնուպօլսի։

(2) Զենոն իսաւրացի ազգաւ, փեսայացեալ Լեւոնի՝ կացուցաւ ընդհանուր զօրավար Արեւելից բանակին։

լաւ 'ի Թրակիա (1), և Միուրբինոս եղեւ կեսար 'ի Հռոմ (2), և յետ սակաւու ըս-պանաւ յՌակմիրոսայ և քարոզեցան Անթի-մոս և Լուքարոս կեսարք:

Յայսմ ժամանակի շինեցաւ Կալանիկոս, որ է Ռաղայ, հրամանաւ Լեւոնի Թագաւո-րի, և կոչեցաւ Լեւոնտոպօլիս: Եւ սաստ 'ի սոյն ժամանակս եղեւ հրայրեաց 'ի Կոս-տանդնուպօլիս, որ ոչ էր լեալ յաւիտենից, և այրեցաւ 'ի ծովէ մինչեւ 'ի ծով. և եւ

(1) Բասիլիսկոս եղբայր Վերինեայ կնոջ Լեւոնի կայսեր, եղաւ գլուխ բանակին որ առաքեցաւ ընդդէմ Գինսերիկայ թագաւորին Վանտալաց:

(2) Միուրբինոս (Մայորիանոս) կացուցաւ կայսր 'ի ձեռն Ռի-կիմերայ, որ ունէր յայնժամ 'ի ձեռին զասաս գերագոյն կա-ռավարութեան Հռոմայ, և Լեւոն հաստատեաց զկայսերու-թիւն Միուրբինոսի յամի 457: Յետ սակաւու մախացեալ Ռիկիմերայ ընդ առաւելութիւն իշխանութեան Միուրբինոսի առ որով սատուերանայր ձախութիւն իւր, եա սպանանել զնա 'ի Դորդոնա որ 'ի գաւառին Միլանու, յամի 460, և կացոյց նմա յաջորդ զամս լուկանացի Լիբիոս Սեւերոս կոչե-ցեալ, զոր Միխայէլ Լատերոս անուանէ: Զկնի վախճանի սորա Ռիկիմեր կացոյց կայսր զԱնթեմիոս համաձայնութեամբ Լեւոնի, յամի 467: Եւ զսա յաջորդեցին հետզհետէ Ո-ղիւբրիոս, Գանդըբալտոս, Գլիւսերիոս. այլ կայսերութիւն սո-ցա ոչ ընդունելաւ հաստատութիւն 'ի Լեւոնէ կայսերէ Բիւ-զանդիոյ. որպէս սովորութիւն էր ցայն վայր, վասն որոյ նա ինքն Լեւոն առաքեաց կայսր յԻտալիա զմի 'ի մերձաւորաց իւրոց Յուլիոս Նեպոս, որ էր 'ի կայսերական գերդաստա-նէն, և սպանեցաւ յամի 474, և եղեւ վերջին 'ի կայսերս Հռոմայ, յորմէ և այսր դադարեաց կայսերութիւնն Հռո-մէական:

թագաւորին զկէս ամիս և ոչ կարաց մտանել 'ի քաղաքն ։ Եւ յայնժամ սահմանեաց Լեւոն կայսր , թէ յաւուր կիւրակէի յեկեղեցիս կացցեն մեծ և փոքր՝ յաղօթս և յաւուսումն , և այլ ինչ մի գործեսցեն յաւուր կիւրակէի ։

Եւ յաւուրս Լեւոնի ամիս մի օդք հող և մոխիր տեղաց , և առաւել 'ի Կոստանդինուպօլիս , և կուտեցաւ թիզ մի , և զանհի հարան աշխարհ և ակն ունէին անցանելոյ . և 'ի բազում տեղիս հուր վայթէր և այրէր բզտեղիս տեղիս ։ Եւ յայնմ ժամանակի Նիկիկոն քաղաք 'ի շարժմանէ և 'ի կայծականց չքեցաւ . և բազում քաղաքք և գեօղք 'ի Թըրակիա աւերակեցան ։ Եւ թագաւորն Լեւոն աղէցաւութեամբ մեռաւ , թագաւորեալ ամս ութեւտասն ։ Եւ յաւուրս սորա ոչ պակասեաց խռովութիւն և աւեր աշխարհի և եկեղեցւոյ , և գիտաց ամենայն իմաստուն թէ ժողովն Քաղկեդոնի զայրացոյց զԱստուած ։ Եւ խռովեցաւ հոգի նորա առ ընդ յամպարիշտ պաշտօնութեանց նոցա ։

Եւ թագաւորեաց փոքր Լեւոն հրամանաւ մեծ Լեւոնի , վեցամեայ , որ էր թոռն նորա , և որդի Զենոնի՝ կողման արեւելից թագաւորին ։ Եւ յետ ամի միոյ եկն հայր նորա Զենոն՝ զի եւ կիպրաղակցէ որդւոյն . և կին նորա , մայր աղջկայն , խորհեցաւ զնա ար-

պէս զմանուկ և ասէ. «Յորժամ գայ հայր
քո և երկրպագէ քեզ, դիր զԹագն 'ի գը-
լուխ նորա և դու երկրպագեա նմա:» Եւ
արար այնպէս. և յետ սակաւ միոյ ժամա-
նակի տղոյն Լեւոն, և տրտմեցան բազումք: Եւ
էր Օշինն յՍորի ազգէ, և աղաչէր զնա
Թագուհին մեծ Լեւոնի Ռեբինիա (Աւերինէ)
վասն ժողովոյն Քաղկեդոնի՝ զի ընկալցի ըզ-
նա, և ոչ լուաւ նմա: Իսկ Թագուհին ըն-
կէց զնա 'ի Թագաւորութենէ և եդ զեղ-
բայր իւր զՓաւիլիկոս, որ էր մինչեւ ցայն-
վայր աստուածքեալ 'ի Լեւոնէ յԱրակլիա.
և քարոզեցաւ Թագաւոր և արար զօրդին
իւր զՄարկոս՝ կեսար: Եւ Օշինն փախեաւ
յերկիրն Սորուոց՝ Թողեալ զԹագաւորու-
Թիւնն, և մտեալ 'ի բերդն Սալամէ դա-
ղարեալ. և կին իւր Սրկանիա (1) եկն առ
նա գաղտագնաց:

Եւ Փաւիլիկոս որդւովն Թագաւորեաց
ամս երկու. և էր պիղծ և չարագեւ, և գը-
րէր ամենայն ուրէք զՔաղկեդոնին հաստա-
տել և քարոզել 'ի վերայ աշտարակի, և
հալածել զուղղափառսն, և եղեւ տանջք
յաչս ամենեցունց. և գային առ Օշինն,
և եղեւ ժողով մեծ: Եւ Փաւիլիկոս առա-

(1) Արկանիա. այն է Արքայնէ՝ կին Զենոնիոսի դատաւոր
էր Լեւոնի Ա. կայսեր Յունաց:

քեաց զԱրտեմիոս (Արտաւասդոս) զօրագլուխ պատերազմիլ ընդ Օնոնի ։ Իսկ Օնոն խոստացաւ ընդ նմա 'ի խաղաղութիւն, և խոստացաւ զնա կեսար առնել ։ Իսկ առեալ ըզՕնոն զօրօքն ածին 'ի Կոստանդնուպօլիս, և ընկալան քաղաքն խնդութեամբ. և փախեաւ Նիկեփորոս որդւովքն յեկեղեցի մի. և առաքեաց Օնոն մերկացոյց զնա 'ի ծիրանեաց, և առաքեաց 'ի Լամիս Կաստրա (1) Կապադովկացւոց. և ածին 'ի բուրգն մի և փակեցին յամենայն կողմանց, և դառնապէս մեռաւ անդէն ։ Իսկ Օնոն արար զԱրտեմիս զօրապետ և զորդին իւր կեսար (2). և զկնի սակաւիկ ապանեաց Արտեմիս, և զորդին արարին ընթերցող եկեղեցւոյ ։

Յայնժամ թագաւորն 'ի ձեռն Նիկիտայ պատրիարքի Կոստանդնուպօլսի յորդորեալ յուղղափառութիւն առաքեաց առ Պետրոս պատրիարքն Անտիոքու և առ Տիմոթէոս պատրիարքն Աղեքսանդրու, որ կային 'ի բանտի 'ի Կոստանդնուպօլիս, հարցանել հաւատոյ խոստովանութիւն. և նոքա ետուն

(1) Կաստր 'ի լեզու Յունաց և Լատինաց նշանակէ աշտարակ, բերդ. իսկ Լամիս է Լիմնէս անունն, ուր բանտարկեալ լինէին կասկածաւոր անձինք առ բիւզանդեան կայսերութեամբ ։

(2) Որդին Արտեմիոսի կոչէր Նիկեփորոս որ ապա զրկեալ թագաւորութենէն՝ եղեւ եպիսկոպոս Նիկոմիդիոյ, 'ի Բիւթանիա.

*գրով զՍիկկիայն և զԱփուղին և զԴիոսկորոսին, և ասացին թէ՝ «Մեք յայդ եմք։» Եւ Թագաւորն առաքեաց ընդ ամենայն երկիր և ձեռնագրեցին ՚ի դաւանութիւնն յայն եւթն հարիւր եպիսկոպոսք, և ասացին թէ՝ «Նզովեմք զտումարն Լեւոնի, նզովեմք ըզժողովն Քաղկեդոնի, նզովեմք զԻկաւ, նզովեմք զՆեստոր որ պատառեցին զհաւատս, և նզովեալք եղիցին ոչ նզովողք նոցա։» Եւ ընկալեալ Թագաւորն և հաւանեալ՝ առաքեաց զՊետրոս զոր Թափիչն կոչեն, պատուով մեծաւ յԱնտիոք յաթոռն իւր, և անդ կատարեցաւ։ Եւ զՏիմոթէոս յԱղեքսանդրիա, որ ձեռնադրեալ էր ուղղափառացըն զկնի Պրոտերիոյ, և կայր յաքսորս։*

*Ի յայսմ ժամանակի ապստամբեցին Սամարացիքն, և եդին իւրեանց Թագաւոր Հաստատուն, և զբազումս կոտորեաց ՚ի քրիստոնէից, և մտեալ ՚ի Կեսարիա՝ քակեաց զեկեղեցիսն։ Իսկ զօրքն Հռոմայեցւոց գընացեալ ՚ի վերայ նոցա կոտորեցին. և զՀաստատ Թագաւորեալն Հրէից առաքեցին առ*

(1) Պրոտերիոս էր ՚ի Քաղկեդոնականաց. որ յաջորդեաց զաթոռն Աղեքսանդրիոյ զկնի Դիոսկորոսի զոր Մարկիանոս կայսր աքսորեաց ՚ի Գանգրաս Պափլագոնիոյ վասն պաշտպանութեան երեւելոյ Եւտիքեայ մոլորութեանն։—Եւագրիոս Պատմ. Եկեղ. Բ. 5։

(2) Այն է Յուստոս կամ Յուստասիոս կոչեցեալ, որ էր գըլուխ յելուզակաց։

Զենոն թագաւոր, և զշինեալն 'ի Հրէից
տաճարն՝ օրհնեցին եկեղեցի յանուն սրբոյն
Մարիամայ, և զգտեալ Հրեայն յԱնտիոք
կոտորեցին :

Յայսմ ժամանակի եղեւ շարժ, և Նիկո-
միդիա քաղաք կործանեցաւ. և էր այս վե-
ցերորդ շրջումն Նիկոմիդիայ 'ի շարժմանէ :
Եւ յետ այսորիկ մեռաւ թագաւորն Զե-
նոն վաթսուն ամաց, թագաւորեալ ամս
վեշտասան: Եւ Փիւրոս (Պերոզ) թագաւորն
Պարսից, դառն հալածիչն քրիստոնէից չարա-
մահ եղեւ, և էառ զթագաւորութիւնն
Բալաշ (Վաղարշ) ամս չորս. և յաւուրս
սորա խաղաղութիւն եղեւ քրիստոնէից : Եւ
թագաւորեաց Անաստաս 'ի տեղի Զենոնի.
և ընդ թագաւորելն գտաւ շարիք 'ի մանե-
կունս դպրոցացն, և լուեալ թագաւորն
բարկացաւ և կոտորեաց զամենայն դպրոցս
Կոստանդինուպօլսի : Եւ սորա հրամանաւ
շինեցաւ քաղաքն զոր Տարա կոչեն, վասն
անդ սպանանելոյ զԴարեհ, և անուանեաց
զնա Անաստաս յանուն իւր՝ Անաստասուպօ-
լիս [1]: Եւ յաւուրս սորա 'ի շարժմանէ ըն-
կղմեցաւ Նիկոպօլիս : Եւ զկնի Բալաշայ
թագաւորեաց Պարսից Կուատ (Կաւատ). և
Համազասպ [2] եղբայր Նորա հալածեաց ըզ-

(1) Միքայել Չամչեան. Պատմ. Հայոց. Հտ. Բ. յէր. 235:
(2) Համազասպ է սխալ օրինակողաց. փոխանակ գրելոյ Համ-
ասպ կամ Ջամասպ :

Կոստոն ամս երկու․ և դարձեալ զօրացեալ Կոստոն սպան զեղբայրն և թագաւորեաց ամս երեսուն ։ Իսկ յայնժամ ելին Հոնք և յաղթեցին Պարսից, և կարծեցին Պարսիկք թէ Հռոմայեցւոց բանիւ եղեւ, և ժողովեալ զօրս՝ եկին յերկիրն Մնջագետաց և առին քաղաքս բազումս [1] ։

Յայսմ ժամանակի եղեւ Պատրիարք Կոստանդնուպօլսի քաներորդ՝ Տիմոթէոս, յայժ առաքինի և իմաստուն, որ առաջ թագաւորին և գրեցաւ կանոն զսուրբ Աստուածն խաչեցար ասել ընդ ամենայն երկիր․ և խռովեցաց Անաստաս եւ սահմանեցաւ յերկիր ամենայն ։ Իսկ եղեւ ժխոր մեծ 'ի Կոստանդինուպօլիս՝ թէ զԵրրորդութիւնն խաչեն․ և էին 'Նեստորականք և սպանանցան Տիմոթէի, և սպանին երէց մի զՏիմոթէի․ և Տիմոթէոս զայրացեալ գնաց 'ի քաղաքէն ։

Յայսմ ժամանակի երեւեցաւ այրն բանաւոր Փելիքսիանոս արքեպիսկոպոս, որ է Մնբէճայ, ձեռնադրեալ 'ի Պետրոսէ Անտիոքու ։ Սա արար յոլով գրեանս ուղղափառ վարդապետութեան ։ Զսմանէ լուաւ թագաւորն (Անաստաս) և առաքեաց տարաւ 'ի Կոստանդինուպօլիս եպիսկոպոսօք և վարդապետօք, և մի էր 'ի վարդապետացն Սեւերիանոս և երկու հարիւր քահանայս ընդ նմա.

[1] Միքայէլ Չամչեան. Պատմ. Հայոց. Հտ. Գ. Եր. 232.

և հռոմայեցւոց Թագաւորն քննութիւն առ-
նել վասն հաւատոյ. և յաղթողք երևե-
ցան վարդապետութեամբ Փիլոքսիոս (Փե-
ղիքսիանոս) և Սեւերիանոս ընդդէմ չարա-
փառացն։ Իսկ հռոմայեցւոց Թագաւորն հա-
նել ՚ի գերեզմանէն Իւփիմեայ վկայի զասու-
մարն Լեւոնի և Քաղկեդոնի, և այրեցաւ
հրով։ Իսկ Իոանանիոս (Փլաբիանոս) ոչ կամէր
զայրելն, և ցուցաւ այնու. Թէ՝ համախոհ է
Քաղկեդոնի, որ էր պատրիարք Անտիոքու.
և նզովեցաւ և գնաց յաքսորս։ Իսկ Փիլոք-
սիոս ձեռնադրեաց եպիսկոպոս ՚ի Կոստան-
դինուպօլիս զՄեծն Սեւերիանոս, զի հովուել
և խնամոտն և փարթամ Աստուածաշունչ
գրովք. և յաւուրս ձեռնադրութեան իւրոյ
ասաց զճառն, որոյ սկիզբն այս է. «Որք
բաժանեն զմիաւորութիւն Որդւոյն Աստու-
ծոյ. ղ և կոյս ՚ի նմա ամենայն արատ աղան-
դաւորաց. զոր (զճառն) և ունին Յոյնք և
կարդան ՚ի յանդիմանութիւն իւրեանց։
Յայս ժամանակս էր Մեծն եպիսկոպոսն, և
ունէր շնորհ աստուածային և ոչ ՚ի դպրու-
թենէ մարդկան. զոր ընկալաւ զնոսա վար-
դապետութիւնն Սեւերիանոս պատրիարքն
Անտիոքու, այն որ ձեռնադրեցաւ ՚ի Կոս-
տանդինուպօլիս յաքսորելն զՓլաւիանոս Ան-
երևեցաւ Ակմն քրձաւորն, որ ասաց ճառս
և չարականս ուղղափառ դաւանութեան։

Յայսմ ժամանակի Թագաւորն Պարսից Կրուան (Կաւատ) ժողովեալ զօրս՝ եկն ՚ի Կարնոյ քաղաք և էառ զնա. և աւար ածէր և ոչ կոտորեաց զնոսա, զի ոչ անարգեցին զնա յորժամ պաշարեալ էր զքաղաքն. և դարձաւ եկն յԱմիթ յաշնան ժամանակին և սաստիկ նեղէր զնոսա: Եւ եկեալ էր առ նոսա Յովհաննէս վանական ՚ի Կարթմայ և քաղաղէր մեծատանց ողորմել աղքատացն, և ընդայդ ամբոխն ասէր. „Արբեցէք զձեզ պահօք և լալով և հսկմամբ գիշերականօք:„ Եւ երեւեալ նմա հրեշտակ Աստուծոյ ասէ. „Յովհաննէս, կործանի քաղաքս այս վասն մեղաց, և դու փախձանիս և ոչ տեսանես զաւեր քաղաքիս:„ Եւ նա ոչ դադարէր յաղօթից և ՚ի քարոզելոյ. և եկն անձրեւ սաստիկ և երկայն հանդերձիւք իւրեանց Պարսիկքն բակրսան նեղիլ և տկարանալ. և զի չինեալ էին փայտեղէն բերդս, և տարեալ առ պարիսպն, և քաղաքին խմաստունքն ջուր հացհամեմի արկին ՚ի վերայ և այրեցին՝ ձգեալ կրակ ՚ի նա: Եւ Թագաւորն Պարսից խնդրեաց ինչս և ոսկիս զի գնասցէ. և նոքա անարգեցին զնա և ՚ի չարիս իւրեանց ոչ զղջացան. և բարկացաւ Տէրն և մատնեաց զքաղաքն և կոտորեցին ՚ի նմա անձինս ութսուն հազար, և զայլսն գերեցին. բայց միայն զի մեծ եկեղեցին լցեալ էր ժողովրդեամբ

քացն (1)։ Եւ այսու օրինակաւ բարձաւ թա-
գաւորութիւնն Պարսից, տեւեալ ամս չորս
հարիւր ութ և տասն, որ կոչէրն Սասանեայ.
և առին Տաճկունք (Արաբացիք) զիշխանու-
թիւն Պարսից։

Իսկ Հերակլ 'ի զօրանալն Տաճկաց սկսաւ
յԱնտաքոյ մինչեւ 'ի Կոստանդինուպօլիս բա-
զում կողոպուտս առնել 'ի քրիստոնէից, զի
ասէր՝ լաւ է մեզ քան Տաճկաց։

Իսկ Ոմար գնաց յԵգիպտոս, և ել ընդ-
դէմ նորա եպիսկոպոսն Կիւրոս, և խոստացաւ
տալ նմա 'յամենայն ամի երկու հազար դա-
հեկան՝ զի մի՛ մտցէ նա յԵգիպտոս, և դար-
ձաւ։ Եւ Հերակլ բարկացաւ և եհան ըզ-
Կիւրոս յեպիսկոպոսութենէն. և առաքեաց
զօրագլուխ մի Մանուիլ անուն, Հայ ազգաւ,
պահել զերկիրն. և յորժամ գնացին հարկա-
ւուքն զի առցեն զհարկն, ասաց. "Ես չեմ
Կիւրոս որ տամ ձեզ ոսկի. զի նա փիլոն ունէր
և ես թուր։" Եւ շրջեցան զօրքն Տաճկաց
յԵգիպտոս և առին զԵգիպտոս, և դարձաւ
եկն յԵրուսաղէմ Ոմարն. և եկն առաջի նո-
րա Սոփրինոս (Սոփրոնիոս) եպիսկոպոսն Ե-
րուսաղէմի, և ետես զՈմար զի զգեցեալ

(1) Սեբէոս (յեր. 168—169) ասէ՝ փախեաւ 'ի զօրս հարաւոյ. և (յեր. 214—215) ասէ՝ փախեաւ 'ի զօրս Թե-տալաց և 'ի նոցունց սպանաւ։—Ղեւոնդ, Գլ. Բ. յեր. 23։ —Թովմա արծրունի, յեր. 115)։

էր հին հանդերձ և հին մուշտակ, և երբեր
'նմա պատուական հանդերձ, և աղաչէր ըզ-
'նա զգենուլ, և նա ասէր. «Ետ Աստուած
'ի ձեռս իմ՝ զամենայն գանձս Պարսից 'ի Տիս-
բոն, և նոյնպէս զՀռոմայեցւոյն և զՊրա-
մանկեայ և զամենայն գաւառաց Եգիպտա-
ցւոց, և ոչ փոխեցի զհանդերձ աղքատու-
թեան իմոյ՝ զի մի մոռացայց զիս և հպար-
տացայց.» և ոչ առ 'ի նմանէ: Եւ ետ ե-
պիսկոպոսին զիշխանութիւն աշխարհին. և
խնդրեաց 'ի նմանէ եպիսկոպոսն հանել ըզ-
Հրեայսն յԵրուսաղեմէ, և ետ 'ի հրամանս
նորա (1): Եւ ետ հրաման շինել 'ի Տաճարին
տեղն մզկիթ նմա: Եւ անտի եկեալ յԱսորիս,
և Յովհաննէս զօրապետ Հերակլի որ կայր
յՈւռհա, գնաց առ նա 'ի Կընշրի, և ետ նո-
ցա հարիւր հազար դահեկան հարկ տարւոյ
միոյ, զի այլ մի մտցեն 'ի Միջագետս յարե-
ւելից կողմանէ: Եւ լուաւ Հերակլ և բար-
կացաւ և տարեալ զՅովհաննէս ետ 'ի կա-
պանս. զի Աստուած որ կամէր հանել 'ի նո-
մանէ զաշխարհն, ետ նմա միտս դառն և
հպարտ: Եւ 'ի գալ տարւոյն եկեալ մտին

(1) Ի հրովարտակին զոր ետ Օմար՝ Հայոց, ոչ միայն յիշա-
տակի արտաքսումն Հրէից 'ի սուրբ քաղաքէ, այլ և ոչ որ.
ասէ. 'ի Յունաց որ 'ի շրջակայս Երուսաղէմի իցեն, 'ի գալ խա-
բեանց յուխտ, մի բնակեսցին 'ի քաղաքին. քանզի Յոյնք ա-
պստամբք համարեալ էին:

քացն (1)։ Եւ այսու օրինակաւ բարձաւ թա-գաւորութիւնն Պարսից, տեւեալ ամս չորս հարիւր ութ և տասն, որ կոչէին Սասանեայ. և առին Տաճկունք (Արաբացիք) զիշխանու-թիւն Պարսից։

Իսկ Հերակլ 'ի զօրանալն Տաճկաց սկսաւ յԱնտաքեայ մինչեւ 'ի Կոստանդինուպօլիս բա-ղում կողոպուտս անել 'ի քրիստոնէից, զի ասէր՝ լաւ է մեզ քան Տաճկաց։

Իսկ Ումար գնաց յԵգիպտոս, և ել ընդ-դէմ նորա եպիսկոպոսն Կիւրոս, և խոստացաւ տալ նմա յամենայն ամի երկու հազար դա-հեկան՝ զի մի մտցէ նա յԵգիպտոս, և դար-ձաւ։ Եւ Հերակլ բարկացաւ և եհան ըզ-Կիւրոս յեպիսկոպոսութենէն, և առաքեաց զօրագլուխ մի Մանուէլ անուն, Հայ ազգաւ, պահել զերկիրն. և յորժամ գնացին հարկա-ւուքն զի առցեն զհարկն, ասաց. «Ես չեմ Կիւրոս որ տամ ձեզ ոսկի. զի նա փիլոն ունէր և ես թուր։» Եւ շրջեցան զօրքն Տաճկաց յԵգիպտոս և առին զԵգիպտոս, և դարձաւ եկն յԵրուսաղէմ Ումարն. և եկն առաջի նո-րա Սոփրինոս (Սոփրոնիոս) եպիսկոպոսն Ե-րուսաղէմի, և ետես զՈւմար զի զգեցեալ

(1) Սեբէոս (յեր. 168—169) ասէ՝ փախեաւ 'ի զօրս հարաւոյ. և (յեր. 214—215) ասէ՝ փախեաւ 'ի զօրս Թե-տալաց և 'ի նոցունց սպանաւ։—Ղեւոնդ, Գլ. Բ. յեր. 23։ —Թովմա Արծրունի, Հ. յեր. 115)։

էր հին հանդերձ և հին մուշտակ, և եբեր
նմա պատուական հանդերձ, և աղաչէր ըզ-
նա զգենուլ, և նա ասէր. «Ես Աստուած
'ի ձեռս իմ՛ զամենայն գանձս Պարսից 'ի Տիզ-
բոն, և նոյնպէս զՀռոմայեցւոցն և զԴա-
մասկեայ և զամենայն գաւառաց Եգիպտա-
ցւոց, և ոչ փոխեցի զհանդերձ աղքատու-
թեան իմոյ՝ զի մի մոռացայց զիս և հպար-
տացայց.» և ոչ առ 'ի նմանէ. Եւ եդ ե-
պիսկոպոսին զիշխանութիւն աշխարհին. և
խնդրեաց 'ի նմանէ եպիսկոպոսն հանել ըզ-
Հրեայսն յԵրուսաղեմէ, և ետ 'ի հրամանս
նորա (1). Եւ ետ հրաման չլինել 'ի Տաճարին
տեղն մզկիթ նմա: Եւ անտի եկեալ յԱսորիս,
և Յովհաննէս զօրապետ Հերակլի որ կայր
յՈւռհա, գնաց առ նա 'ի Կընշրի. և ետ նո-
ցա հարիւր հազար դահեկան հարկ տարւոյ
միոյ, զի այլ մի մտցեն 'ի Միջագետս յարե-
ւելից կողմանէ: Եւ լուաւ Հերակլ և բար-
կացաւ և տարեալ զՅովհաննէս ետ 'ի կա-
պանս. զի Աստուած որ կամէր հանել 'ի նը-
մանէ զաշխարհն, ետ նմա միտս դառն և
հպարտ: Եւ 'ի գալ տարւոյն եկեալ մտին

(1) Ի հրովարտակին զոր ետ Օմար՝ Հայոց, ոչ միայն յիշա-
տակի արտաքսումն Հրէից 'ի սուրբ քաղաքէ, այլ և ոչ ոք,
ասէ, 'ի Յունաց որ 'ի շրջակայս Երուսաղէմի իցեն, 'ի դալ իւ-
րեանց յուխտ, մի բնակեսցին 'ի քաղաքին. քանզի Յոյնք ա-
պստամբք համարեալ էին:

'ի Անջագետս Տաճկունք. և 'ի գալն յԱսա-
հա ելին ընդառաջ եկեղեցականքն սիրով.
և իմաստութեամբ խրեանց հանին զզօրա-
կանքն սիրով՝ զհառամայեցւոցն որ անդ էին։
Եւ տիրեցին Տաճիկք Անջագետաց։ Բայց
Թլմօզն և Տարա ոչ հնազանդեցան սիրով,
և առին զնոսա բռնութեամբ և կոտորեցին
զզօրսն որ 'ի նոսա։ Եւ յամին յայն եդին
գլխահարկ ամենայն քրիստոնէի որ ընդ ի-
րեանց իշխանութեամբ։

Եւ յայսմ ամի մեռաւ Հերակլ՝ թագա-
ւորեալ ամս երեսուն և ամիս հինգ։ Եւ
թագաւորեաց Կոստանդիանոս որդի նորա
ամիս չորս։ Եւ ունէր Հերակլ երեք որդի,
միոյն անունն Կոստանդիանոս (Հերակլ—Կոս-
տանդին) և միւսոյն Եռակլիս, և կրսերոյն
Եռակլեակ։ Եւ Մարտինէ կինն Հերակլեայ
դեղով սպան զԿոստանդիոս (Հերակլ—Կոս-
տանդին), և թագաւորեցոյց զկրսեր որդին
Եռակլեակ, և դժուարեալ իշխանքն սպանին
զԵռակլեակ և եդին թագաւոր զԿոստաս զոր-
դին Կոստանդինոսի՝ զթոռն Հերակլեայ (1)։
Իսկ Ամար յետ յաղթութեանն Պարսից

(1) Հերակլեայ յառաջին կնոջէ ծնաւ Հերակլ—Կոստան-
դին, և 'ի Մարտինեայ յերկրորդէն ծնան Հերակլեակ, Դաւ-
իթ և Մարինոս. իսկ Կոստաս, որ և յանուն հօրն Կոստան-
դին կոչեցաւ, էր թոռն առաջնոյն Հերակլեայ։ Սեբէոս,
յեր. 164։

և Հռոմայեցւոց՝ սպանեալ 'ի ծառայէ միջէ
որ աղաչէր առնել՚նմա դատաստան, և նա
յամեցուցանէր. և յաւուր միում յորժամ ա-
ղօթէր Ամար, եհար զնա դանակաւ, և մե-
ռաւ՝ թագաւորեալ ամս երկոտասան: Եւ
առ զիշխանութիւնն Օթման. և էր սա ա-
գահ և անցանէր զսահմանաւ առաջնոցն,
և խորհեցան իշխանքն սպանանել զնա. և ի-
մացաւ Օթման և աղաչեաց զի ներեսցեն
նմա, և կացցէ 'ի սահմանի առաջնոցն, և թո-
ղին զնա: Եւ եդին զօրագլուխ զՄաւի(1).
և եկն Մաւի զօրօք 'ի Կեսարիա Մորատոն-
եան(2), և առ զնա և կոտորեաց զՀռոմայե-
ցիսն որ 'ի նմա: Եւ 'ի հինգ ամին Կոստան-
դիանոսի յաւարի հարեալ զերկիրն՝ գնաց: Եւ
թագաւորն Կոստոս ժողովեաց զօրս և արար
բաժինս երկուս, զմինն ետ 'ի ձեռս Հայկազ-
նայ ումեմն, որում անունն Դաւիթ էր(3),

(1) Մաւի կամ Մաւիաս (Մաավիէ), էր որդի Աբու—Սոֆիանայ իշխանին Սիւրիոյ.

(2) Կեսարիա Մորատոնեանն էր յերկրին Պաղեստինացւոց, որ և կոչի Կեսարիա Պաղեստինի, զոր շինեաց Հերովդէս, և կոչէր յառաջագոյն տեղին՝ Աշտարոն Ստրատոնեան, զոր ինքն 'ի պատիւ Օգոստեայ կայսեր անուանեաց Կեսարիա. և է այժմ աւերակ և երեք ժամու հեռի 'ի Յոպպէ: Յովսեպոս, Պատմ. պատերազ. Հրէից. Գիրք Ա. Գլ. ԺԶ.

(3) Այն է Դաւիթ Սահառունի, զոր Հերակլ Ա. արար կիւրապաղատ 'ի վերայ աշխարհին Հայոց յամի 631. և զնա խզորդեաց Թէոդորոս Ռշտունի յամի 636: Իսկ Սեբէոս՝

և զմիւսն 'ի ձեռս Վաղինեայ[1], որ գնաց ընդ Սխլիկիա և սպանաւ 'ի Տաճկացն որք եկեալ էին հնազանդել զՍխլիկիա, և ելին ընդդէմ նորա և սպառեցին զՅոյնսն, սակաւ ինչ Թողեալ փախստեայս: Եւ Դաւիթ գնաց վերին կողմամբն, և զօրքն Հռոմայեցիք որք ընդ նմա, ոչ ինչ պակաս քան զՀագարացիսն գործէին կողոպտելով զքրիստոնեայսն, և առնուին ոսկի և արծաթ և հանդերձս, այլ և զկանայս խայտառակէին յանդիման արանցն: Եւ ոմն գնացեալ առ Դաւիթ՝ ասաց. «Ընդէ՞ր տաս գործել զօրացդ այդպիսի չարիս. զի՞նչ պատասխանի տաս առաջի Աստուծոյ:» Իսկ նա զայրացեալ սաստեաց Յունականացըն, և ասէ. «Այս է իպատճառ քրիստոնէից կորստեան, զի ոչ ինչ է խտիր ընդ մեզ և ընդ անհաւատսն գործովք և լրբութեամբս:» Եւ առեալ զնոսա դարձաւ 'ի Կոստանդինուպօլիս:

Յայսմ ժամանակի Պատրիկն Գրիգոր ապստամբեաց 'ի Աֆրիկէ. և յանկարծ մտին Տաճիկքն Աֆրիկէ և գերեցին, և Գրիգոր

Թումա անուն զոմն իշխան, ասէ, արձակեաց 'ի Հայս. (յեր. 179):

(1) Վաղենտինոս, քանզի օգնեաց Կոստասայ որ և Կոստանդ, ունել զաթոռն կայսերութեան, կարգեցաւ 'ի նմանէ զօրավար: Զսա Արշակունի լինել ասէ Սեբէոս, յեր. 175: Եւ սպանաւ յաղմկի ուրեք յամի 644, կամ ըստ Սեբէոսի՝ արկաւ 'ի հուր 'ի ժողովրդոցն՝ յետ գլխատելոյ զնա, (յեր. 179):

Հնազանդեալ գնաց 'ի Կոստանդինուպօլիս ։

Եւ 'ի սոյն ժամանակս հրամանաւ Մաւ-եայ եկին հազար և եւթն հարիւր նաւ յԵ-գիպտոսէ, և առեալ զնոսա Մաւի՝ գնաց 'ի Կիպրոս կղզի և խնդրեաց 'ի նոցանէ հարկս. և ամրացան 'ի քաղաքս և ոչ կամեցան տալ. և յարձակեցաւ 'ի վերայ նոցա սուրն Հա-գարու և կոտորեաց բազմութիւն յոյժ ։ Եւ չոգաւ 'ի քաղաքն Կոստանդիա որ գլուխ էր կղզւոյն, և լցեալ կայր մարդով և գանձիւք, և նստեալ շուրջ զնովաւ՝ էառ զնա և կոտո-րեաց և եհից զնա արեամբ. և արար պղ-ծութիւնս յեկեղեցի նոցա 'ի կաթուղիկէն զոր շինեալ էր սուրբն Եպիփան(1), փոխանակ զի ոչ պահեցին զուղղափառ հաւատն Եպի-փանու և ոչ զսահմանեալ կանոնս նորա և զգործս ։ Եւ լցան կորքն Հագարու յաւարէ նոցա, և առեալ մասն եկելոցն յԵգիպտո-սէ՝ գնացին յերկիրն իւրեանց ։

Եւ յայնմ ժամանակի գրեաց սուրբն Ա-թանաս պատրիարքն Ասորւոց ուղղափառաց 'ի սուրբն Քրիստափոր (Գ) կաթողիկոսն Հա-յոց, զի խնամ տարցի կողմանցն Պարսից և Աթուրացւոց (Ասորւոց) քրիստոնէից՝ զգու-

(1) Կոստանդիա, որ և Սալամինա, և արդ կոչի ըստ Տաճ-կաց Թուղլա, քաղաք է ծովեզերեայ, յորում շինեաց Եպիփան շքեղ եկեղեցին և մեծացոյց 'ի ժամանակս եպիսկոպոսութեան իւրում այնր քաղաքի ։ Վարք սրբոց, յեր. 271 ։

շացուցանել զնոսա յաղանդոյն Նեստորի և Քաղկեդոնացւոցն. «Քանզի գտաք մեք, ասէ, Թուղթ՝ զորքոյն Մարութայի, եթէ որպէս շնորհօքն Աստուծոյ ապրեցայք ազգդ Հայոց ի Բարսումայէ ապականչէ (1)։ Յորում թղթին գրեալ կայր այսպէս, եթէ Բարսումա մի էր յաշակերտացն Նեստորի և կայր ի Մըծբին, և յորժամ լինէր ժողովն յԷփեսոս առ Թէոդոսիւ, ոչ գնաց Բարսումա ի ժողովն, այլ ասաց՝ եթէ «Ես ընդ իշխանութեամբ Պաւեայ կաթողիկոսի եմ զոր ձեռնադրեալ են Հայք ի Պարսից աշխարհնէ»։ Եւ զի առաքեալ էին յԷփեսոսէ ի Պարսս խնդրակս Պաւեայ և այլոց եպիսկոպոսացն որ ընդ ձեռամբ նորա էին, և Պաւլի գրեալ Թուղթ ուղիղ դաւանութեան և ի ձեռն երկու ա-

(1) Այն է Բարծումա եդեսացի ջերմ աշակերտն Նեստորի. որոյ ուսումն մոլար վարդապետութեանն հասեալ և ի Հայս յաւուրս Քրիստափորի Ա գրեաց կաթողիկոսն առ Բաբուէ (Պաւլէ), որ էր կաթողիկոս քրիստոնէիցն՝ որ ի Պարսս և յայլ տեղիս, առ ի զգուշացուցանել զնոսա յաղանդոյն Բարծումայի։ Իսկ սա ձեռամբ ածեալ զԹուղթն, որպէս և զայն զոր Բաբուէ գրեաց առ եպիսկոպոսունս արեւմտեայց և առ այլս արարեալ զայնս Պերոզի. բազում ինչ ստութեամբ խառնելով զՀայոց և զԲաբուայ հաւատոյ եթէ ապստամբել խորհիցին ի տէրութենէ, և Պերոզ եւս սպանանել զԲաբուէ. իսկ Հայոց ոչ ինչ կարաց Բարծումա հասուցանել չարիս այլ և ի բաց մերժեցաւ անտի սպառնալեօք Ներշապուհ իշխանին Արծրունւոյ. Թովմա Արծրունի, յեր. 88։ Տես և ի պատմութեան Միքայէլի Չամչեան, Հա. Բ. յեր. 152-155։

թեղայի առաքեաց յԷփեսոս։ Եւ գրեալ էր
'ի Թուղթն թէ՝ «Մի՛ մեղադրէք. զմեզ վասն
չգալոյս, զի ընդ իշխանութեամբ անօրինաց
կամք, և երկեաք եթէ պատճառս կարկա-
տեն 'ի վերայ մեր, և սուրն սպանող հարցն
մերոց գտցէ և զմեզ. այլ զոր ինչ սահմանէք
ուղիղ դաւանութիւն, հաւանիմք մեք։»
Եւ Թղթաբերքն առ գայլ Բարսումա եկին
'ի Մծբին, և տեսեալ զԹուղթն՝ էառ և
դարձոյց զնոսա և ասէ. «Ես տանիմ զԹուղ-
թըս, դուք դարձարուք և գնացէք զի մի
կարծիս լրտեսութեան տայք Հռովմայեցւո-
ցն։» Եւ Նոքա պարզմտութեամբ դարձան,
և ոչ մեղադրեաց Նոցա կաթողիկոսն, այլ ա-
սաց՝ «Բարիոք արարէք լսելով եղբօրն մերոյ։»

» Եւ յորժամ իմացաւ Բարսումա՝ թէ
Նզովեցաւ Նեստոր, բարկացաւ և գնաց առ
Թագաւորն Պարսից և ասէ ցնա. «Այր մի
'ի Կոստանդինուպօլիս, առաջնորդ եկեղեց-
ւոյ, խորհէր հանապազ բարիս առ Պարսիկս,
և արգելոյր զՀռոմայեցիսն ապստամբել 'ի
Պարսս, և վասն այսր պատճառի առաքե-
ցին զնա յաքսորս, և զսահմանեալն 'ի Նմա-
Նէ զկարգն խոտեցին և Նզովեցին։ Եւ կա-
թողիկոսս այս (Պաւլի) լրտես է առ ձեզ Հա-
յոց և Հոռոմոց, և ահա Թուղթս որ գը-
րեալ է զձեզ անօրէնս և արիւնաւէրս։»
Եւ հաւատաց Նմա Թագաւորն։ Եւ խընդ-

շացուցանել զնոսա յաղանդոյն Նեստորի և Քաղկեդոնացւոցն. «Քանզի գոմք մեք, ասէ, թուղթ՝ զորքոյն Մարութայի, եթէ որպէս շնորհօքն Աստուծոյ ապրեցայք ազգդ Հայոց ՚ի Բարսաւմայէ ապականչէ (1)։ Յորում թղթ-թի գրեալ կայր այսպէս, եթէ Բարսաւմա մի էր յաշակերտացն Նեստորի և կայր ՚ի Մծ-բին, և յորժամ լինէր ժողովն յԵփեսոս առ Թէոդոսիւ, ոչ գնաց Բարսաւմա ՚ի ժողովն, այլ ասաց՝ եթէ «Ես ընդ իշխանութեամբ Պաւեայ կաթողիկոսի եմ զոր ձեռնադրեալ են Հայք ՚ի Պարսից աշխարհնէդ։ Եւ զի առա-քեալ էին յԵփեսոսէ ՚ի Պարսս խնդրակս Պաւեայ և այլոց եպիսկոպոսացն որ ընդ ձե-ռամբ նորա էին, և Պաւլի գրեալ թուղթ ուղիղ դաւանութեան և ՚ի ձեռն երկու ա

(1) Այն է Բարծումա եդեսացի չերմ աշակերտն Նեստորի․ որոյ ունումն մոլար վարդապետութեանն հասեալ և ՚ի Հայս յաւուրս Քրիստափորի Ա գրեաց կաթողիկոսն առ Բաբուէ (Պաւլէ), որ էր կաթողիկոս քրիստոնէիցն որ ՚ի Պարսս և յայլ տեղիս, առ ՚ի զգուշացուցանել զնոսա յաղանդոյն Բարծումայի։ Իսկ սա զձեռամբ ածեալ զթուղթն, որպէս և զայն զոր Բաբուէ գրեաց առ եպիսկոպոսունս արեւմտեայց և առ այլս արարեալ զայնս Պերոզի, բազում ինչ ստութեամբ խօսելով զՀայոց և զԲաբուայ իբրու եթէ ապստամբել խորհիցին ՚ի տէրութենէ, և Պերոզ ետ սպանանել զԲաբուէ․ իսկ Հայոց ոչ ինչ կարաց Բարծումա հասուցանել չարիս այլ և ՚ի բաց մերժեցաւ անտի սպառնալեօք Ներշապուհ իշխանին Արծրունեաց․ Թովմա Արծրունի, յեր․ 88։ Տես և ՚ի պատմութեան Միքայէլի Չամչեան, հտ․ Բ․ յեր․ 152-153։

բեղայի առաքեաց յԷփեսոս։ Եւ գրեալ էր
'ի թուղթն թէ՝ «Մի՛ մեղադրէք զմեզ վասն
չգալոյս, զի ընդ իշխանութեամբ անօրինաց
կամք, և երկեաք եթէ պատճառս կարկա-
տեն 'ի վերայ մեր, և սուրն սպանող հարցն
մերոց գտցէ և զմեզ. այլ զոր ինչ սահմանէք
ուղիղ դաւանութիւն, հաւանիմք մեք։»
Եւ թղթաբերքն առ գայլ Բարսումա եկին
'ի Մծբին, և տեսեալ զթուղթն՝ էառ և
դարձոյց զնոսա և ասէ. «Ես տանիմ զթուղ-
թըս, դուք դարձարուք և գնացէք զի մի՛
կարծիս լրտեսութեան տայք Հոռոմայեցւո-
ցըն։» Եւ նոքա պարզմտութեամբ դարձան,
և ոչ մեղադրեաց նոցա կաթողիկոսն, այլ ա-
սաց՝ «Բարիոք արարէք լսելով եղբօրն մերոյ։»

»Եւ յորժամ իմացաւ Բարսումա՝ թէ
նզովեցաւ Նեստոր, բարկացաւ և գնաց առ
թագաւորն Պարսից և ասէ ցնա. «Այր մի
'ի Կոստանդնուպօլիս, առաջնորդ եկեղեց-
ւոյ, խորհէր հանապազ բարիս առ Պարսիկս,
և արգելոյր զՀոռոմայեցիսն ապստամբել 'ի
Պարսս, և վասն այսր պատճառի առաքե-
ցին զնա յաքսորս, և զսահմանեալսն 'ի նմա-
նէ զկարգն խոտեցին և նզովեցին։ Եւ կա-
թողիկոսս այս (Պաւլի) լրտես է առ ձեզ Հա-
յոց և Հոռոմոց, և ահա թուղթս որ գը-
րեալ է զձեզ անօրէնս և արիւնաւէրս։»
Եւ հաւատաց նմա թագաւորն։ Եւ խընդ-

բեաց 'ի նմանէ (Բարսումա) և ասէ. "Տուր ինձ իշխանութիւն 'ի վերայ ամենայն քրիստոնէից որ ընդ քո իշխանութեամբ են, զի հաստատեցից զկրօնս Նեստորի բարեկամի Պարսից, և յանհաւանելոցն ժողովեցից քեզ գանձս:" Եւ ետ նմա իշխանութիւն և զօրս: Եւ ասէ. "Տուր 'ի ձեռս իմ զկաթողիկոսս զայս:" Եւ ետ նմա հրաման առնել զոր ինչ կամի. և գնաց առ կաթողիկոսն և ասէ ցնա. "Դաւանեա զՆեստորին." և նա ասաց. "Լաւ այ որ նզովեցաւ Նեստոր, և եղիցի նզովեալ:" Եւ կորեաց զլեզու նորա: Եւ լուաւ Թագաւորն և արտմեցաւ, և կոչեաց զԲարսումա և ասէ. "Ընդէ՞ր արարեր զայն:" Եւ ասաց՝ "Զի հայհոյեաց զքեզ:" Եւ ասէ Թագաւորն. "Թէ այդպէս է, գնա և զգըլուխն այլ կորեա," և չոգաւ կորեաց:

"Եւ եկն 'ի Բաղդատ և հնազանդեաց Նեստորի զնոսա, և անտի գնաց 'ի Նինուէ. և կալաւ զՄարտիրոս արհի եպիսկոպոսն երկոտասան եպիսկոպոսօք և իննսուն երիցամբք և ասէ ցնոսա. "Կամ հաղորդեցէք զիս, կամ հաղորդեցարուք յինէն:" Եւ նոքա ասեն. "Ոչ տամք զսրբութիւն շան, և ոչ առնումք զսրբութիւն 'ի շանէ:" Եւ նա զայրացեալ սպան զքահանայսն և զեպիսկոպոսունսն, բերեալ 'ի Մծբին եդ 'ի բանտի 'ի տան Հրէի միում, և յետոյ քարկոծել ետ զօրացն, և

տայս կախեաց զփայտէ, և երևեցաւ նշան
երկնաւոր 'ի վերայ նոցա, և հաւատաց Հ-
րեայն և մկրտեցաւ ։ Եւ ել անտի և կամե-
ցաւ մտանել 'ի Հայք, և իմացեալ Հայոց
առաքեցին և հալածեցին զնա և սպառնա-
ցան նմա, թէ կրկնէ գալն՝ հրով մաշել ըզ-
նա և զզօրսն իւր ։ Եւ առաքեաց Մարութա
'ի Պարս, և գրեաց առ Թագաւորն՝ թէ ա-
պստամբեցին Հայք 'ի քէն ։ Եւ առաքեաց
Թագաւորն Պարսից 'ի Հայս առ զօրապետն՝
զի հրամանաւ Թագաւորին իւրեանց եկեա-
ցեն 'ի Պարս՝ թէ Թագաւորն ոչ կամեսցի
գալ. և առ Թագաւորն նոյնպէս գրեաց գալ
և պատասխանի առնել վասն հաւատոյ ։ Եւ
գրեաց Թագաւորն Հայոց պատասխանի և
ասէ. «Մեք քեզ վասն հաւատոյ չպարտիմք
ինչ, ոչ գալ և ոչ պատասխանել. բայց թէ
երթաս 'ի վերայ բարբարոսաց, մեք երիցամբք
և խաչիւ գամք. այս է քո երդումն և մերն։
Այս թէ ոչ կամիս կալ 'ի բանն քո, և ոչ
մեք կամք 'ի բանն մեր ։(1)» Եւ լռեաց Թա-
գաւորն ։

(1) Միխայէլ պատմագիր անգէտ թուի լինել պատմու-
թեան Հայոց, քանզի 'ի սմին՝ժամանակի, այն է՝ առ Պերո-
զիւ, մարզպանք կառավարէին զՀայս 'ի կողմանէ Պարսից,
և երևելի էր յայնժամ Վահան Մամիկոնեան. Դարձեալ
զպայման գաշինն եդեալ 'ի մէջ Պերոզի և նախարարացն Հա-
յոց. ոչ ուրեք գտանեմք առ պատմագիրս մեր աւանդեալ.
Պերոզ 'ի թախանձելոյ Աշուշայի Վրաց բդեշխի և Հռոմ.

«Եւ սուրն սատանայի և երկրորդ ջրհե-ղեղն աշխարհի այսու պատճառաւ ոչ եմուտ 'ի Հայս, այլ դարձաւ 'ի վերայ Յունաց վա-սըն բազում մեղաց մերոց։ Եւ արար երեք ժողով, 'ի Կատիզքոն, 'ի Գադրի, 'ի Գրաւ-միա, և գրեաց զանօրէնութեան (1) սահմանն Նեստորի՝ կանոնս։ Եւ զոչ հաւանեալսն սա-տակէր անողորմաբար, կամ նահատակիլ ար-ժան է ասել ճշմարտապէս՝ պայծառագոյն պսակաւ քան որ 'ի կռապաշտից կատարե-ցան։ Քանզի՝ որպէս լսեմ, եւթն հազար և ութ հարիւր եկեղեցական եպիսկոպոս և ե-րէց և սարկաւագ կատարեցան 'ի նմանէ, և աշխարհականացն թիւ ոչ գոյ. և վասն այ-սորիկ աղաչեմք զձեր որբութիւնդ, զի ըստ կարի երթայ 'ի ձէնջ բժիշկ ուր յաճախեաց հիւանդութիւնն, կատարելով զԱռաքելոյն թէ՝ "Դուք որ կարօղդ էք, զտկարութիւն տկարացն բարձէք." զի մի պակասեսցի ցո-րեանն սուրբ ամենեւին հեղձեալ յորոմանցն բազմութենէ։ Ողջունեմք զամենայն աթոռակիցս ձեր մերովք աթոռակցօքս։ Ողջ լերուք 'ի վէմն հաւատոյ ուղղափառութեան 'ի Տէր մեր Յիսուս Քրիստոս։»

Ի թուին Յունաց ՋԿԵ (965) և Հայոց

շապհոյ Պարսկի և այլոց միջնորդաց հետղհետէ եթող յա-զատութիւն զնախարարսն առանց թէութեան, յամի 466։

(1) Յօրինակին՝ զանօրէնութիւն։

ՂԲ (92)[1] *կրկին աւերեցաւ Կիպրոս 'ի Տաճկաց. զի լուան թէ դարձեալ ժողովեցան 'ի նա բնակիչք, և գնաց Նիլուր (Նիւ-էլ-Ճամուար) զօրագլուխն Տաճկաց (Արաբաց) և արար զնա գերանափոր և եղև ծակամուտ, և ինչ 'ի նմա ոչ եթող սատացուածս, բայց սակաւ մարդիկ, յորոց երդումն առեալ եթող անդ։ Իսկ Մաւի դնացեալ 'ի Ռոդոն կղզի և առ զնա և աւերեաց. և անտի գընացեալ 'ի Կրետէս, առ զնա փութանակի, նմանապէս և զՄարութ և զԿոս[2], որ են կըղզիք ամրագոյնք, առեալ և (եա) քակել զնոսա։ Իսկ 'ի Ռոդոս կղզի տեսեալ պղնձակերպն այնձի մարդակերպ, որ մի էր յեւթն հրաշիցն, զոր քաղում պարանօք և նգօք շրջեցին. և գտաւ չափ երկայնութեան նորա հարիւր և հինգ ոտըն, և վառեալ 'ի ներքոյ հուր՝ թուլացան շամփուրքն և քակեցին և կապեցին երեք հազար բեռն. և գնեաց զնոսա Հրեայ մի 'ի Հեմսայ։*

*Յայսմ ժամանակի եղեւ սով սաստիկ, մինչև կերան և ընդ այլ գարշելիս՝ զմիմեանս։ Եւ 'ի Գերմանիկէ, որ է Մարաշ, այր մի անունն Եղիշէ՝ բնակէր յայրի մի, և զկնի սո-*

(1) 965 *թուն Ասորւոց պատասխանէ* 102 *թուոյն Հայոց։*

(2) *Մարութ է Արադոս կղզին, և Կոս է Կով կղզի յիշատակեալն 'ի Գործս Առաքելոց (ԳԼ. ԻԱ. 1), որ 'ի Տաճկաց կոչի Գուշ ադասը։*

վայն ոչ եԹող զանօրէնութիւնն , այլ գողա-
նայր մանկունս և ուտէր . և կարծէին զնա
մինակեաց , և ինքն մխիթարէր զծնողսն ման-
կանցն . և յետ ուտելոյ նորա յիսուն և մէկ
մանկունս , յայտնեցաւ և կախեցաւ ։ Եւ 'ի
սոյն ժամանակս հողմ ուժգին հիւսիսային ե-
կեալ փլոյց բազում եկեղեցիս և բրգունս
բազում , և քակեաց անտառս բազումս ։

Եւ յաւուրս Կոստանդեայ որդւոյ Հե-
րակլեայ երեւեցաւ այր մի 'ի Կոստանդինու-
պօլիս Մաքսիմոս անուն , որ խօսեցաւ հեր-
ձուածս 'ի Քրիստոս՝ երկուս կամս և երկուս
ներգործութիւնս , և ոչ ընդունեցաւ , բայց
'ի Հռոմ ոչ արհամարհեցաւ յորժամ լուան[1] ։
Իսկ յայսմ ժամանակիս յաւուրս Կոստանդի Թո-
ռինն Հերակլեայ , 'ի Կոմանա Հայոց կոմս մի
անուն Թէոդորէ խնդրեաց 'ի պապէն Հռո-
մայ , որում անուն էր Ագաթոն , զի վասն այ-
սորիկ արասցէ քննութիւն , զի չչնջեն աստ
ոմանք վասն երկու կամաց և երկու ներգոր-
ծութեանց ։ Եւ Ագաթոն արարեալ ժողով

(1) Մաքսիմոս էր երէց վանացն Խրիսոպօլսոյ , որ խօս-
տովանէր 'ի Քրիստոս երկուս կամս , վասն որոյ 'ի ժողովէ
ուրեք գումարելոյ 'ի Կոստանդինուպօլիս յամի 675 , դատա-
պարտեցաւ և աքսորեցաւ 'ի Լազիկէ ։ Զկնի հնգից ամաց
(680) եղեւ ժողովն Կոստանդինուպօլսի , յորում որոշակի
ընկալան դաւանել 'ի Քրիստոս երկուս կամս և երկուս ներ-
գործութիւնս ըստ երկուց բնութեանցն , և դատապարտե-
ցին զմիակամսդաւանսն ։

հաստատեաց զհաւատն Մաքսիմոսի, յետ հա-
րիւր քսան և հինգ ամի ժողովոյն Քաղկեդոնի,
զի ասացին թէ՝ բնութեանն յատուկ կամք
գիտէ և ներգործութիւն, և զայս ոչ զգացին
յիմարեալքն այն, թէ և անձն այլ գիտէ ա-
ռանձինն և յատուկ՝ որ է Նեստորին [1].

Ի թուին Ասորւոց ՋԿԶ (966) և Հայոց
ՂԸ (98), և յերեսուն և եւթն ամի Հերակլեայ
բռնակալութեանն, և 'ի սոյն ամի Կոստասի
և յինն ամի Օթմանայ, Մաւիի զօրականն կազ-
մեալ եռ 'ի Տրապոլիս յոյժ բազմութիւն նա-
ւաց՝ երթալ 'ի Կոստանդինուպօլիս։ Եւ էին
ընդ վերակացուսն երկու եղբարք՝ որդիք հա-
ւատացելոյ, (որք) հանին զ[illegible]րանդ ծառայսն
որ կային անդ, և սպանին զամենայն զզօրսն
և այրեցին զնաւսն առհասարակ, և ինքեանք
երեքեանք 'ի մի նաւոյն՝ գնացին 'ի Հռոմ [2].
Եւ զայս լուեալ Մաւեայ՝ արար այլ պատ-
րաստութիւնս նաւաց, և կազմեաց զօրս և
ետ 'ի ձեռն Սպուլղուրի (Սպուլ-Էլ-Հավուար)
երթեալ 'ի Կոստանդինուպօլիս։ Եւ զայս լու-
եալ Կոստասի, եկն 'ի Փիւնիկէ, որ է Սքայ[3]

(1) Այս ժողով եղեւ յաւուրս Կոստանդեայ Պողոնա-
տոսի յամի 680. այն է զկնի երկերիւր քսան և հինգ ամաց ժո-
ղովոյն Քաղկեդոնի, զոր թերեւս թարգմանիչք սխալեալ են։

(2) Սեբէոս. յեր. 185 — Ստեփան Ասողիկ. յեր. 123—
124։ — Վարդան. յեր. 98։

(3) Բառս՝ որ է Ասոյ յաւելեալ թուի 'ի Թարգմանչէն.
զի ոչ 'ի Պտղոմեայս եկն կայսրն, այլ մերձ 'ի լեառն Ոլիմ-
պիոս որ և կոչի Փիւնիկ, մերձ 'ի Պրուսա քաղաք։

և էր ընդ նմա Թէոդոսիէ եղբայր իւր բազմութեամբ նաւաց ընդ ծով եկեալ։ Եւ յորժամ դիմացին Հագարացիքն, առեալ զնաւսն եկին ընդդէմ նոցա. և յայնմ գիշերի որ վաղիւն լինելոց էր մարտն, կոչեաց Կոստաս Թագաւորն երազահան. և ասէ. «Տեսանէի զիս յերազի 'ի Թեսաղոնիկէ։» Եւ ասէ երազահանն. «Աւա՛ղ թէ չէիր ննջել, ոչ զքեզ յայն տեղին տեսեալ. զի Թեսաղոնիկէ յաղթութիւն այլոց Թագաւորի(1)։» Եւ արհամարհեաց ըզ-բանս նորա Թագաւորն, և եղեւ պատերազմ 'ի վերայ ծովուն սաստկագոյնս՝ մինչեւ փոշին որպէս 'ի ցամաքի պղտորէր զօդն, և յաղթեցաւ Կոստաս. և հազիւ զերծաւ սակաւուք. և Թիւ անկելոցն զօրաց գտին յեզր ծովուն՝ քան երեք հազար արանց։ Եւ կամեցան գնալ Հագարացիքն 'ի Կոստանդնուպօլիս և եկին Պողոմէոս հրամանաւ Թագաւորին և խոստացաւ տալ հարկս և սակս, և գնացին Հագարացիքն յերկիրն Ասորւոց. և եկին Պողոմէոս և եգեր հարկս երեք տարւոյ, և Գրիգոր զորդին իւր պատանդ, և գնաց(2)։

Եւ Կոստաս վասն երկեղի Թագաւորելոյ՝

(1) Թեսաղոնիկէ նշանակէ ըստ Յունաց Այլոցյաղթ. այսպէս կոչեաց զայն Փիլիպպոս արքայ Մակեդոնացւոց յանունն զնա յաղթութեանն։

(2) Սեբէոս (յեր. 185—186), և այլ պատմագիրք Հայոց Գուսկայ. կոչէն զՊողոմէոս զօրավարն Յունաց, որ հաշտեցաւ ընդ Մաւեայ զօրավարին հաշտութեամբ 'ի Դամասկոս

սպան զեղբայր իւր Թէոդոսիէ, և եղեւ ա-տեցեալ յամենեցունց, և գնաց ՚ի Հռոմ. և կոչէին զնա ՚ի Հռոմայ ՚ի Կոստանդինու-պօլիս։ Եւ եկեալ ՚ի Հռոմայ՝ եկն ՚ի Սիկի-լիաս. և հաճեցաւ ընդ տեղին, և առա-քեաց կոչեաց զորդին, և ոչ ետուն զօրքն, այլ արարին զնոսա Եւտուկարատոր՝ զԿոստանդ-դիոս, զՏիբերիոս, զՀերակլ, և նստան ՚ի Կոստանդինուպօլիս և թագաւորն ոչ իշխեաց ելանել ՚ի Սիկիլիոյ. զի լսէր թէ կոչէն զնա զօրքն երկրորդ Կային՝ սպանող եղբօրն։

Եւ յայսմ ժամանակի սպանաւ Օթման թագաւորն Տաճկաց յԱթրապ քաղաքի վասն պիղծ գործոց, և պատառեցաւ իշխանու-թիւնն յերկուս; ՚ի Բաբելոն և յԵգիպտոս։ Ալի՝ փեսայ Մահմետի թագաւորեաց ՚ի Բա-բելոն և յԱսորիս, և յԵգիպտոս Մաւի թա-գաւորեաց։ Եւ փոխեալ Մաւի զթագաւո-րութիւնն յԱթրապոյ ՚ի Դամասկոս, և թա-գաւորեաց ամս քսան։ Եւ զկնի եւթն ամի խաղաղութեանն գնաց Մաւի և աւերեաց զԳաղատիա և զԱսիա և զԲիւթանիա։

Եւ ՚ի սոյն ժամանակս սպան Անդրէ սպարա-պետեալ զԿոստաս ՚ի Սիռամի(1), ՚ի ժամ բաղա-նեաց լցեալ զգլուխն սապոնաւ, և ՚ի փակել աչացն՝ եհար դանակաւ և մեռաւ, և թա-

(1) Կոստաս որ և Կոստանդին, սպանաւ ՚ի Սիրակուսա քա-ղաքի Սիկիլիոյ և ոչ ՚ի Սիռամի.

գաւառեցուցին զպատրիկ մի Հայ ազգաւ, Անժէժ անուն, և էր բարեպաշտօն։ Իսկ որդին Կոստասայ Կոստանդին զօր ժողովեալ՝ սպան զԱնժէժ և ինքն թագաւորեաց ընդ եղբարս իւր։

Եւ 'ի սկիզբն թագաւորութեան նորա պեքեցան Աֆրիկէ 'ի Տաճկաց ութսուն հազար անձինք, և դարձեալ եկին Տաճիկքն 'ի Լիւկիա (1) և կոտորեցան 'ի Յունաց երեսուն հազար անձինք, և այս էր առաջին պարտութիւն նոցա։

Յայսմ ամի այր մի 'ի Բաղբաքոյ Կալանիկէ անուն, Ասորի ազգաւ, առաջին խնդրող ըզՆափտն (2), և այրեաց զնաւսն 'ի վերայ ծովուն՝ լցեալ զօրօք Տաճկաց։ Եւ յայսմ ժամանակի երեւեցաւ ծիածանդ զբոլանդակ գիշեր մի լի երկնիւք՝ բոլորեալ և պարապարեալ զգունովն երկնից, և զարհուրեցան ամենայն աշխարհ։

Ի յիննս ամի Կոստանդինայ ելին 'ի Յունաց զօրք և բնակեցան 'ի լեառն Լիբանանու և կոչեցան ապստամբք, և Ասորիք կոչեցին ըզնոսա Մուռտանք. և առին 'ի Լիբանանու

(1) Միւս թարգմանութիւնն ունի Կիլիկիա, բայց մեզ կարծի թէ իցէ Լիւկիա գաւառ յարեւմտից Փռիւգիոյ։

(2) Նափտն է նաւթ, այլ աստ կամի նշանակել զլուսական հուրն. այս մեղուք ե. 'ի մէջ ջրոյ, որով Յոյնք յաղթող զտանէին 'ի ծովամարտս՝ այրելով զնաւս Թշնամեաց։

ըռնեցին՝ մինչեւ 'ի մեռանել ըռամնն . եւ Թուի Թէ՝ այսու պատճառաւ կոչին Վրացիք Ճ՛ուռ-ճանք(1), զի ապստամբեցին 'ի Հայոց. ծառայութենէ եւ 'ի հաւատակցութենէ։ Եւ եկին Տաճիկք եւ ընձեցին զապստամբսն։

Եւ յայսմ ամի Յովհաննէս որդին Մէժէ-ժայ հալածեաց զկաթողիկոսն զեւթն ամիս վասն սպանութեան հօրն, եւ ապա սպանաւ եւ ինքն։ Եւ Հայաստանեաց կաթողիկոսն յաջո-րդութեամբն, եւ արհամարհեաց զերկոսին զեղբարսն եւ ընկէց 'ի թագաւորութենէ. եւ իշխանն Ներսէս ասաց ցնա. «Ոչ տամ քեզ միայն թագաւորել։» Եւ նա կալաւ զնոսա կու-րացոյց զզօրսն եւ կորեալ եւս զեղբայրն եւ զծեռան եւ զատն Ներսեհի։ Եւ եղեւ նմա որդի եւ կո-չեաց Յուստինէ։

Եւ զկնի Մաւեայ թագաւորեաց Տաճ-կաց Եզիդ որդի նորա՝ ամս երեք եւ ամիսս վեց, եւ մեռաւ։ Եւ ապստամբեաց Մուխ-թառ 'ի Նաքիլան, այր կեղծաւոր եւ սուտ որ ասէր զինքն առաքեալ եւ մարգարէ. եւ 'ի [illegible] թ-բար թագաւորեաց Աբդլա(2). Եւ 'ի Դա-

(1) Վիրք առ Եւրոպացիս կոչին Ճիորճիանս . եւ առ Մահմետականս Կիւրճիւ. իսկ Վրացիք կոչեն զինքեանս Քար-թուէլի, եւ բնակ 'ի Քարթլոս բանէն, որ համարի առաջին նա-խահայր իւրեանց։

(2) Մուխթար որդի էր Աբու—Օբէիտայ. եւ տիրեաց Քուֆայ յամի 685. իսկ Աբդլա էր որդի Զուպէիրայ, որ էր խալիֆայ Մեքքէի։

մատկաս զորդին Եզիտայ խորհեցան դնել թա-
գաւոր. և եղեն պատերազմունք, և այր մի
ծեր յԱթրաքոյ(1) անկեալ ՚ի մէջ նոցա աղա-
չէր խաղաղանալ. և ետ նոցա խրատ՝ ՚ի յե-
րեք նետս գրել երեք մարդոյ անուն, և իջէ
յերկիցն մի՝ ինքն, և ձգել ընետան ՚ի գետինն
(և) տայցեն առնուլ զնոցանէ զմինն տղայս մի,
և որոյ նետն առցի՝ այն թագաւորէ։ Եւ եղ
վիճակն ինքեան՝ և թագաւորեաց, որ և յետ
ամի միոյ մեռաւ։ Եւ դարձեալ բաժանե-
ցան ; բայց թագաւորեաց Աբդլմլք որդին
Մրուանայ։ Եւ յայսմ ամի մեռաւ Կոստան-
դին և թագաւորեաց Յուստինիանոս որդի
նորա։ Իսկ Աբդլմլքն նեղեալ յապստամբա-
ցըն՝ արար սէր ընդ Յուստինիանոս ամս տասն,
և խոստացաւ նմա տալ յամենայն ամի հա-
զար դահեկան և ձի մի և ծառայ մի, և Կիպ-
րոս տացէ հարկ Տաճկաց և Յունաց։ Եւ
Հայք ձեռն ետուն ՚ի Յոյնս Եւ զի երկրորդ
անգամ բնակեցան ՚ի Լիբանան երկոտասան
հազար ապստամբք, հանեին զնոսա Հռոմա-
յեցիք և տարան ՚ի Հռոմ(2)։

(1) Այն է Մրուան որդին Հաքեմայ. որ եւ յիշխանութիւն խալիֆայութեան յամի 684։

(2) Աբդ—էլ—Մէլէք որդին Մրուանայ նեղեալ յապըստամբացն որ ՚ի Լիբանան լերին ՚ի Մարդայիտաց. զորս Միքէլ (յեր. 216) Մարդոյեք անուանէ. անեալ և դյաղողուածս Յունաց. կըռւէ դուշն խաղաղութեան ընդ Յուստինիանոսի Բ։ Աբդ—էլ—Մէլէք յանձն առնու հարկանել նմա

Ի սոյն ժամանակս էր սուրբ վարդապետն Յակոբ Ուռհայեցին 'ի գաւառէն Անտիոքայ, որ ուսաւ լեզու և գիր յունարէն. և եբրայեցերէն, որ գնաց և եմուտ 'ի պատճառաւ ընդ հրէութեանն, և թարգմանեաց զծածուկն Հրէից յասորի լեզու: Եւ արար մեկնութիւնս բազում գրոց, և եղեւ եպիսկոպոս Ուռհայոյ, և կատարեաց զկեանս իւր յերկիրն Պէտնոյ, 'ի վանսն որ կոչի սուրբ Յակոբայ:

Իսկ Աբդլայն հնազանդեաց զապստամբսըն: Եւ 'ի ժամանակին յայնմիկ գերեաց Յուստինիանոս զԿիպրոս. և եղեւ շփոթ ընդ միջամտանս Պարսից (Արաբաց) և Հոռոմոց: Եւ առաքեաց զՄահմետ Աբդլայն՝ զամիրայն Գ զօրօք յերկիր[1] Հոռոմայեցւոց 'ի Կեսարիա: Եւ Հոռոմք 'ի վարձու առեալ զՄրդաւսն, եկին պատերազմել ընդ Մահմետ, և կոտո-

ամ յամէ հազար դահեկան ոսկի, նժոյգ մի և ծառայ մի, և Յուստինիանոս շնորհէ Ամիրային զկէս հարկացն Կիպրոսի, երկրին Հայոց և Վրաց. նոյնպէս յանձն առնու կայսրն ապատել զԱրաբացիս յարշաւանացն Մարդայիտաց, ընդ որս անդադար 'ի կռուի կային ձեռնտուութեամբ Հայոց, որոց զօրավարէր Թէոդորոս Ռշտունի՝ ըստ պատմելոյ Սեբէոսի, և 'ի լրումն այսր յօդուածոյ դաշինն Յուստինիանոս 'ի բաց հանեալ 'ի Լիբանանէ երկոտասան հազարս յասպատակացն Մարդայիտաց, ցրուէ զնոսա 'ի Հայս, 'ի Պամփիլիա և 'ի Թրակիա:

(1) Այս Մահմետ էր որդի Մրուանայ եղբօր Աբդ—ըլ—Մէլէք ամիրային, որ յամէ 692—708 կառավարեաց ընդ Միջագետս, զՀայս և զԱտրպատական:

րեցան Հռոմայեցիք . և մնացեալ Սկլաւքն եղեն ընդ Տաճկաց՝ եւթն հազար անձինք . և եղին զնոսա Տաճիկքն յԱնտաք և 'ի Կիւրոս (1) տուեալ նոցա կանայս և ապրանս :

Ի ՌԶ (1006) Թուին Ասորւոց և 'ի ՃԼԳ (133) Թուին Հայոց եկին Հռոմայեցիքն յերկիրն Անտաքիոյ պատերազմել ընդ Տաճկաց , և կորեան 'ի նոցանէ բազումք , և մնացեալքն 'ի նոցանէ փախեան . բայց և յերկոցունց կողմանցն անկան բազումք զառաջինն , և ապա յաղթեցան Հռոմայեցիք . և Թիւ սպանելոցն յերկոցուն կողմանցն գտաւ քառասուն բիւր , յերրեքն Ապրիլ ամսոյ , և տեղի պատերազմին Պուշլերիքն , ուր մինչեւ ցայսօր երեւին ոսկերքն 'ի հերկել անդաստանացն :

Ի յեւթանասուն և հինգ ամին իւրեանց Տաճկունք բարձին զպատկերս 'ի դրամէ և 'ի դահեկանէ , և չհնեցին միայն գրով առանց պատկերի դահեկանս և դրամս և փող՝ վասն նախատանաց պատկերապաշտութեան : Ի սոյն ժամանակս Յուստինիանոս խստացեալ սպան զբազումս յիշխանացն և 'ի զօրացն , և զայրացեալ կալան զնա և կտրեցին զքիթն և եդին 'ի բանտի , և Թագաւորեցուցին զոմն Լեւոն անուն (2) : Իսկ Տիփիմերոս (Աբսիմարոս) զօրապետն որ էր 'ի Կիւլիկիա , եկն և

(1) Կուրիս քաղաք է 'ի սահմանս Եփրատացւոց :
(2) Ղեւոնդ . Գլ. Ե . յեր . 37 :

եհան զԼեւան և ինքն թագաւորեաց. և սա հնազանդեցոյց զՍկլաւան. և սա եկեալ ՚ի վերայ Տաճկաց յերկիրն Սամիրան, և առաւ ՚ի նոցանէ հինգ հազար այր, և ածեալ աւար և գերի՝ դարձաւ:

Իսկ Աբդլա(1) կացոյց երկու զօրավարս, զՄահմէտ և զՃաջաջ, որք անողորմաբար կային և վարէին զիշխանութիւնն. Այս Մահմէտ նենգիւ ժողովեաց զազատազունսն Հայոց ՚ի Նախիջաւան, և ջանաց դարձուցանել ՚ի կրօնս իւր. և յոչ հաւանելն նոցա, ածեալ ՚ի մեծ եկեղեցին՝ հրով այրեաց զնոսա(2): Յայսմ ժամանակի զօրացաւ իմաստութեամբ և աստուածպաշտութեամբ այր մի ՚ի յՈւռհա՝ Աթանաս անուն, որդի Գումայի, և տարան զնա առ Աբդլն և մեծարեաց զնա, և եդ ՚ի տան թագաւորութեան իւրոյ մատակարար և վերակացու տան և ամենայն ընչից իւրոց. և տայր նմա յամենայն ամի վաթսուն հազար դահեկան, և թիւ զօրացն տային նըմա ամէն մին՝ դահեկան մի ՚ի տարին: Եւ սա արար բազում դիւրութիւնս քրիստոնէից ուղղափառաց: Եւ սա շինեաց յՈւռհա երկուս եկեղեցիս, զմինն յանուն Աստուածած-

(1) Կոչի սա և Աբդ—ըլ—Մելիք:

(2) Ղեւոնդ. Գլ. Զ. յեր. 56:—Ստեփ. Ասողիկ, Գիրք Բ. Գլ. Դ. յեր. 127:—Յովհ. Կաթ. Գլ. ԻԱ. յեր. 125.—Սամուէլ:—Վարդան, յեր. 99:—Կիրակոս, յեր. 37.

Այս 'ի սոյն ամի եւ Յուստինիանոս 'ի բանտէն զկնի տասն ամի արգելմանն, եւ գնաց առ Խաքան թագաւորն Խազրաց. եւ նա խնդութեամբ ընկալաւ զնա, եւ ետ զդուստր իւր նմա 'ի կնութիւն. եւ ձեռն ետ 'ի Բուլղարսն, եւ եկն 'ի Կոստանդնուպօլիս եւ Ապսիմրոս (Տիբերիոս) փախեաւ, եւ զԼեւոնտիոսն եւ զքաղաքամն կոտորեաց յարքունեաց եւ զայլսն աքսորեաց, եւ առաք զարքունիսն դատարկս. եւ դարձեալ վեց հազար Տաճիկ գերի ազատեաց գնալ խաղաղութեամբ։ Այս բազում զօրս առաքեաց 'ի խնդիր կնոջն եւ խեղդեցան յալիս ծովուն. եւ լուեալ Խաքան տրտմեցաւ եւ առաքեաց մեղադրեաց նմա եւ ասէ. «Անմիտ, ընդէ՞ր բազմութիւն զօրաց առաքեալ 'ի խնդիր կնոջ քո. կարծէի՞ր թէ արգելուլ կամիմ. արդ առաքեա սակաւ եւ առ զնա։» Այս լուեալ ուրախացաւ, եւ ա-

թեամբ հօրն մարեաց եւ զպաշտօն զօրավարութեանն, նոյնպէս եւ եղբարցն Վրթայ եւ Սիւլէյմանայ։ Ղեւոնդ գրէ, թէ Սիւլէյման յորժամ փոխանորդեաց զիշխանութիւնն, առաքեաց զՄսլիմ զօրավար 'ի դրունս Կասբից 'ի Դարբանդ (Գլ. Զ. յեր. 64)։ Յովհաննէս կաթողիկոս ('ի պատմութեան Գլ. ԻԱ. յեր. 126). Վթալիման անուանէ, եթէ չիցէ խանգարեալ յօրինակչաց, զոր մարթ է ընթեռնուլ Մսլիման եւ Սուլէյման. բայց յետինն ուղղագոյն երեւի, քանզի յաջորդ գնէ զնա Վլիթայ Ցես եւ 'ի Մովսէս Կաղանկատուացւոյ (Հա. Բ. յեր. 48)—Ասողիկ (յեր. 126), որ գրէ համառօտ Ղեւոնդեայ։—Իսկ Կիրակոս (յեր. 37. տպագ. Մոսկուայ.) Սուլէյման, ասէ, առ զԴարբանդ։

առաքեաց ևեթ զկինն իւր և զորդին Տիբե-րիոս (1) ։

Ի Թուին Ասորւոց ՌԺԵ (1015) և Հայոց ՃԾԲ (152) (2) և շինեաց Մսլիմն զՄամուեստիա ընդարձակ՝ բարձր և ամուր պարսպով, և կացոյց 'ի նմա զօրս՝ կալ ընդդէմ Հռոմայե-ցւոցն ։ Եւ 'ի սոյն ամի մեռաւ Աբդլմէլիքն և Թագաւորեաց Վլիթ ամս ինն և ամիսս հինգ ։ Յայսմ ժամանակի հալածեաց Յուս-տինիանոս զազգս Հայոց յիշխանութենէն իւր 'ի ձեռն Փիլիպիկոսի, և խնդութեամբ ըն-կալան զնոսա Տաճիկք 'ի Մելտինի և 'ի Մի-ջագետս ։ Եւ եղեւ մեծ ամբոխութիւն ուղ-ղափառաց Ասորւոց՝ կալով ընդդէմ Երկա-բնակացն, և շինեցան վանորայք և անա-պատք և գիւղորէք Հայաստանեայց, և կան մինչեւ ցայսօր ։

Իսկ անօրէնն Մահմէտ յարոյց սաստիկ հալածանս հաւատացեալ Արաբկացն, և ըմ

(1) Յուստինիանոս փախուցեալ առ Թագաւորն խազ-րաց, ամուսնացաւ ընդ քուեր նորա Թէոդորայ, յորմէ ե-ղեւ Տիբերիոս ։ Իսկ Աբսիմար երկնչեցեալ 'ի նիզակակցու-թենէ նոցա, խորհեցաւ կաշառել զԹագաւորն խազրաց առ 'ի սպանանել զՅուստինիանոս, որոյ իմացեալ փախեաւ առ Բուլղարս, և առեալ 'ի նոցանէ յօգնականութիւն հնգե-տասան հազար զօրս, դիմեաց 'ի վերայ Կոստանդնուպօլսի և առ զայն. (Թէոփանէս, յեր. 312—Նիկեփոր, յեր. 27)։ Ղեւոնդ՝ Խազրաց զօրօքն. առէ, եկեալ և տիրեալ Կոստանդ-նուպօլսի. յեր. 38 ։

(2) Յօրինակին ՃԽԴ ։

բռնեաց զգլխաւորն նոցա և չարչարեաց ազգի ազգի հարուածովք վասն հաւատոյ և սպան զնա, և ձգեցաւ մարմին նորա զաւուրս երեսուն, և ոչ հոտեցաւ և ոչ մերձեցաւ թռչուն և ոչ գազան, և յամօթ եղեւ Մահմէտ։ Եւ հաստատեցան քրիստոնեայքն ի մեռանելն նահատակութեամբ վասն անուանն Քրիստոսի՝ բազմութիւն յոյժ. և նա անխնայ կոտորէր։

Ի սոյն ժամանակս գնաց Մսլիմ յերկիրն Կապադովկացւոց և սպանին ի Հռոմայեցւոց քառասուն հազար անձինս ի զօրացն Յուստինեանոյ. և առին զՏօնա (Տիանա) քաղաք և առ Մսլիմ զՏարանդա, և եկեալ ի Կիլիկիա առ զԱձնոմ և զՊաւտանդա, և այլ բազում քաղաքս. և զօրն Տաճկաց կայր ի Տարանդա յայնմ հետէ։ Իսկ Փիլիպիկոս սպանեալ զՅուստինիանոս և զՏիբերիոս որդի նորա, և թագաւորեաց ինքն։ Եւ ի սոյն աւուրս եղ հրաման ի Վալթայ՝ զքրիստոնեայս ածել յեկեղեցի և սպանանել՝ եթէ ոչ ուրանան ի հաւատոց. և անթիւ կոտորեցան ի հրամանէ նորա ի Քրիստոս հաւատացեալք։ Եւ Փիլիկոսս (Փիլիպիկոս) թագաւոր վարժեալ էր գրովք արքովք, այլ և արտաքնոցն եւս. սա ջանաց և արհամարհեաց զվեցերորդ ժողովն զաւանդն Մաքսիմոսի, և ոչ կամեցան խմորեալքն յաղանդն։ Ի սոյն ժամա-

նակս առ Մսլիմ զԱմասիա, և առին զԱնտիոք Պիսիդեայ. և յետ երկու ամին թագաւորե-լոյ Փիլիկոսի, հանին զաչս նորա և աքսորե-ցին. և թագաւորեաց Անաստաս ամս երկու։ Եւ մեռաւ Վլիթ և թագաւորեաց Սուլէյ-ման ամս երկու։ Եւ 'ի սոյն ամի առ Մսլիմ զերկիրն Գաղատացւոց և զԵրգամն որ 'ի նմա։ Եւ առաքեաց Անաստաս զօր 'ի կողմն արեւ-մտից, որ և ամփոփեալք սպանին զօրագլուխն իւրեանց. և թագաւորեցուցին զԹէոդո-սիէ, և փախեաւ Անաստաս 'ի Նիկիա։

Եւ Մսլիմ գնաց յերկիրն Թուրքաց և դարձաւ բազում աւարաւ. և գնաց 'ի վերայ Ասիոյ և առ զԱրաքմիա (Պերգամոն) և զՍարդիա և գերեաց։ Եւ հպարտացեալ Մսլիմ և ժողո-վեալ երկու հարիւր հազար հեծեալս և հինգ հազար նաւ լի սպառազինօք, և առ ընդ իւր այլ եւս երկոտասան հազար զօր 'ի Բուլղա-րաց, և վեց հազար ուղտ և վեց հազար էշ բարձեալ կերակրօք եւ պատրաստութիւն բազում ամաց. և եդ զօրագլուխ զՍմառ և երդուաւ քակել զԿոստանդնուպօլիս. և կային ընդ նմա զեհիդք (1) երեսուն հազար. և եղեն երկու բանակքն ընդ ծով և միւսն ընդ ցամաք։ Եւ Լեւոն զօրագլուխն Թէո-դոսի (2) եկն առ Մսլիմ և եդ ընդ նա ուխտ

(1) Զեհիտ նշանակէ սուր` կամաւոր զինուոր։

(2) Թէոդոսի, ընթերցիր Թէոդոսեայ։ Մատենադարանք

Ամլիմ. որ թէ առնու զքաղաքն, զնա գտցէ Թագաւոր. և եմուտ (Լեւոն)՝ի Կոստանդինուպօլիս։ Եւ Տաճկունք ընդ որ պատառ և ընդ քաղաք անցանէին, տային բան խաղաղութե։ Եւ ինքն Սուլէյման Թագաւորն եկն զկնի նոցա երկոտասան հազարաւ, և նստաւ 'ի Նիկիա, և ողարկեաց զնա։ Իսկ Թագաւորն Թէոդոսիոս իմացաւ զասուտն Լեւոնի, և կալաւ զընտանիս նորա և արկ 'ի յարգելս. և Լեւոն փախեաւ և եկն առ Սուլիման, և առ վեց հազար հեծեալ իջաւ 'ի վերայ Ամորին(1) և ասաց ընդ քաղաքն գաղտ երդմամբ թէ՝ «Նենգութեամբ շրջիմ ընդ սոցա։» Եւ նոքա գնացին բերին զընտանիսն և ետուն ցնա. և սկսան գնալ 'ի Կոստանդինուպօլիս երկոքեան կողմանքն. և 'ի յառաջանալն նոցա՝ ելին զօրք քաղաքին ընդ առաջ Լեւոնի եւ հնազանդեցան նմա, և տուին 'ի ձեռս նորա զորդին Թէոդոսի և քարոզեցին Թագաւոր, և դարձան 'ի քաղաքն։ Եւ լուաւ Թէոդոս և գերծեաց զգլուխն և եղև եկեղեցական։

Եւ Լեւոն Թագաւորեաց, և լուեալ Սուլիման խնդաց՝ կարծելով թէ տայ զքա-

ԺԱ. ԺԲ դարուց [illegible] անուանեալ միջնադարեան [illegible] 'ի ն. 'ի գործ ածէին և փոխանակ [illegible]. 'ի [illegible] էոյ [illegible]նկան [illegible] Պաղեստինէ, Խորիանէ. առ. որս մեք յաւելումք [illegible] զատուն է։

(1) Ամուր կամ Ամորիոն կամ Ամուրիա է քաղաք 'ի Գաղատիա.

ղաքն 'ի ձեռս նորա . և նա սկսաւ խաբել
զնա բանիւք , և ամրութիւն տանէր քաղա-
քին . և գիտաց Սուլիմ՝ թէ խաբէ զնա , է-
անց 'ի միւս կողմն և զօրքն երթային առաջի ,
և ինքն չորս հազարօք զկնի , և ելին 'ի վերայ
նորա Բուլղարք փարձաւորք և կոտորեցին
զչորս հազարսն , և զերծաւ Սուլիմ , և էանց
'ի միւս բանակն . և բախեցին զօրքն Տաճկաց
յարեւմտից կողմն քաղաքին հանդէպ Ոսկի
Դրանն . և կային 'ի ծովու կողմանէն երեսուն
հազար արանց որ պահէին զնաւսն , և քսան
հազար պահէին 'ի Բուլղարաց կողմանէ , և
պատերազմէին 'ի ծովէ և 'ի ցամաքէ ընդ
քաղաքին . և ելեալ Բուլղարք յոլովս կոտո-
րեցին 'ի Տաճկաց : Եւ երկեան Տաճիկքն
զի եհաս ձմեռնն , և էառ զնոսա տարակոյս
ահի 'ի ծովէն և 'ի Բուլղարացն և 'ի քա-
ղաքէն . և եղեւ սով 'ի Տաճիկսն որ ուտէին
զաղբ և ըմպէին զմէզ իւրեանց : Եւ մինչ
յայս նեղութիւնս կային , մեռաւ Սուլիման
թագաւորն Տաճկաց , և առ զթագաւորու-
թիւնն Ումար , և առաքեաց առ Սուլիմն թո-
ղուլ զքաղաքն և երթալ . և դարձաւ սա-
կաւուք և այլքն ընկեցան սովով : Եւ յայնմ
հետէ Ումար(1) սկսաւ նեղել զքրիստոնեայսն
վասն քինու՝ թէ զօրք նորա անկան (ընկեցան)

(1) Միւս թարգմանութիւնն Մոսկովայ ասէ. նեղել զքրիստոնեայս 'ի վրէժ քինու սպանման զօրաց իւրոց :

'ի պատճառս նոցա, և ջանայր դարձուցանել 'ի կրօնս իւր:

Եւ յայսմ ժամանակի այր մի Սեւերոս անուն, Ասորի ազգաւ, սկսաւ ասել ընդ Հրեայսն՝ թէ «Ես եմ Քրիստոսն. ժողովեցէք ինձ, որպէս զի պատրաստեմ զձեզ և երթամք թագաւորեսցուք յԵրուսաղէմ»: Եւ հաւատացին 'ի նա, և ժողովեցին գանձս բազումս. և իմացեալ Ոմարայ՝ կոչեաց ըզնա և առ զժողովեալ գանձն և եթող զնա: Եւ այս Ոմարս եդ օրէնս չառնուլ զքրիստոնէին զվկայութիւնն, և ոչ հեծանել քրիստոնէին 'ի թամբօք գրաստ. և թէ սպանանէ Տաճիկն զքրիստոնեայն, ոչ մեռանի փոխան նորա, այլ տայ զարեան գինսն հազար դրամ: Եւ ազատ արար զեկեղեցականսն 'ի հարկէ, որ ոչ տան յամենայն ստացուածոց իւրեանց 'ի յարքունիս: Եւ սա եդ օրէնս ոչ ըմպել գինի Տաճկի:

Եւ մեռեալ սորա՝ թագաւորեաց Իզիտ ամիս չորս: Ի վերայ սորա ապստամբեաց այր մի 'ի Հեր, որ ասէին և նմա Իզիտ, և յոլովք եղեն ընդ նմա, և առաքեաց Իզիտ թագաւորն և սպանին զնա: Ի սոյն ժամանակս բազում աշխարհ անմարդ եղեւ 'ի սովոյ՝ 'ի գայլ մարախոյ: Նոյն Իզիտ առաքեաց ընդ ամենայն երկիր ջնջել զպատկերս յեկեղեցեաց, 'ի հանդերձից, 'ի գրոց և յամենայն իրաց:

Այնպէս և Լևոն ջնջեաց յեկեղեցեացն Հոռոմացւոց. և եղեւ տրտունջ զնմանէ. և յարոյց հալածանս 'ի վերայ ամենայն ազգ-մարդոյ որք ոչ դաւանեն զնորայն, և բազում Հրեայք մկրտեցան և եղեն քրիստոնեայք և այլքն փախեան: Նա մեռաւ Իզիտ և Թագաւորեաց Հեշմ ամս ինն և տասն. և էր նեղիչ և հարկապահանջ: Նա սա եհան յԵփ-րատ գետոյ ջուր 'ի վեր քան զԿալանիկէ՝ ոռոգանել զդաշտս: Նա սա գնացեալ 'ի Նիուկեսարն, և առ զնա. և առին 'ի նոյն ամի զամուրին բերդն յերկիրն Կիլիկիոյ, որ կոչի Շիզէ (Շիկուրին°):

Յայսմ ժամանակի էր Աթանաս պատրիարքն Անտիոքայ Ասորւոց և Յովհաննէս հայրապետն Հայոց (1). և կողմանքն Վասպուրականի և Սասնոյ և Աղուանք և Սիւնիք և Յակոբիկ Ասորիք էին 'ի մի դաւանութիւն առաքելական հիմամբ: Նա վասն այնորիկ երթային Ասորիք առ կաթողիկոսն Հայոց և ասէին. «Մեք 'ի սուրբ Գրիգորի դաւանութեան եմք.» և առնուին ձեռնադրութիւն. և չկայր հակառակութիւն 'ի նոսա: Նա յայնմ ժամանակի եղեւ մի Բարշապուհ անուն և սարկաւագ 'մի Գաբրիէլ անուն 'ի Սոփարկեայ, եղեն խռովարարք 'ի մէջ Հայոց և Ասորւոց.

(1) Սա ինքն է Յովհաննէս կաթողիկոս Օձնեցի, իմաստասէր կոչեցեալ:

գնային և ասէին ընդ կաթողիկոսն Հայոց, թէ «Յակոբիկքն զմարմինն Քրիստոսի ապականացու ասեն.» և գային առ Աթանաս և ասէին, թէ «Հայք Յուլիանոսք են:» Եւ գրեցին առ իւրեարս երկու պատրիարքքն Հայոց և Ասորւոց՝ մեղադրութիւնս: Եւ ապա խնդրեցին դաւանութիւնս 'ի միմեանց. և գրեցին դաւանութիւն և տեսին՝ զի մի էին երկուցն, բայց յամանս մնացեալ էր պղտորումն Եզրայ: Իսկ Յովհաննէս պատրիարքն Հայոց, այր սուրբ և սքանչելագործ և յոյժ վարժ հմտային գրոց, այլ և արտաքնոցն: Սա խնդրեաց (առնել) ժողով աշխարհախումբ հանդիսիւ 'ի գեղաքաղաքն Մանծկերտ՝ յերկուց կողմանց՝ Հայոց և Ասորւոց. և արարին քննութիւն ուղղափառութեամբ, և բանսարկուքն՝ երէցն և սարկաւագն Յուլիանիտք (1). և չկայր ինչ մէջ ընդ Հայս և ընդ Ասորիս, բայց միայն արարողութիւնն՝ որ չարարին ոչինչ փոյթ: Բայց ոմանք յԱսորւոց ասացին, թէ 'ի Գործս առաքելոցն գրեալ է թէ՝ «Աստուած յարեաց զՅիսուս 'ի մեռելոց, և այսուհետեւ ոչ դառնալոյ յապականութիւն (2):» Եւ արտմեցաւ հայրապետն Հայոց, և ասաց թէ՝ «Այդ այնպիսի է, որ թէ նախ ապականացու էր:» Եւ խնդրեաց

(1) Բառքս՝ և բանսարկուքն՝ երէցն և սարկաւագն Յուլիանիտք աւելորդ թուին, եթէ չգուցէ այլ բառ կամ բայ պակաս:

(2) Գործք Առաքելոց · Բ · 31, 32.

Այնպէս և Լեւոն ընջեաց յեկեղեցեացն Հոռոմացւոց. և եղեւ տրտունջ զնմանէ, և յարոյց հալածանս 'ի վերայ ամենայն ազգ-մարդոյ որք ոչ դաւանէին զնորայն, և բազում Հրէայք մկրտեցան և եղեն քրիստոնեայք և այլքն փախեան։ Այս մեռաւ Իզիտ և Թագաւորեաց Հեշմ ամս ի՛ն և ամսն. և էր նեղիչ և հարկապահանջ։ Այս սա եհան յԱփրատ գետոյ ջուր 'ի վեր քան զԿալանիկէ՝ ոռոգանել զդաշտս։ Այս սա գնացեալ 'ի Նիուկեսարն, և առ զնա. և առին 'ի նոյն ամի զամառնիկ բերդն յերկիրն Կիլիկիոյ, որ կոչի Շիզէ (Շիկուլին?)։

Յայնմ ժամանակի էր Աթանաս պատրիարքն Անտիոքայ Ասորւոց և Յովհաննէս հայրապետն Հայոց (1). և կողմանքն Վասպուրականի և Տարօնոյ և Աղուանք և Սիւնիք և Յակոբիկ Ասորիք էին 'ի մի դաւանութիւն առաքելական հիմամբ։ Այս վասն այնորիկ երթային Ասորիք առ կաթողիկոսն Հայոց և ասէին. «Մեք 'ի սուրբ Գրիգորի դաւանութենէ եմք». և առնուին ձեռնադրութի. և չկայր հակառակութիւն 'ի նոսա։ Այս յայնմ ժամանակի երէց մի Նաւաշապուհ անուն և սարկաւագ մի Գաբրիէլ անուն 'ի Մոփարկնոյ, եղեն խռովարարք 'ի մէջ Հայոց և Ասորւոց.

(1) Նա է նոյն Յովհաննէս կաթողիկոս Օձնեցի, իմաստասէր կոչեցեալ։

դնային և ասէին ընդ կաթողիկոսն Հայոց, թէ «Յակոբիկքն զՄարմինն Քրիստոսի ապականացու ասեն.» և դային առ Աթանաս և ասէին, թէ «Հայք Յուլիանիտք են:» Եւ գրեցին առ իրեարս երկու պատրիարքքն Հայոց և Ասորւոց՝ միաբանութիւնս: Եւ ապա խնդրեցին դաւանութիւնս ՚ի միմեանց. և գրեցին դաւանութիւն և տեսին՝ զի մի էին երկուցն, բայց յումանս մնացեալ էր պղտորումն Եղիայ: Իսկ Յովհաննէս պատրիարքն Հայոց, այր սուրբ և սքանչելագործ և յոյժ վարժ ածային գրոց, այլ և արտաքնոցն: Սա խնդրեաց (առնել) ժողով աշխարհախումբ հանդիսիւ ՚ի գեղաքաղաքն Մանծկերտ՝ յերկուց կողմանց՝ Հայոց և Ասորւոց. և արարին քննութիւն ուղղափառութեամբ, և բանսարկուքն՝ երէցն և սարկաւագն Յուլիանիտք (1). և չկայր ինչ մէջ ընդ Հայք և ընդ Ասորիք, բայց միայն արարողութիւն՝ որ չարարին ոչինչ փոյթ: Բայց ոմանք յԱսորւոց ասացին, թէ ՚ի Գործս առաքելոցն գրեալ է թէ՝ «Ասուած յարոյց զՅիսուս ՚ի մեռելոց, և [illegible] ոչ դառնայ յապականութիւն (2):» Եւ տրտմեցաւ հայրապետն Հայոց, և ասաց թէ՝ «Այդ այնպիսի է, որ թէ նախ ապականացու էր:» Եւ խնդրեաց

(1) Բառքս՝ և բանսարկուքն՝ երէցն և սարկաւագն Յուլիանիտք աւելորդ թուին, եթէ չգուցէ այլ բառ կամ բայ պակաս:

(2) Գործք Առաքելոց. Բ. 31, 32.

զօրինակն Հայոց, և գտաւ ճշմարիտն՝ որպէս և էրն, և բերեալ զԱսորւոցն՝ նոյնպէս գը-տին. և այն որ ասէին թէ՝ «Աստուածեղէն ոչ դառնայ յապականութիւն,» չգտաւ ուրեք գրեալ. և ամաչեաց տգիտութիւն նոցա, և ուրախ եղեն. և զթիւրութիւնն Եզրայ որ ՚ի սակաւս մնացեալ էր, ուղղեցին: Եւ ըզ-Նարշապուհ և զԳաբրիէլ նզովեցին. և ե-դին դաշն սիրոյ և խաղաղութեան չառնուլ չարախօսութիւն ՚ի միմեանց Հայք և Ասո-րիք: Եւ եղեւ այս ՚ի թուին Հայոց ճԿԴ (164)[1], և Ասորւոցն ՚ի ՌԼԵ (1035)[2]:

Յայնմ ամի ապստամբեաց Եգիպտոս ՚ի Տաճկաց, և գնաց Տաճիկն և սպառեաց ըզ-նոսա, զի որք զերծանն ՚ի կոտորածէն, ՚ի նաւ-մտեալ փախեան: Եւ ՚ի գալ ամին ել Թուր-քըն յերկիրն Տաճկաց յԱդրաւուղին[3] և առին քաղաքս բազումս. և այս է սկիզբն ելանելոյ Թուրքացն[4]: Եւ գնաց ընդդէմ նոցա Մըս-

(1) Միւս թարգմանութիւնն դնէ ճԿԶ, կամ ճԼԵ. որ երկոքեան եւս սխալ են, քանզի ըստ պատմելոյ Սամուէլի և Կիրակոսի Գանձակեցւոյ (յէր. 38—39) ժողովս այս Մանազկերտի եղեւ ՚ի թուին Հայոց ճՀԵ (175):

(2) Կիրակոս, յէր. 38:

(3) Ադրաւուղն է Ատրպատական երկիրն, յորում է քաղաքն Արտաւիլ, և թերեւս զայս քաղաք կամի ցուցանել Միխայէլ: Ղեւոնդ յիշատակէ զԹարգու քաղաք, ուր եր-թեալ բնակեցաւ, ասէ, Մոլիմ. (յէր. 65):

(4) Թուրքըն իմա աստ զխազիրքն կամ զՍկիւթացիս, որ են Թաթարք, ՚ի հիւսիսականսն կողմանս:

լեալ, և յերկուց կողմանցն անկան հազարք և բիւրք։ Իսկ ապա արարին սէր քաղաքաւն զոր առեալ էին Թուրքն (1). զի Թողին զայն նոցա և ինքեանք դարձան։

Իսկ 'ի սոյն ամի եղեւ անձրեւ սաստիկ, որ Թուէր բանալ սահանաց երկնից. և վե-րստին փլոյց զպարիսպն Ուռհայոյ և տարաւ զքաղաքն։ Իսկ 'ի դալ ամին գնացին Տաճիկ-քըն յերկիրն Հոռոմայեցւոց և առին զՃեն-ճերա (2) քաղաք և զՄելիտէ և քանդեցին զնա. և ել հրաման 'ի Հեշամայ սպանանել զամե-նայն գերեալսն. և եղեն քննութիւն յՈւռ-հա վասն սպանելոցն Թէ վկայք են՝ Թէ ոչ, և ոչ յայտնեցաւ ճշմարիտն։

Եւ սն Թագաւորն Հոռոմոց սա զդու-ստրն Խաքանայ Խազրաց Թագաւորին՝ կին որդւոյ իւրոյ Կոստանդիանոսի (Ե), մկրտեալ

(1) Միւս Թարգմանութիւնն ասէ. Տաճիկքն (Արաբա-ցիք) Թողին Խազրաց զառեալ քաղաքսն. իսկ ասա իմանի ընդհանրականն Խազրաց Թողուլ զքաղաքս 'ի ձեռս Արա-բացւոց. Քանզի ասէ Մովսէս կաղանկատուացի (Հտ. Բ. յեր. 46) եԹէ Ջառահ որդի Աբդըլլահայ, յամի Տեառն 729. երկրորդ անգամ մտեալ զօրօք 'ի Խազիրս, սպանանէ յԱւար-գինայ. և 'ի Թուին Հայոց ՂԲ. (731) դարձեալ Մսլիման չԹնէ զԴարբանդ յձեռաց Տաճկաց։ Սամուէլ Սուլեյման կո-չէ զՄսլիմն։ Տես և 'ի գիրս Ղեւոնդեայ, յեր. 64, և 131-132, ուր անուանդ Ջառահ փոխեալ է 'ի Հարաշի կամ ԱսԹ Հարաշի, որ է Սայիտ Ջառահ։

(2) Ճենճերան է Գանգր քաղաք, այն է Չանղըրը ըստ Տաճ-կաց։

Նշաբայ՝ որ է գետ Նթուրայ, որ նա ինքն է Տիգրիս, և փախեաւ Մրուան և առին Պա-ղայքն (ազգ Արաբաց) 'ի Մրուանայ եւթն հարիւր բեռն գանձեկան և զրամ (1)։

Եւ Կոստանդիանոս առեալ զօգնականս իւր եկն 'ի Կոստանդնուպօլիս, և եհան զաչսն Արտաւազայ և որդւոց, և ինքն հաստատեցաւ. և եղեւ նմա որդի և կոչեաց զնա յանուն հօր իւրոյ Լեւոն։ Եւ 'ի Տաճկաց պատերազմին խաղաղացան Հռոմայեցիքն, եւս առաւել Հայք։ Եւ 'ի ժամանակս յայս եղեն նշան մեծամեծք 'ի Մարտի ամսեան մինչեւ 'ի յԱպրիլ. օդն հող և փոշի տեղայց և տիւն գիշեր թուէր։ Եւ ապա երեւեցան երեք սիւնք ամպեղէնք հրախառն 'ի կողմն հիւսիսոյ երեք օր, և նշանէին 'ի վեր և իջանէին 'ի խոնարհ։ Եւ զկնի այնր երեւեցաւ

որդին գնաց 'ի խորասան ։ »

(1) Զայս կատարած զոր եառն զօրք խորասանեայ ամիրապետին Մրուանայ, յորում և մեռաւ իսկ, յիշէ և Ղեւոնդ (Գլ. Ը. յեր. 157—158), որ եղեւ ասէ 'ի ձեռն Աբդլլայի. որոյ հասեալ մինչեւ յԱկողա, որ թուի թէ նշանա-կեալ զԿուֆա քաղաք մերձ 'ի Բաղդատ, եգիտ ձեռն օգ-նականութեան և 'ի բնակչաց անտի. այն է Պետուոյքն. (Տես և 'ի Ստեփան Ասողկի. յեր. 134)։ Այս Աբդլլա՝ էր Ա-պուլ Աբբաս Աբդուլլահ Էս—Սաֆֆահ կոչեցեալն. որդի Մահմետի, որդւոյ Ալեայ, և յանուն սորա կոչեցաւ հարս-տութիւնն Աբբասեան, և էր իշխան Պարսկաստանի և Խորա-սան՝ յորժամ հրատարակեաց զինքն խալիֆա յամի 750. և մեռաւ զկնի չորից ամաց.

աստղ մի անծանօթ՝ լուսնին չափ, ամեն ա-
ռաւօտ ելանէր յարեւելից և գնայր յարե-
ւմուտս՝ զտիւն ամենայն տեսանելով մարդ-
կան։ Եւ լինէին ցոլմունք աստեղաց զամենայն
գիշերս որ թռչէին ընդդէմ յարդգողին [1]։
Եւ յետ այսորիկ եղեւ շարժ սաստիկ, և պա-
տառեցաւ երկիր եղին աղբիւրք 'ի գոյն արեան.
և զկնի այնորիկ խառնակութիւն մեծ եղեւ 'ի
վերայ ծովուն մեծի, և բարձրանայր ալիսն և
թուէր մերձ առ երկինքն վերացեալ. և եռայր
որպէս 'ի կաթսայս. և բազում մարդիկ և
անասունք մեռան 'ի ճայթմանէ որոտմանն
որ առ ծովեզերբն կային։ Եւ բերդ մի որ-
դւոյն Գմնայ՝ որ կայր 'ի ծովու, և ջերմուկն
որ գտաւ յաւուրս Սաղովմոնի 'ի ծովուն և
շինեաց 'ի վերայ նորա Սաղովմոն բուրգն և
պատրաստութիւն յոլով, այն փլաւ. և ընկղ-
մեցաւ։ Եւ եղեւ յետ այնորիկ սով սաստիկ,
և ապա մահտարաժամ փողոցաւութեամբ,
որ 'ի Բասրա քաղաք մեռանէր յաւուրն քսան
հազար անձինք։ Եւ լուաք թէ՝ յերկիրն Սա-
դիմու կոտորեցան կայսերք և բազում
վնաս գործէին՝ տապականելով զմարդ և զա-
նասուն։ Եւ զայս ամենայն տեսեալ Սրուան
թագաւորն Դամասկոսի, որ փախեաց զօր-
քունևիսն իւր 'ի Խառան, գզջացաւ և անկաւ

(1) Սամուէլ ասէ, 'ի Թուին Հայոց ՄԺ. և փրկչին 762. երկու աստեղք երեւեցան. մի յարեւելս և մի յարեւմուտս։

մահ 'ի վերայ նորա , և գրեաց ընդ ամենայն
տեղիս ապաշխարութիւն . և սասանեցաւ
երկիր և յորդեցին արտասուք և հեծմունք և
աղօթք ամենայն ուրեք , զի կարծէին թէ
հասեալ է կատարած աշխարհի յազգի ազգէ
նորանշան սպառնահասից . քանզի նորանշան
հրաշք լինէին, մինչ զի գեղ մի յատն լերինն
Թաւրոսայ 'ի շարժմանէն յիւր տեղւոյն 'ի
բաց փախեաւ երկու միլ և ինչ ոչ խախտե-
ցաւ շինուած , և ոչ պակասեաց հաւ մի . և
Մնբէճ քաղաք ընկղմեցաւ 'ի տեղւոջ իւ-
րում : Եւ 'ի Կոստանդինուպօլսէ երրորդ-
մասն անկաւ , և Նիկիա բովանդակ փլաւ ,
և բազում քաղաքք 'ի Բիւթանիա կործա-
նեցան : Յայնժամ կաշառեցին զՄրուան
Քաղկեդոնիկքն և եդին իւրեանց պատրի-
արք զԹէոփիլէ մանգմանի որդի , և գնաց 'ի
Խառան և դարձեալ կաշառօք եառ զեկեղե-
ցին Ասորւոց ուղղափառաց . և արքեպիս-
կոպոսն Թէոփիլէ եհար զձեռնն 'ի խորանն
և ասաց " Մի պղծեալ խորան , վաղիւ ար-
քիս օրհնութեամբ և ուղղափառ պատա-
րագաւ :" Եւ նոյն ժամայն մինչ կայր յատն ,
վառեցաւ հրով և այրեցաւ , և եղեւ երկիւղ
մեծ 'ի վերայ պատրիարքին Թէոփիլի , և ա-
ռեալ զայրեցեալ ոսկերսն 'ի գիշերի փախեան .
և մնաց եկեղեցին ուղղափառաց :

Եւ յայսմ ժամանակի եկն Աբդլէ որդին

Ի սոյն ամի Սմբատն, տէրն Սիւնեաց, խորհրդակցութեամբ պարոն Թորոսի՝ զօրք խուռնք գնաց[1] 'ի վերայ Կիպրոս կղզւոյ վասն երկու պատճառաց. մի՝ վասն Թագաւորին Յունաց քինու, որ յորդորէր զայլազգին 'ի կորուստ Հայոց, և միւսն՝ վասն Յունացն որ 'ի Կիպրոս կոտորէին զՀայսն և զՖռանգն: Վասն որոյ գնացեալ Սմբատն գերեաց զամենայն կղզին և էած զմարդ և զանասուն յեզր ծովուն, և թուլեաց զնոսա և կտրեաց գինս ամենեցունց, և եթող զնոսա և էած ընդ իւրեան պատանդս՝ եպիսկոպոսս և աբեղայս բազումս և մեծատունս, մինչև բերցեն զկտրեալ գինսն: Իսկ Մանուէլ կայսր Թուրքք մի 'ի Ներգուսէն[2] և խնդրեաց ըզբերդն, և նա ասաց. «Թէ երդնուս մեզ որ թողուս զմեզ կենդանի, մենք տամք զՆերգուսն.» և երդուաւ 'ի Խաչն և յԱւետարանն զի առաքեսցէ զնոսա խաղաղութեամբ 'ի Հալպ. և ետուն նմա զՆերգուսն, և եհան զնոսա գնալ խաղաղութեամբ: Եւ ոմանք 'ի թագաւորացն լուան զի սպանանէին Թուրքերն.

(1) Սմբատ պատմագիր (յեր. 98) ասէ՝ եթէ Ռենաղտ 'ի դրդմանէ պարոն Թորոսի յարձակեցաւ 'ի վերայ Կիպրոսի, և թէ ինքն իսկ պարոն Թորոս՝ ընկերացաւ նմա յարշաւանսն: —Գրիգոր Երէց (Գ. 373):

(2) Ներգուսէ Ներգուսանց գղեակն 'ի Կիլիկիա մերձ ամրոցին Կապանոյ:

թէ՝ Ա՜ Խարձեալ զօրանամբ և գամբ աւերեմք զաշխարհս զայս ։» Եւ պատմեցաւ պարոն Ստեփաննոսյ. և եհարց պարոն Ստեփանէ զեկեղեցականսն, և նոքա ասեն. «Թէ այդպէս սպառնան, անխիղճ ես դու վասն երդմանն ։» Եւ առաքեաց զհետ նոցա և կոտորեաց զնոսա ։ Եւ լուան զայս ամենայն այլազգիքն և դառնացան ընդդէմ քրիստոնէից, վասն որոյ և մեծամեծ վնասք լինէին ։

Յայսմ ամի մեռաւ աւագ սուլտանն Խորասանայ Մասուդն, և ոչ ունէր որդի՝ բայց մանկիկ մի փոքրիկ փոխանորդ իւր, վասն որոյ եղեւ աթոռապահ նմա ամիրայ մի Եղտիկուզ անուն, որ առ զկին սուլտանայ իւր ՚ի կնութիւն՝ զմայր տղայոյն. և յետ փոքր աւուրց մեռաւ տղայն, և մնաց սուլտանութիւնն Եղտիկուզին, թէրեւս լեցի որդի ՚ի նոյն կնոջէ ժառանգ սուլտանութեանն. և զի (Եղտիկուզ) աթաբակ եղաւ զառաջինն տղային, թէպէտ սուլտանացաւ, բայց մինաւ անունն նոյնպէս աթաբակ. և վասն այսորիկ յայնմ հետէ թագաւորքն Խորասանայ և Նինուէի և Միջագետաց աթաբակ կոչին և ազգքն տուն Աթաբակեայ. նոյնպէս որ ՚ի Կապադովկիա լինէին թագաւորք, զի ընդձեռամբ Եղտիկուզին մտին, Աթաբակեանք կոչին ։

Ի թուին Ասորւոց ՌՆԿԹ (1469) և Հայոց

ՌՂԶ (596) Խլիճ ասլան արար սէր ընդ Խսար-
ասլան տէրն Սեւաստոյ, և եկն յերկիրն Մի-
ջագետաց և ա՛ռ զտեղիսն զոր յառաջագոյն
կալեալ էր հայր նորա. և արար սէր ընդ պա-
րոն Թորոս և ընդ Ստեփաննէ, և կայր խա-
ղաղութեամբ։

Յայսմ ամի Թագաւորն Երուսաղէմի ե-
կին յԱնտաք, և ժողովեալ զօրս գնացին ա-
ռին զՀերքիմն (1) և գերեցին մինչեւ 'ի Հալպ
և դարձան։ Եւ յայսմ ժամանակի շմորեցան
ընդ միմեանս Խլիճ ասլան և Խսար ասլան, և
պարոն Ստեփաննէ անդադար աւերէր զաշ-
խարհ երկոցունցն։ Եւ եղեւ քսութիւն յո-
մանց առ պարոն Թորոս՝ թէ եղբայրն քո
կամի սպանանել զքեզ. և հաւատաց նոցա.
և կալաւ զեղբայրն և զնդանեաց տասն ա-
միս. և ապա միջնորդութեամբ բազմաց
դարձեալ եհան զնա 'ի բանտէն, և կային սի-
րով ընդ միմեանս։

Իսկ Խլիճ ասլան արար սիրելի իւր զՏա-
նուն ամիրայն Կեսարիոյ, և եհան զնա 'ի
'ի Խսարասլանայ. և նա եղեւ սկիզբն քակ-
ման տանն Դանշմանանց (2)։

(1) Հարեմ կամ Հարենկ՝ էր ամրոց յերկրին Անտիոքա-
ւոց 'ի հարաւոյ և աւուր միոյ ճանապարհաւ հեռի յԱնտի-
ոքայ։

(2) Տանունն էր որդի Մելիք Մահամմետայ ամիրային Մե-
լիտինոյ, իսկ 'ի յաղթելն որդւոյն զհայրն, Խլիճ—արսլան

Ի Թուին Ասորւոց ՌՆՀ (1470) և Հայոցն ՇՂԷ (597), Տաճիկքն (Արաբացիք) որ կոչէին Աբդլմումինք, ասպատակեցին 'ի Սպանիա, և եկին մինչև 'ի Սպանիա. և ելին ընդդէմ նոցա զօրքն Փռանգաց, և յերկարեաց գործ պատերազմին։

Իսկ Թագաւորն Յունաց Մանուէլ դիպող ժամ գտեալ՝ եկն տպաւնալեօք յերկիրն Կիլիկեցւոց 'ի վերայ պարոն Թորոսի. և Թորոս խոյս ետ 'ի նմանէ զօրօք իւրովք 'ի կողմն լերինն։ Իսկ Մանուէլն հնազանդեցան դաշտակողմանքն. և գնաց մինչև յԱնտիոք և լուաւ գոյժ թէ՝ ոմն 'ի զօրապետացն կամի թագաւորել 'ի տեղի նորա։ Իսկ փութացաւ 'ի գնալ. և արար հաշտութիւն ընդ պարոն Թորոսի և ընդ Ստեփանէ, և դարձաւ (1). և առաքեաց առ Խլիճ Ասլան և խնդրեաց ճանապարհ, և ետ նմա ճանապարհ. այլ առ կայն 'ի գնալն զբազումս կոտորեցին 'ի զօրացն՝ յայտնի և 'ի ծածուկ (2). և գնաց 'ի

Բ. տիրեաց Կեսարիոյ յամի 1169. և ետքն Տանուն փախեաւ առ Մանուէլ կայսր. և այսպէս սկիզբն եղեւ անկման տանն Տանիշմանեանց, որք տիրեցին մասին միոյ փոքուն Ասիոյ ամս 122։

(1) Վարդան յաւելու աստ (յեր. 165), եթէ Մանուէլ կայսր սիրով նուաճեալ զԹորոս, առեալ և զամենայն զօրս Փռանգաց՝ և գնաց 'ի վերայ Հալպայ, և անդ լուեալ զհամբաւ խռովութեան մայրաքաղաքին՝ դարձաւ յետս։ -Գրիգոր Երէց (Գ. 276)։

(2) Գրիգոր Երէց (Գ. 274)։

Կոստանդինուպօլիսոյ, յաղթողեալ 'ի խորհուր-
դըս իւր զոր կամէր առնել։ Բայց յորժամ
ետես Մանիլն զպարտութիւն զօրաց իւրոց
'ի Թուրքէն, առաքեաց այլ զօրս աւերել
զգաւառն Թուրքաց զոր կարացեն. և եղեն
պատերազմունք 'ի մէջ Յունաց և Թուր-
քաց։ Իսկ Նորադինն իմացեալ զպատճառս
նոցա, զօրաժողով լեալ 'ի վերայ գաւառացն
Խլիճ Ասլանայ, և առ զՊեհեսնի և զՄարաշն.
և զՄարաշ և զվանորայս և զայլս բազումս։

Ի Թուականին Մարուաց ՌՆՀԱ (1471) և Հայոցն
ՇՂԸ (598), Մլուհ աղան (Վասղուպ-արսլան)
և Նորադինն հաշտեցան ընդ Խլիճ ասլան
սուլտանին, և դարձուցին զաշխարհն զոր
առեալ էին 'ի նմանէ՝ առ ինքն։ Եւ 'ի նոյն
ամի զօրքն Հալպայ ըմբռնեցին զՋօսլինն
զտէրն Հերմին՝ զորդի Ջօսլինին, որ մեռաւ
'ի ծառայութեան 'ի Հալպայ. և եղեւ մեծ
ուրախութիւն 'ի Հալպայ, զի յայժ նեղէր նա
զերկիրն Հալպայ վասն քինու հօր իւրոյ, զոր
եդին 'ի կապանս և անդէն մեռաւ։

Եւ յետ ամի միոյ աւերեցին զՊարիզա
գիւղ յերկիրն Հռոմին, ուր բնակեալ էին
Հայք, և կոտորեցին զնոսա և գերեցին։

Եւ յայսմ ժամանակի ել Թագաւորն Եր-
բուսաղէմի Պալատինն առ սահմանօքն Դա-
մասկոսի, և Պտոյլքն որ էին ընդ Նորա-
դինին և բնակէին յերկիրն Փղշտացւոց, ա-

ապստամբեցին ՚ի Նորադնէն և եղեն ընդ Փռանգին, և առին զնոսա և գնացին ընդ անապատ յերկիրն Եգիպտոսի. և առին աւար և գերի բազում յոյժ, և եդին հարկ ՚ի վերայ նոցա. հարիւր վաթսուն հազար դահեկան, և դարձան յԵրուսաղէմ մեծաւ փառօք:

Յայսմ ժամանակի. Թագաւորն Վրաց Գէորգի եհար զՍալտուխ ամիրայն, և կալաւ զՍալտուխն և վաճառեաց զնա. և էառ զԱնի քաղաք (1): Եւ դարձեալ ժողովեցաւ բազմութիւն Թուրքաց ընդդէմ Գէորգեայ, և կոտորեցան ՚ի նմանէ հազարք հազարաց և բիւրք բիւրուց:

Ի թուին Ասորւոց ՌՆՀԲ (1472), և Հայոցն ՇՂԹ (599), եղեւ պատերազմ ընդ Խլիճ ասլան և ընդ Յաղուբ ասլան վասն դստերն Սալտուխին, զոր կամէր կին առնուլ սուլտանն, և տուաւ նա ՚ի կնութիւն տեառն Մելիտինոյ կամօք Յաղուբ ասլանայ. և ժողովեցաւ ՚ի վերայ նորա սուլտանն: Եւ ել ընդդէմ նորա Յաղուբ ասլան և զօրացաւ ընդդէմ սուլտանին, և յաղթեաց նմա և փախոյց զնա, և էառ զամենակեաղ նորա զգահոյսն ոսկեղէն և զամենայն պատրաստութիւն նո-

(1) Վարդան (յեր. 165) դնէ ՚ի ՈԺ թուոյն Հայոց առնուլ Գէորգի զԱնի քաղաք ՚ի Փադլուն ամիրայէն. Իսկ Սալտուխ էր փեսայ Շահի—Արմէնի Թաւրին Սուգմանայ:

րա. բայց երեւեցաւ մեծահոգի, եւ դարձոյց անդրէն զոր ինչ առեալ էր, եւ խնդրեաց 'ի նմանէ սէր եւ արարին խաղաղութիւն, եւ սիրով կային ընդ միմեանս.

Ի սոյն ժամանակս ազդ եղեւ Թագաւորին Երուսաղէմի եթէ Դ'իրարտ տէրն Անայիսոյ կազմեալ է նաւս 'ի ծովուն լցեալ աւազակօք, եւ յանխնայ կոտորէ զքրիստոնեայս եւ զՏաճիկս. եւ վասն այսր պատճառի բարկացաւ 'ի վերայ նորա եւ էառ զԱյլիդա եւ հալածեաց զնա, եւ եկեալ նորա առ տէրն Հռոմկլայ եւ ետ նմա զՊաղրաս(1). Եւ նա ոչ դադարէր 'ի չարեաց իւրոց 'ի ծովու եւ 'ի ցամաքի մեծամեծ վնասս գործելով. եւ յորժամ զայն եւս խմացան, առին 'ի նմանէ եւ զՊաղրաս. եւ նա գնացեալ առ Նորադին եւ ուրախ արար զնա յոյժ, զի խոստացաւ առ նա դարձուցանել զամենայն ծովեզերեայսն. եւ ետ 'ի ձեռս նորա զզօրս իւր, եւ գնաց նա եւ եմուտ յերկիրն Փռանգաց, եւ սկսաւ առնել աւերումն եւ կոտորումն քրիստոնէից. Եւ ժողովեալ զօրացն Փռանգաց եւ անուանեալքն Քրիստոսի դիմեցին 'ի վերայ նորա եւ ձերբակալ արարին զգլուխ չարեացն, եւ կոտորեցին զզօրս Թուրքացն, եւ զանօթն

(1) Պաղրաս որ եւ Բաղրաս, էր դղեակ մեծ Ամանու լերին Կիլիկիոյ.

նիլն, և երդուաւ նմա. և գնաց սուլտանն հազար հեծելօք առ Մանիլն 'ի Կոստանդինուպօլիս, և ընկալան զնա մեծ պատուով։ Եւ եղեւ անդ աւուրս ութսուն, և այնչափ պատուեաց զնա, զի յայնքան աւուրս յամեն օր երկու անգամ տուաքէին նմա հաց կերոյթ ոսկեղէն և արծաթեղէն ամանօք, և այն ամենայն մնայր սուլտանին և այլ ոչ դառնայր։ Եւ 'ի յետոյն օրն կերան հաց 'ի միում սեղանի և զամենայն պատրաստութիւն ետ սուլտանին։ Եւ յորժամ կամէր դնալ, ծածկեաց զհասակ նորա ոսկւով՝ կալով նորա յոտն 'ի մէջ տաճարին, և ետ նմա ըզզօրս իւր և չոգաւ և վարձեաց այլ բազում զօրս 'ի Թուրքաց։ Եւ ժողովեցան ամիրայքն ամենայն Միջագետաց զօրօք իւրեանց առ Աղուբ ասլան և ելին ընդդէմ նորա 'ի պատերազմ. և յորժամ եկին առ միմեանս, երկեան երկոքին կողմանքն 'ի բազմութենէ միմեանց, և արարին խաղաղութիւն և ցրուեցան յիւրաքանչիւր տեղիս։

Ի ժամանակին յայնմիկ պարոն Ստեփանէ կոչեցաւ 'ի պատիւ սիրոյ Անդրոնիկոսէ իշխանէն՝ որ էր Յոյն, և յորժամ դարձաւ երթալ 'ի տուն իւր, սպանաւ նենգութեամբ

Խլիճ—Արսլանայ առ Մանուէլ կայսր 'ի Կոստանդինուպօլիս և տարաւ, ասէ, ընդ իւր զԱմիր Միրան զեղբայրն Նուրէտտնի։

ֆիւզն և որ ընդ նմա էին ։ Ոմանք ասեն թէ խաւշեցին 'ի պղինձ (1) ։ Յայնժամ շարժեցաւ բարկութեամբ պարոնն Թորոս 'ի վերայ Յունաց և սպան 'ի նոցանէ որպէս ասեն՝ աւելի քան զտասն հազար անձինս ։ Իսկ Անդրոնիկոս երդնոյր՝ թէ չէ պատճառ սպանման եղբօրն ։ և աղաչեաց զթագաւորն Երուսաղէմի գալ և առնել խաղաղութիւն, և խոստանայր նըմա բազում ոսկի 'ի Կոստանդինուպօլսէ ։ Իսկ լուաւ նմա թագաւորն (Պետուին Գ.) և եկն և աղաչեաց զպարոն Թորոս և զորդին Մանեղիանեայ, և դադարեցին 'ի կոտորելոյ զՅոյնսըն ։ Իսկ յետ այնորիկ եկաւ պարոն Թորոս զԱնաւարզա և զԹիլն ։

Յայնմ ժամանակի Թագաւորն Վրաց Գէորգի եկաւ զԱնի. և կոտորեաց զՊարսիկսն որ 'ի նմա, և քակեաց զմինարայն զոր շինեալ էին Պարսիկք ոսկերօք և արեամբ քրիստոնէից (2) ։

(1) Սմբատ (յեր. 98)․ և Վահրամ (յեր. 209) համառօտեն զբանս Միխայէլի — Կիրակոս (յեր. 90) զանց առնէ յիշել զեղանակ վախճանին ։

(2) Վարդան ասէ (յեր. 166) թէ Գէորգի առեալ զԴուին, զթագաւորութեան (սպանելոյ) որ կային 'ի մինարէն, զարդարեալ ոսկէթել համդերձիւք և եդեալ 'ի դագաղս տայ Մուղրի արարայ, բառնալ յուս խորեանց և տանել 'ի Տփխիս, 'ի թուին Հայոց ՈԺԲ (1163) ։ — Գրիգոր երէց. Գ. 284. — Սամուէլ ասէ, յաղթեալ աւարս ազատաց առ զԴուին, և վախճանեալ հազարս գերեաց և քանդեաց զաւառ ազգաթանցս նոցա ։

Յաւուրս յայսոսիկ ըմբռնեցաւ Ռնաղ-
տըն տէրն Անտիոքայ ՚ի զօրաց Նորատտնին
հարիւր քսան ձիաւորով և հինգ հարիւր
հետևակօք՝ գարան գործեալ նմա. ուր
բազում եցոյց քաջութիւնս, և թէ ոչ էր խը-
նայեալ ՚ի հետևակսն, դիւրաւ էր փախու-
ցեալ. բայց այրեցաւ սիրտ նորա և զոեղի
էառ, և յետ բազում մարտի ետ զինքն ՚ի
ձեռս Թուրքացն, և կալեալ զնա ածին ՚ի
Հալպ, և եղեւ մեծ տրտմութիւն քրի-
ստոնէից և ուրախութիւն Թուրքաց (1).
վասն որոյ նոյն ժամայն արշաւեցին ՚ի Լա-
տիկն (Լաւոդիկէ) և առին եօթն հազար քրի-
ստոնեայս և վարեցին ՚ի գերութիւն: Եւ
լուեալ զայս Թագաւորն Երուսաղէմի, եկն
և արար սէր ընդ Հալպ; և դարձաւ գնալ
յԵրուսաղէմ. և հասեալ յԱքայ վախճա-
նեցաւ և ետ զԹագաւորութիւնն եղբօր իւ-
րոյ Ամարեայ (Ամաւրեայ) (2) ՚ի Թուին Ասոր-
ւոց ՌՆՀԴ (1474) և Հայոց ՈԱ (601): Եւ

(1) Գրիգոր երէց (Գ. 281) ասէ, եթէ յասպատակել
Ռնաղոսի զերկիրն Խարբերդու, ըմբռնի ՚ի Մճմնիկեայ. որ էր
կառավարիչ Հալպայ, հանդերձ երեսուն ձիաւորօք:

(2) Պետրոսին Գ. Թագաւորին Երուսաղէմի յետ գերու-
թեան Ռնաղոսի եկն յԱնտիոք ոչ ոյնչափ առ ՚ի ազատել
զնա ՚ի գերութենէ, որչափ նախորդէր ՚ի մտի զքաղաքն ա-
նել զիշխանութիւն Անտիոքայ. ուր և հիւանդացեալ Ղերո-
նամբ առ ՚ի մահ, եհաս ՚ի Պէյրութ և անդ վախճանեցաւ:
Իսկ Ռնաղոս մնաց ՚ի գերութեան մինչև ցամ Տեառն 1178.

տարաւ զեղբայր իւր յԵրուսաղէմ և թա-ղեաց անդ. և սգացին զնա աւուրս բազու-մս. և թագաւորեաց ամս ինն և տասն(1): Եւ Նորադինն եմուտ յերկիրն Երուսաղէմի և արար աւերումն, և առեալ աւար և գերի՝ դարձաւ: Եւ ել զհետ նորա Ամերիս (Ա-մաւրի) և փախոյց զնոսա և զբազումս կոտո-րեաց 'ի նոցանէ և դարձաւ:

Եւ 'ի սոյն ամի Եղուբ սուլտան հնազան-դեաց զՏանուն եղբօրորդի իւր, որ ապըս-տամբեալ էր 'ի Կեսարիա Հայոց, և չոգաւ 'ի Կամաւխ որ է Կամախ, և սպան զապստամբ ամիրայն որ կայր անդ:

Եւ յայսմ ամի Խլիճասլան գնաց 'ի յԱմիթ և ոչ կարաց առնուլ զնա, և դար-ձաւ 'ի Հարսնքէֆ(2) և կոչեաց 'ի սէր զԵ-ղուբ սուլտան: և նա կարծեաց թէ նենգէ զնա, և գնաց բարկութեամբ 'ի յերկիր նո-րա և առ զՄէչկածակն (Չմշկածագ *) և գե-րեաց յերկրէ նորա հարիւր հազար անձինս և երկու եպիսկոպոսս, զտէր Իգնատիոս և զտէր Դիոնէսիոս, և յետոյ զերծան կենդանիք:

Իսկ զկնի գերութեան Ռոմանոսին՝ կին նորա իշխէր Հոռոմոց: և ապա եկն պարոն

(1) Ամաւրի թագաւորեաց յամի 1162—1173, ամս մե-տասան:

(2) Հարսնքէֆ (Հըսն—Քէյֆ) է աւան յարևելեան եզերս Տիգրիսի և 'ի հարաւոյ Ամթայ:

Թորոս և եդ բերել Ստեփանեայ զՊեմունդն զորդի Անտաքին՝ ոչ կամելով մօրն:

Ի ժամանակին յայնմիկ Նուրադինն զօրաժողով լեալ չոգաւ և գերեաց զերկիրն Տրապօլեաց(1). և պատահեցին նոցա երեք հարիւր ձիաւոր Ֆռանգ, և ոչ գիտացին զմիմեանս, բայց կարծեցին Թուրքն՝ թէ թագաւորն Երուսաղէմի հասաւ, և թողին զօրս առեալ էին և փախեան. և Ֆռանգն կոտորէր զնոսա մինչ 'ի տեղի մինչ ընդդարձակ: Եւ յորժամ տեսին Ֆռանգքն զպարտութիւն Թուրքացն և խնդացան թէ Նուրադինն է, զարհուրեցան և ելին 'ի բլուր մի, և իջան յերիվարացն և եդին ծունր և աղօթէին զվերջին աղօթսն՝ ակն ունելով մահու 'ի նոյն ժամու: Եւ տեսեալ Թուրքացն զաղօթելն նոցա, անկաւ երկիւղ Տեառն 'ի վերայ նոցա, և փախեան յերեսաց նոցա թողլով զծանրութիւնս իւրեանց: Եւ սպառնացեալ քրիստոնէր զօրացն, պնդեալ միաբան կոտորեցին յոյժ զբազմութիւն . . . նացն զօրութեամբն Քրիստոսի, և Նուրադինն զերծաւ սակաւուք:

Եւ 'ի սոյն ամի գնաց Աղուբ սուլտան առ Շէրան շահ եղբայր(2) աւարառութիւն և դարձաւ

(1) Տրապօլիս, այժմ կոչի Շամ—Տարապլուս, որ է ծովեզերեայ քաղաք Ասորւոց:

(2) Ասլանշահ Իկոնիոնի, որ Թուրք անուն Շահին շահ, որ

Նորադինին ամենայն բազմութեամբ Թուրքաց պաշարեալ է զՀերիմն, և եթող ըզՊլակս և եկն. և նախ քան զգալն նորա առաւ Հերիմն յաղթութենէ զօրաց Փռանգաց՝ որ ոչ լուան նմա խնամատարական խըրատին զոր գրեաց առ նոսա՝ չի մի՛ ելցեն ընդդէմ Թուրքաց մինչև 'ի գալն նորա. այլ ժողովեցան և գնացին յարուցին 'ի քաղաքէն զԹուրքն, և ինքեանք նստան 'ի բացեայ և անհոգացան. Եւ դարձան 'ի վերայ նոցա Թուրքքն. և կոտորեցին և առին զքաղաքն, և տարան գերի զըլխեձն Անտաքու (Բոհեմոնդ Գ.) և զայլս բազումս 'ի գլխաւորացն(1)։

Ի թուին Յունաց ՌՆԿԶ (1466) և Հայոցն ՈԳ (603), զօրացաւ առաջինն Կիլիճ ասլան և առ զԿատտուկին և զՍեբաստիայն և զՏարանդա 'ի ձեռն Տանուքին, և հալածեաց զորդիսն Դանիշմանայ։

Յայսմ ամի պարոն Թորոս առաքեաց առ կի և զարծաթ 'ի Հալպ՝ գնել զոմն յիշխանացն խուրաց որ կայր անդ 'ի ծառայութեան. և նոքա առին զմկին և չետուն զծառայն։ Եւ Թորոս առաքեաց սպառնալիս Նորադինին, և ինքն ել յերկիրն Մարաշայ. և ժողովեցան 'ի 'ի վերայ նորա բազմութիւն Թուրքաց, և եհար զնոսա զօրութեամբ Տեառն, և կալաւ 'ի նոցանէ այր գլխաւոր և նշանաւոր. և

(1) Գրիգոր երէց, Գ. 281։

զարհուրեցաւ Նորադինն յերեսաց նորա, և առաքեաց առ նա զոր խնդրէրն, և խնդրեաց խաղաղութիւն։ Եւ բացաւ բերանն Փռան-գաց, և խնդրեցին զՄ՚րինձն, և վաճառեաց նոցա ընդ հարիւր հազար դահեկանի։ Եւ ե-լեալ Մ՚րինձն գնաց ի Կոստանդնուպօլիս առ քեռն իւր, և դարձաւ բազում գանձիւք։ Եւ եբեր անտի Յոյն պատրիարք Անտիոքու, որում անուն էր Աթանաս, և եմոյծ ի յԱն-տիոք։ Եւ տեսեալ զայս Փռանգ պատրիարքն Հերմի անուն, և ել ի քաղաքէն և գնաց նստաւ ի Կուսայրն, և բանադրեաց զքա-ղաքն։

Ի Թուին Ասորւոց ՌՆՀԷ (1477) և Հայոցն ՈԴ (604) Ամուրիլ թագաւորն գնաց ի վերայ Մուլղարաց և ըմբռնեցաւ յառնէ միջէ, որ կամեցաւ տանել զնա առ թագաւորն. և նա խոստացաւ նմա մեծամեծ խոստումն՝ թէ թողցէ զնա, և գայ զհետ նորա ի Կոստան-դինուպօլիս։ Թուաւ նմա այն և դարձոյց և փախոյց զնա և ած զնա ի Կոստանդինուպօ-լիս, և (Ամուրիլ) արար նմա զոր խոստացաւն։

Ի Թուին Ասորւոց ՌՆՀԸ (1478) և Հայոցն ՈԵ (605) Թագաւորն Երուսաղէմի գնաց դար-ձեալ յԵգիպտոս, և յաղթեաց զօրացն Նո-րադինին՝ որ կային ի Մսր, և ապա դարձաւ յԵրուսաղէմ։ Եւ ըստ այն եթէ նեղել սկսան Տաճիկքն զքրիստոնեայսն, և գնաց երկրորդ-

անդամ յԵգիպտոս. և ել ընդդէմ նորա Հե-րաքլէ որ կայր 'ի Սնր, և դարձեալ յաղթե-ցաւ և փախեաւ յերեսաց նորա։ Եւ թա-գաւորն Եգիպտացւոց էառ զՍնր, և եղեւ ուրախութիւն մեծ քրիստոնէից. և եղեն հարկատուք Եգիպտացւոց ամենայն Եգիպ-տոս։

Եւ յայսմ ամի մեռաւ ամիրայն Խարթ-բերդոյ Պորալան, և առ զիշխանութիւնն որդի նորա Նորադին (1)։

Ի թուին Յունաց ՌՆՀԹ (1479) և Հայոց ՈԶ (606). Նիկեփորոս յոյն սպանողն պարոն Ստեփանէի, որ էր հօր եղբօր որդի Մանիլ թագաւորին, փախեաւ 'ի Կիլիկիոյ և գնաց Ակքայ, զի անդ էր եղբօր իւրոյ դուստրն (Թէոդորա), որ էր լեալ կին հանգուցելոյ թագաւորին Երուսաղէմի. և եղեւ հոգա-բարձու տան նորա։ Եւ անկաւ անօրէնն այն պոռնկութեամբ ընդ եղբօր դստեր իւրոյ և յղացաւ, և յայտնեցաւ չարն և փախեան և գնացին 'ի Խառան. և անդ ծնաւ նոցա չար ծնունդն. և զարշեցան ազգն Թուրքաց 'ի քրիստոնէից յորժամ լուան զբանն զայն. և անտի գնաց 'ի Մերտին, և ոչ ընկալան զնա. և չոգաւ անտի 'ի Կարնոյ քաղաք, և

(1) Նուրէտտին Մահմուտ որդի Ֆախրէտտին Ղարա-արսլանայ սուլտան Որթուքեան, որ տիրէր Ամիթայ և Հիսն-քէյֆայ. մեռաւ յամի 1183։

առնոյր զօր 'ի Թուրքաց և երթայր գերէր զքրիստոնեայսն և բերէր վաճառէր անօրէնացն :

Ի նոյն ամի մեռաւ մեծ իշխանաց իշխանն պարոն Թորոս, կեցեալ երեւելի փառօք և մեծաւ յաղթութեամբ. և մօտ 'ի կատարած կենացն զգեցաւ զգեստ կրօնաւորութեան և մեծաւ յուսով կատարեցաւ 'ի Քրիստոս. յիշատակ նորա օրհնութեամբ եղիցի 'ի Քրիստոս յեկեղեցիս ուղղափառաց : Եւ ետ զիշխանութիւնն որդւոյ իւրոյ յոյժ տղայոյ. և յանձնեաց զնա յիշխանսն : Եւ եղբօր իւրոյ Մլեհին ոչ ինչ ետ՝ գիտելով զչարութիւն նորա, որ նախ քան զմահ նորա գնացեալ էր առ Նուրադինն և ետ նմա զինուրս. և արարեալ յոլով չարիս քրիստոնէից ձեռնտուութեամբ անօրինացն գողացաւ և զՎանաւեր(1) 'ի Հայոց և գերէր յանխնայ զհաւատացեալս 'ի Քրիստոս, զորս ոչ կամիմք ընդ գրով արկանել զաղէտսն :

Յետ այսորիկ իշխանքն Հայոց և Թոմա մանկական տղայոյն, առին 'ի նմանէ ('ի Մլեհէ) երդումն՝ զի մի զրկեսցէ զեղբօրորդին իւր, և նոքա տացեն նմա զկէս երկրին և դարձցի անդրէն. և նա երդուաւ և դարձաւ յերկիրն, և ոչ եկաց յերդումն, այլ

(1) Վանաւեր, եթէ չիցէ անուն տեղւոյ, թուի եթէ ասիցէ վանաւորեր, այսինքն՝ վանորայք, վանքերը :...

որդի Սալիբի՝ առն աղուարդ ։ Սա արար յո-
լով գիրս խրատուց և կրօնից. և սա մեկ-
նեաց զամենայն Հին և Նոր կտակարանս. և
լինէին նովաւ նշանք և սքանչելիք 'ի փառս
Քրիստոսի Աստուծոյ մերոյ ։

Ի Թուին Ասորւոց ՌՆՁԱ (1481) և Հայ-
ոց ՈԸ (608), առաքեաց Թագաւորն Յունաց
Մանուէլ առ տէր Ներսէս կաթողիկոս Հայ-
ոց և առ իս Միխայէլ պատրիարգս Ասորւոց,
որ ժողովեալք էաք գրոցս, վասն միաբանութեան
կրօնից և դաւանութեան՝ նախ 'ի ձեռն Քրի-
ստափորի և երկիցս անգամ 'ի ձեռն Թէո-
րիանեայ ։ Եւ գրեաց առ մեզ տէր Ներսէս,
թէ խնդրել են 'ի մէնջ երկու բնութիւն ա-
սել Քրիստոսի. և զչորրորդ ժողովն մեծա-
րել, և զԾնունդն 'ի դեկտեմբերի ԻԵ տօ-
նել, և խմոր դնել 'ի նշխարն և ջուր խառ-
նել 'ի բաժակն. և 'ի սուրբ Աստուածն խա-
չեցար չասել ։ Եւ մեք գրեցաք առ նա, թէ
«Այդ կրօնքդ 'ի մերս մերձ է. բայց ես ոչ կա-
միմ զճշմարտութիւն կրօնից հարցն ձերոց
փոխել. զի թէ մեծ և կամ փոքր(1) և կամ դա-
ւանութիւն փոխէք, երեւի թէ թերի էիք
մինչեւ ցայժմ և արդ լնայք և դեռ կատա-
րեալք եղերուք՝ ակն առնել մարդոյ. այլ
մեք կատարեալ տեսանեմք զձեզ առաքելա-

(1) Ի բնագրին գոյր առաս որ ասէ քանաւ, զոր ոչ կարա-
ցաք իմանալ ։

կան հիմամբ, և Թերի ինչ ոչ գոյ 'ի ձեզ։ Այլ առաքելոցն առ 'նա զմի յաշակերտաց մերոց որ վարժ էր արուեստի գրոց, զի ընդ մեր պատասխանի արասցէ. զի լուաք թէ արտաքնովքն խրատեալ է այրն որ եկեալ է 'ի Թագաւորէն։ Այլ գնացեալ աշակերտն մերոյ, մեծ Կաթողիկոսն Հայոց հրամայեաց խօսել ընդ Թորփանէի վասն բնութեանց առաջի իւր. և եհարց մեր աշակերտն ընդ Յոյնն թէ՝ "Ի քանիս բաժանի բնութիւնն։ Այլ նա ասէ՝ "յերկուս. և ասէ՝ "յորս. ո՞. և Թորփանէ ասէ. "յանձնաւորութիւն և յանանձնաւորութիւն։ Այլ նա ասէ. "Այդ երկու բնութիւնք որ դուք ասէք, ո՞ր է. անձնաւորն թէ անանձնաւորն։ Այլ կարկեցաւ զբերանն ժամս տարակուսեալ, և ապա ասէ. "Ո՞չ ինչ կայ մեր և արտաքնոցն կարգի և հարցափորձութեանց։ Թող զայդ։ Այլ Կաթողիկոսն պարսաւեաց զնա և ասէ. "Այս ընդէ՞ր վազվազես, երկուցեալ 'ի կարանաց երկոցունց. եթէ ասացեալն եկեալ ես, զի՞նչ խորաչիս. 'նմանակեալս յերկոցունցդ՝ Աստուածաշունչ գրոց և յարտաքնոցն՝ արդ էս զերկչոտ։ Այլ այսպէս խօսելով զբերանն առ ուրս՝ յամօթ լինէր ստուգանեալ իմաստասէրն Թորփանէ (1)։

(1) Թեորփանեայ գիրք որ զայն խնդրոյ. գլխովին ընդհակառակն պատմէ, զյաղթանակել իւր 'ի բանս և զպար-

ռակլի և պատանդս, զի տուային նմա հարկս. զի տակաւին չէր բաւական Յուստինիան կը-ռուիլ ընդ Թագաւորին Խոսրովաղէմի: Եւ հա-ւանեալ Թագաւորին, և առեալ զոսկին և զպատանդսն դարձան, Թողեալ զՅոյնսն ան-դէն, որ և ոչ իշխեցին յամել անդէն, այլ առեալ զնաւսն դարձան. և կալաւ զնոսա ձմեռն և բազումք կորեան 'ի ծովուն:

Ի նոյն Թուին եղեւ շարժ ահագին յա-մառնային յեղանակին 'ի յունիսի ԻԹ, 'ի տօնի սուրբ առաքելոցն Պետրոսի և Պաւղոսի, յերրորդ ժամուն՝ 'ի ժամ պատարագին շար-ժէր երկիր 'ի հիմանէ, և Թուէր Թէ 'ի վեր է 'ի բարձրանալ և 'ի վայր է 'ի խոնարհել. և եւայր երկիրս մինչև ցինն ժամ աւուրն: Եւ էաք մեք 'ի վանք Մար Հանանեայ (Մ. Անանի-այի), և անկաք 'ի վերայ երեսաց մերոց, և հրամայեցաք զի յեկեղեցւոյն մի ոք ելցէ մինչ 'ի դադարել բարկութեանն. և զճշմա-րիտն արժան է ասել, դադարման ակն ոչ ունէաք, զի ամենայն ոք կարծէր եթէ հա-սեալ է վախճան աշխարհիս (1). Իսկ 'ի յինն ժամ աւուրն յիշեաց Աստուած զա-

(1) Յայսմ ամի (1170) ոչ միայն զԱնտիոք, այլ և զՏրի-պօլ, զՏրապոլիս զԵմէսս և զԲերիա Միսանեաց շարժն շարա-շար աւերմունք շինուածոց և հաստատութիւն բերդից, յորս և բազումք կորուսին զկեանս իւրեանց. և երկիւղն գանտա-տանէին Ասոր. ծոց, ասէ Գուլիելմոս Տիւրացի. դադարեցաւ-ցանէր զաղաւաղքայինս որ 'ի մէջ քրիստոնէից և իսլամաց.

բարեշնորհական խնամովն և հաստատեցաւ երկիր, և հոգի կրաք և ուշաբերեցաք. և էր տեսանել զամենայն ակն յարտասուս և ամենայն լեզու բերէր գոհութիւն Աստուծոյ։ Նորա եկն եհաս համբաւ 'ի Հալպայ՝ թէ փլաւ պարիսպն և բերդն և պատուաւորք երկրին կլաւ զբաղաքումս, և սեաւ ջրով լաւ քարվաքըն, և մեռան 'ի նմա անհամար բազմութիւնք, և փլան ամենայն ձեռագործ շինուածք, և մնաց մի եկեղեցի։ Եւ խնդրեաց արդար դատաստանն Աստուծոյ զվրէժ արեան քրիստոնէից, զի յերբեմն զանազան վտանգաւոր լինէին 'ի նմա ազգք քրիստոնէից՝ գինք արեանն Աստուծոյ. թողում ասել զզօրքն Սողոմոնի և զանօրէնութիւն ջրակարոյս հերակլիցն մինչև յուտհատէին բազումք 'ի դատաստանէն Աստուծոյ տեսանելով ըզչարիս նոցա։ Նոյնպէս և յԱնտաք, զի բազում շինուածք փլան և եկեղեցին Յունաց փլաւ 'ի վերայ պատարագողացն. փլաւ և սուրբ Պետրոս (եկեղեցին), և Երիմսն զգեցաւ քուրձ և ամենայն բնակիչք քաղաքին գնացին անկան առաջի Պատրիարքին խըրեանց՝ զի մնաց 'ի քաղաքն։ Եւ նա ասէ. « Մինչ ոչ ելանէ շպատրիարքն Յունաց, ես աչ մտանեմ 'ի նա. » և յորժամ գնացին հանել զնա, տեսին զի 'ի փլմանէ եկեղեցւոյն խոցեալ էր և մերձ էր 'ի մահ. և հրամայեաց

(պատրիարքն Լատինաց) բառնալ և ընկե-
նուլ յարտաքս, և արարին այնպէս. և մե-
ռաւ արտաքոյ քաղաքին. և ապա եմուտ
պատրիարքն Պռանկաց Հռոմի (1) ՚ի քաղաքն։
Եւ սկսան շինել զփլածսն։ Նոյնպէս և յամե-
նայն երկիր բազում աւեր և կործանումն ե-
ղեւ բերդից, եկեղեցեաց և քաղաքաց և
գեղից ՚ի նոր և յանլուր և յօտար շարժմա-
նէն. բայց ողորմութեամբն Քրիստոսի յԱն-
տաք և յամենայն ծովեզերեայսն մնաց եկե-
ղեցիքն ուղղափառաց՝ ոչ վասն բարի գործոցն
մերոց, այլ վասն սուրբ Հարցն աղօթից և
նահատակութեան նոցա։

Ի Թուին Նսարւոց ՌՆՁԲ (1482) և Հայո-
ցըն ՈԹ (609), մեռաւ Խուդբադին աթաբա-
կըն Մօսլոյ և ամենայն Աթուրացւոց. և
ելաւ Նորադինն եղբայր նորա և չոգաւ ՚ի
Մծբին և առ զնա առանց պատերազմի,
նոյնպէս և զՍինճարն։ և ուրախացան Փռանկ-
քըն (2) յոյժ, զի սիրէին զնա որպէս զօրինա-
պահ, զի գինի ոչ ըմպէր, և ընդ սահման
աղօթից նոցա ոչ անցանէր. և ասէին զնա
մարգարէ։ Եւ նա ՚ի պատճառս ուրախու-

(1) Այն է Եմրի կամ Ամաուրի պատրիարք. զորոյ և
վերագոյն յիշատակեաց զանելութիւնն զոր ունէր ընդդէմ
պատրիարքին Յունաց։

(2) Փռանկքն են Ֆրէրք կոչեցեալ ազգն կրօնաւորաց
Տաճկաց։

թեան ազգին Թուրքաց և Տաճկաց առնայր զքրիստոնեայսն, և աւերել տայր զնորաշէն եկեղեցիսն որ 'ի ժամանակս նորա շինեալ լինէր, մինչ մեռաւ խալիփայն Մսթնջէ (1) և առ զպատիւն Մուստադին որդի նորա. և սա արգելեաց 'ի քակելոյ զեկեղեցիսն այսու պատճառաւ։ Քանզի յորժամ եղեւ նոր խալիփայն, գրեաց առ նա Նորադինն՝ թէ «Լցաւ սահման փեղամբարին Մահմետի, որ գրեաց թէ՝ զհինգ հարիւր ամ ոչ կամի Տէր զմիջումն քրիստոնէից. և արդ կատարեալ է թիւ սահմանին այն, պարտ է մեզ այսուհետեւ բառնալ զքրիստոնէութիւնն Ի յԱստուծոյ ազգմանէն. գրեաց 'ի թղթին թէ՝ «Հրամայեա ինձ գալ առ քեզ որ խորհինք վասն այսոցիկ»։ Իսկ նա յորժամ ըն-ռաւ զթուղթն և հաւաքեաց զքանն, թուեցաւ նմա թէ նենգութեամբ գայ առ նա՝ զի սպանցէ զնա և ինքն առցէ զպատիւ խալիփայութեանն. որպէս եբարձ զԵգիպտոսի խալիփայութիւնն հրամանաւ իւրով. վասն այսորիկ գրեաց առ նա խստագոյն պատասխանի, և պարսաւեաց զնա. և գրեաց և առաքեաց յամենայն աշխարհ՝ զի շինեսցին եկեղեցիք և համարձակ լիցին քրիստոնեայք

(1) Մոսթէնձէտ Եուսուֆ որդի Մուքթաֆեայ որ տէրեաց ամս 24, և յաջորդեաց որդի նորա Մոստադաֆի Հասան յամի Փրկչին 1169—1170։

յամենայն ուրեք։ Եւ զայս արար հակառակ Նորադնին. և սպան զՄըլէհն [1] որ կամակից էր Նորադնին, և եհան ՚ի բանտէ զորդիսն Թուռմայի և ետ նոցա զեկեղեցին իւրեանց զոր առեալ էր զբռնաւորութեամբ։

Իսկ Նորադինն գնաց պաշարեաց զՄօսլ, ուր կային հինգ որդիք եղբօրն նորա, և ետես որ յաղագս ժամանակի պէտք էին առնուլ ըզքաղաքն, խօսեցաւ ընդ նոսա ՚ի խաղաղութիւն. և երդուաւ որ թողու զքաղաքն և զերկիրն եղբօրորդւոցն՝ եթէ բացցեն նմա զքաղաքն և մտցէ ՚ի նա խաղաղութեամբ։ Եւ լուան նմա և ածին զնա ՚ի քաղաքն. և ել ՚ի կլայն և էառ զամենայն զանձսն որ կային անդ, և եդ զիւր մարդիկն ՚ի կլայն՝ զի յանուն նորա պահեսցեն. և զաշխարհն և զքաղաքն բաժանեաց եղբօրորդւոցն, բայց զամենայն ամուրսն արար ընդ ձեռամբ իւրով և գնաց։ Եւ յայնմ հետէ սկսաւ ծանրել ըզհարկ քրիստոնէից, և ետ հրաման մի՛ երկայնել քրիստոնէից զհերս իւրեանց զի ճանաչաւորք լիցին. Նոյնպէս հրամայեաց Գ հուռ ազգին կարմիր կարկատան կարել ՚ի փակեղն կամ ՚ի յուսն զի ճանաչիցին։

Յայսմ ժամանակի գնաց Եմիր (Ամուրի) Թագաւորն Երուսաղէմի ՚ի Կոստանդնու-

(1) Ոչէրն առանց երկբայութեան նշանակէ Մըլէհ, որպէս անդ օրինակ մի՝ Վաղէր։

պօլիս, և բազում գանձիւք դարձաւ յԵրուսաղէմ։

Ի թուին Ասորւոց ՌՆՁԳ (1483) և Հայոց ՈԺ (610), Խլիճ ասլան եկն 'ի Մելտենի և ոչ կարաց առնուլ զնա. և առեալ գերի անձինս երկոտասան հազար և դարձաւ անդրէն։ Իսկ Նորադինն ժողովեալ զամենայն ամիրայսն և զԻսմայիլն Դանիշմանայ և զՇահն Շահ եղբայր Խլիճ ասլանայ և գնացին 'ի Կեսարիա. և սուլտանն ոչ կամեցաւ ելանել ընդդէմ նոցա, և աւարեցին զաւանս զի տացէ յաշխարհէն բաժին եղբօր իւրոյ։ Եւ որդիք Շահն Շահին կային առ նմա հինգ. և նա եառ զմի յորդւոց նորա՝ եղեն և խորովեաց և առաքեաց առ հայրն և ասաց. «Թէ ոչ երթաս այտի, զչորս որդին դոյնպէս առնեմ։» Եւ յորժամ տեսին զայն՝ երկեան, և արարեալ խաղաղութիւն՝ դարձան։ Եւ կալաւ ցաւ զՆորադինն և հիւանդացաւ, և անկաւ շփոթ մեծ, և բազում գործակալք յարեան 'ի վերայ իրերաց և կոտորեցին զմիմեանս. և եղեւ յոլով վնաս և պակասութիւն քրիստոնէից վասն շփոթից իւրացն այնոցիկ։

Ի թուին Ասորւոց ՌՆՁԴ (1484) և Հայոցն ՈԺԱ (611), 'ի խաչին ամիսն եղեւ պաղ և ձիւն սաստիկ, նոր 'ի լերս և 'ի տեսանելոյ. զի քսան և եւթն թիզ չափեցին զթանձրութիւնն. որ և 'ի Հնդիկս, որ բնաւ ձիւն ոչ

գոյ, առեն Թէ չորեքտասան Թիզ չափեցին
զձիւնն. և պաղեցան աղբիւրք, և ձկունք
ծովու մեռանէին, և ջնջեցան Թռչունք և
երէք 'ի ծմակ տեղիսն, և ընտանի անասնոց
եղեւ մեռանիլ 'ի չգոյէ կերակրոյ, և այրե-
ցաւ ամենայն բոյս սերման: Եւ 'ի գալ ա-
մին եղեւ սով մեծ և կարօտուԹիւն յոյժ,
մինչ իշխանքն Կապադովկացւոց սպանին զԻս-
մայիլն զամիրայն Սեւաստոյ, և առին զամե-
նայն ընտանիս նորա, և կոտորեցին անձինս
հինգ հարիւր, և առին զամբարեալ ցորեանն
և զամենայն ստացուածս նորա և ապրեցան
'ի նեղուԹենէ սովոյն. և ծանկեցաւ գործ ըս-
պանման նոցա զչորս ամիս վասն ձմեռնային
յեղանակին. և 'ի գալ գարնանն լուան ամե-
նայն ազգքն մերձակայ, և չար Թուեցաւ և
տարակուսեցոյց լուրն զբազումս: Եւ ոմանք
'ի բնակչաց աշխարհին առաքեցին 'ի Դա-
մասկոս առ Տանուն ամիրայն Կեսարիոյ, զոր
հալածեալ էր Խլիճ ասլան բազում ազգակա-
նօք, և կոչեցին զնա. և եկն և էառ զիշխա-
նուԹիւն Սեբաստիոյ, և էառ 'ի բազմաց ըզ-
վրէժ ազգականաց իւրոց վասն անողորմ ըս-
պանման նոցա: Եւ լուաւ Խլիճ ասլան և
եկն 'ի վերայ Տանունին 'ի Սեբաստիա. և
Տանուն յուսացաւ 'ի Նորադինն՝ կանգնեալ
'ի հիւանդուԹենէ իւրմէ որպէս յարուցեալ
'ի մեռելոց. և անկաւ առ նորա դարձեալ 'ի

վերայ աշխարհի, և ժողովեալ բազմութիւն զօրաց գնաց 'ի Սեբաստիա. և զարհուրեալ սուլտանին եթող զքաղաքն և գնաց։ Եւ Նորադինն դարձաւ և էառ զՄարաշ և զԲեհեսնի և զԱնտաւն։ Եւ լուեալ զայս Խլիճ ասլան, գայ բազմութեամբ յոյժ 'ի վերայ Նորադնին. և Նորադինն գնաց ընդ առաջ նորա և նստաւ 'ի վերայ Գահնայ(1)։ Եւ եկն սուլտանն և նստաւ 'ի միւս կողմանն մերձ առ նմա. և երկեան 'ի միմեանց և ոչ պատերազմեցան զբազում աւուրս։ Եւ անկաւ սով 'ի բանակն երկոցունց և բազումք մեռան 'ի սովոյ. և յետ բազում աւուրց անցելոց եթող սուլտանն զՏանուսնն կալ 'ի հընազանդութիւն Նորադնին, և արարին սէր և դարձան 'ի տեղիս իւրեանց։

Ասացից փոքր ինչ վասն աղանդոյ միոյ որ երեւեցաւ յաւուրս մեր նախ քան զվախճան Կաթողիկոսին Ներսիսի, որ եղեւ այսպէս։ Եղբարք երկու, անուն միումն Յուսիկ և միւսոյն Գէորգ, և երէց մի Կարապետ անուն, գնացին 'ի կողմանց Միջագետաց առ սուրբն Ներսէս, և մեղադրեցան 'ի նմանէ վասն անկարգութեան համբաւոյ նոցա. և եկին 'ի նմանէ տրտմութեամբ, և ապստամբեցին և գնացին յՍուռհա, և սկսան բամբասել զտէր Ներսէս և հայհոյել՝ եթէ

(1) Ջահանէ Ճիհան գետ առ սահմանօք Կիլիկիոյ։

զաւազանդն Աբմոնի կախարդի ունի, և առնէ արծաթով ձեռնադրութիւն. և լինքեանք եղեն Բաղկեդոնիկք, և խաբեցին չորս հարիւր տուն յԱսորհայոց զկնի իւրեանց և անուանեցին զնոսա Յուլիկեանք։ Եւ լուաւ հայրապետն Ներսէս. և գրեաց առ իշխան քաղաքին զի հալածեսցէ զնոսա. և իշխանն Ասոհայոց եհան զնոսա անտի, և նոքա գնացին 'ի Հալպ առ Նորադինն, և առին անտի համարձակութիւն և դարձան։ Եւ ես կոչեցի զնոսա առ իս և մեղադրեցի, և հաստատեցի զնոսա յուղղափառութի՛, և առաքեցի զնոսա իմ պատուաւոր արամբք առ տէր Ներսէս, և աղաչեցի հաշտել ընդ նոսա։ Եւ յորժամ գնացին նոքա, վճարեալ էր տէր Ներսէս 'ի կենաց սորա և հանեալ 'ի Քրիստոս 'ի թուին Յունաց ՌՆՁԵ (1485) և Հայոցն ՈԺԲ (612). յԱստուածածնին ամսեանն 'ի յութ, յաւուր հինգշաբաթւոջ։ Եւ Յուլիկն այն անօրէն դարձաւ և գնաց յԱնտաք և մկրտեցաւ և դարձեալ եղև Բաղկեդոնիկ (1)։

(1) Առ գլխաւորն այսր աղանդոյ թուի ինձ ակնարկել բանք թղթոյ սրբոյն Ներսէսի, մակագրեալ « առ ժողովն [illegible] »։ Եւ զի ասէ Միխայէլ՝ եթէ բամբասէին զոսկերն արծաթով առնել զձեռնադրութիւնն ըստ օրինակի Սիմոնի կախարդի. յայտնէին բանք երկրորդ թղթոյ սրբոյն յորում 'ի մէջ բերէ զբանս յանդուգն ժողովին որ ասէր եթէ « կաշառն զոր առնուս կաշառացուցանէ զքեզ քո », և վճարեալ զամբաւն Աստուածոյ անձանցին՝ որ բերեր շարեալ [illegible] են ։ Տես 'ի գիրս

Իսկ տէր Ներսէսի կայր երկու եղբարք որ-դի եպիսկոպոսունք, և առաջ եղբարք որդին չէր մերձ մահու հօրեղբօրն, և կրսերն ա-ռեալ զձեռնադրութիւն նորա՝ քարոզեցաւ Կաթո-ղիկոս: Եւ յորժամ լուաւ զայն առաջն, եկն ՚ի կռիւ կաթողիկոսութեան, և ոչ թողին ըզ-նա ՚ի բերդն. և նա գնաց դարձաւ առ փե-սայն իւր առ պարոն Լեւոն. և Լեւոն էառ զնա և տարաւ առ Կոստանդին, և նորին օգ-նութեամբն՝ եմուծ զնա ՚ի Հռոմկլային. և նըս-տաւ յաթոռ հայրապետութեան հօրեղբօ-րըն՝ Գրիգոր անուն: Եւ ՚ի յաւուր ձեռնա-դրութեան իւրոյ կոչեաց զմեր եպիսկոպո-սունսն զտէր Գրիգորէս Բեսնոյ եպիսկոպոս, և զտէր Վասիլիոս Մարաշոյ եպիսկոպոս, և պատուեաց զնոսա, և կացոյց առ ինքն ձեռա-նագրութեն իւրոյ: Եւ յորժամ ձեռնադրեցաւ առաքեաց առ մեզ երկու եպիսկոպոս ըստ հին սահմանին մերոյ զոր ունիմք՝ ի միջի մե-րում, որ յորժամ Ասորւոց ուղղափառ պատ-րիարքն ձեռնադրի, առաքէ առ Հայոց Հայ-րապետն զդաւանութիւնն իւր. նոյնպէս և Հայոց կաթողիկոս լեալ, առաքէ առ պատ-րիարքն Ասորւոց զդաւանութիւնն իւր: Եւ ես ուրախ եղէ և խնդացի, զի այր գովելի և գիտնական էր. բայց ըստ կանոնաց տակա-

Ընդհանրական Թղթոց. յերես 211. տպեալ յԵրուսաղէմ. յա-մի 1871.

մի մեղադրեցի, թէ յորժամ անուանեալ էր հայրապետ մի, պարտ էր միայն 'ի նոյնն։ Այլ և աղաչեցի զնա՝ թէ բարձ զկեղտ անուն արծաթասիրութեան յազգէդ երեւելի և հռչակաւոր, և ամենեւին անխառն և պարկեշտ՝ բայց 'ի միոյդ։ Եւ յանձն էառ և խոստացաւ առնել։ Այլ և աղաչեցի վասն անուանեալ կաթողիկոսին որ յառաջ քան զնա ազգականին իւրոյ, զի պատուով կալցէ զնա 'ի տեղւոջ ուրեք, զի բազմութեան ազգիդ պարտ է երից և չորից հայրապետաց։ Եւ զայն եւս խոստացաւ և կատարեաց՝ առաքելով զնա 'ի Լամբրունն՝ յայով մասն վիճակի հաստատեալ 'ի նա, որում անուն էր Գրիգորէս (1)։

(1) Ոչ ոք 'ի մերոց պատմագրաց յիշատակէ երկուց կաթողիկոսաց միանգամայն գրաւել զաթոռն զկնի Շնորհալւոյն. քանզի, ասէ Միխայէլ, եթէ Գրիգոր Ապիրատ (որդի Շահանայ եղբօր Շնորհալւոյն) կոչեցաւ յաթոռն. կամ լաւ եւս՝ ինքնիշխանիր եղեւ, և Գրիգոր Տղայ (որդի Վասլի միւս եղբօր Շնորհալւոյն) պաշտպանութեամբ և հրամանաւ Նուր—Էտտինի ձեռնադրեցաւ կաթողիկոս 'ի Հռոմկլայ. իսկ Վարդան ասէ (յէր. 169), Գրիգոր Տղայ առնու զգահն կաթողիկոսութեան հաճութեամբ ազգին, և Գրիգորէս Ապիրատն կոչեցեալ՝ չոգաւ 'ի Լամբրոն և խնամէր զՏարսոնի վիճակն, որ և յամի 1195 նստաւ յաթոռն զկնի Գրիգորի Ե Գահավիժի։ Նոյնպէս և Վահրամ դնէ. նախ զԳրիգոր Տղայ, յետոյ զԳրիգորիս Գահավիժն, ապա զԳրիգոր Զ զԱպիրատն, զոր եւս ձեռնադրել Լեւոն Բ յետ տիրելոյ Հռոմկլայի։ Միքայէլ ասէ եթէ Ներսէս Շնորհալի պատուիրեալ էր զԳրիգոր Տղայն նստուցանել յետ մահուան իւ-

Ի նոյն թուականին ՌՆՁԵ (1485) և Հայոց ՈԺԲ (612), Նորադինն հրաման ետ զօր ժողովել յամենայն աշխարհաց յԵմանացւոց (Եէմէն) և յԵգիպտոսացւոց և յԱթուրացւոց և 'ի Կապադովկացւոց և 'ի Հայոց և 'ի Միջագետաց, զի բարձցէ զթագաւորութիւնն որ յերուսաղէմ զՖռանգացն, և զԿղիծ Աս-լանայ զսուլտանութիւնն: Իսկ ինքն հպարտացեալ էր, զբազում ժամս կարդայր և աղօթէր լռութեամբ. և ոչ տայր ըմպել գինի 'ի բանակին իւր, և ոչ ձայն երգոց և խաղուց և կաքաւչաց լսելի լինէր 'ի զօրս նորա. և վասն այսպիսի առաքինութեան ակըն ունէր թէ Աստուած խօսի ընդ նմա. զի ասէին խաբեբայք Ճէխեր, թէ "Տեսաք ըզքեզ զի ելանէիր յերկինս". և այլք թէ "Տեսաք որ հրեշտակ խօսէր ընդ քեզ". և նա հաւատայր նոցա: Իսկ մինչ 'ի յայսպիսի միտս հպարտացեալ էր և կայր 'ի Դամասկոս Նորադինն, և ժողովէին յամենայն կողմանց հեծելոց բազմութեանց առ նա՝ որոց ոչ էր թիւ, յանկարծակի հարաւ 'ի Տեառնէ և մեռաւ՝ թագաւորեալ ամս քսանևութ: Իսկ առ զթագաւորութիւնն Մելիք Սալեհն որդի նորա, և ցրուեցան զօրքն յիւրաքանչիւր տեղիս: Իսկ թագաւորն Երուսաղէմի (Ա-

քոյ: Տես և 'ի Ներբողեանն Ներսէսի Լամբրօնացւոյ 'ի վերայ Շնորհալւոյն:

մաւրն) եկն 'ի վերայ Դամասկոսի և գերեաց զաշխարհն, և խոստացան Դամասկացիքն տալ նմա հարկս իբրեւ զառաջինն, և նա ոչ կամէր դառնալ նախ քան զառնուլ քաղաքին. բայց մեղքն քրիստոնէից ոչ ետ թոյլ, զի կալաւ զնա ցաւ մահու, և առեալ հարկ 'ի Դամասկոսէ՝ դարձաւ 'ի յԱքայ և անդ մեռաւ՝ թագաւորեալ ամս երկոտասան, զկնի քառասուն աւուր մահուան Նորադնին. և եղեւ տրտմութիւն ամենայն քրիստոնէից մահն նորա: Եւ թագաւորեաց որդի նորա Պաղտինն ամաց հնգետասանից, և առաքեաց աբար սէր ընդ որդի Նորադնին: Եւ յորժամ լուաւ Խլիճ ասլան զմահն Նորադնին, եկն 'ի Սեբաստիա և առ զնա և զԿոմանա և զՆիկսեսարն, և ջնջեաց զմնացեալ ազգն Դանիշմանայ, և բարձաւ իշխանութիւն տանն Դանիշմանայ՝ որ սկսաւ 'ի թուին Ասորւոց ՌՅԿԶ (1366). և աստ վախճան էառ՝ տեւեալ ամս հարիւր քսան և երկու. և կացին վեց գլխաւորք զկնի միմեանց: Նոյնպէս եւ 'ի Մօսլայ Մեփարկինն (Մէյֆ—Ֆարին Պաղի) եղբարքն Նորադնին, և առ զՄծբին և զՌաղա և զԽառան. և հնազանդեցաւ նմա եղբօր որդին իւր 'ի Հալպ, և դարձաւ և եբարձ զեդեալ կանոնք Նորադնին, որ գրեալ էր յամենայն մզգըթի վերայ՝ մի ըմպել գինի Մուսլմանի. և նա հրաման ետ տաշել զգիրն, և համարձակ

եւս խմել յամենայն. անգէս յայտնապէս ։

Յայսմ ամի Սալահադինն որ տիրեալ էր Եգիպտոսի, տիրեաց և իշխեաց ներքսագոյն Արաբիոյ և մասին ինչ 'ի Նուբեաց աշխարհէն ։ Նա 'ի սոյն ամի քերդեր զոր ունէին Հայք յերկիրն Սասնոց, նեղեալ 'ի Մուփարկնայ ամիրայէն, տուեալ 'ի Շահի Արմէնն յամիրայն Խլաթայ, զայն որ ունէին 'ի հին ժամանակաց ։

Ի թուին Ասորւոց ՌՆՁԶ (1486) և Հայոց ՈԺԳ (613), սոյնպէս իշխանն [1] Կիլիկեցւոց կամօք իշխանաց իւրոց 'ի բերդն, և բերին զՌուբէն որդին պարոն Ստեփաննէի որ էր 'ի Տարսոն, և իշխեաց 'ի վերայ աշխարհին ։ Նա չարչարեաց և սպան զսպանողն հօր եղբօր իւրոյ, զի սոսէն թէ սպանին և արկին շանց. և վասն այսր նախատանաց ոչ կարաց ներել նոցա [2] ։

Նա 'ի նոյն ամի ել Սալահադինն յաշխարհէն Եգիպտոսի և եկն 'ի Դամասկոս 'ի պատ-

(1) Նա ինքն է Մլեհ եղբայրն Թորոսի և Ստեփաննեայ, որ զկնի միոյ ամի մահուան Թորոսի բռնութեամբ կալաւ զիշխանութիւնն Կիլիկիոյ, և վարեալ զամս իբր հինգ, ոչ կարացեալ տանել իշխանաց գլխաւորաց վասն և զանիրաւութեանս նորին սպանին 'ի թուին Հայոց ՈԻԳ. և զորդին Ստեփաննեայ զՌուբէն որ կայր ամրացեալ Բոնկարեա իշխանին քեռւոյ իւրոյ 'ի Պապեռոն, դնեն յաթոռ ։ Սմբատ, յեր. 102 ։ —Վահրամ, յեր. 211 ։

(2) Սմբատ, յեր. 102—105 ։

ձառս օգնութեան Մ՛ելիք Սալէհին, և առ ըզ-
Դամասկոս և գնաց 'ի Հալպ. և ղարհուրե-
ցաւ Մ՛ելիքն 'ի նմանէ. և նա առաքեաց առ
նա և ասէ. «Ես քո ծառայ եմ, և եկեալ եմ
յօգնութիւն տեառն իմոյ՝ կալ ընդդէմ
թշնամեաց քոց:» Եւ ոչ հաւատաց նմա, և
ոչ եբաց զքաղաքն նմա. և նա դարձաւ 'ի
Հալպայ և էառ պատերազմաւ զՀամս և
զՀամայ, և եհան զՖռանգ ծառայսն որ 'ի
Դամասկոս և վաճառեաց զիւրագին: Եւ եա
բերել ոսկի բազում 'ի Մսրայ, և կուտեաց
զօրս բազում: Եւ Սեփադինն լուաւ զժո-
ղովելն Սալահադինին, և եկն 'ի վերայ նո-
րա խորոխտանօք, և կոչէին զնա շուն կատա-
ղեալ որ հալչէ 'ի տէրն իւր. և փութային
'ի գալն զի մի փախիցէ 'ի նոցանէ. և նա ա-
ռաքէր առ նա և ասէր. «Մի կռուիք, մեք
մարդիկ եմք և մէկ հաւատ, և հնազանդ եմ
ձեր:» Եւ ոչ լուան նմա, այլ չոգան բախե-
ցան 'ի վերայ նոցա. և նոքա մարտեան ընդ
նոսա, և սկսան կոտորել զզօրսն Սեփադինին,
և փախեան յերեսաց նոցա: Եւ յորժամ ե-
տես Սալահադինն թէ յաղթեցան Մօսլիքն,
արգել զզօրս իւր 'ի կոտորելոյ զնոսա, և ա-
սէ. «Խնայեցէք զի մեկ ազգ եմք:» Եւ անց
'ի մէջ նոցա և արգելեաց զզօրս իւր, և զըմ-
բռնեալ ծառայսն հանգոյց և արձակեաց. և
վասն այսորիկ անկաւ ահ և երկիւղ 'ի վերայ

ամենեցուն ։ Մանաւանդ զարհուրեցաւ Մեհքր Մալէհն և եհան(1) զՖռանկ ծառայսն և վաճառեաց ամպարու, զկոմսն Տրապօլեաց ութսուն հազար դահեկանի, զԳօշլին որդի Գօշլինին յիսուն հազար, զԱնադա թըթինձն հարիւր հազար ։ Եւ արար սէր ընդ Լևոնայ զի օգնեսցեն նմա ։

Իսկ Սեփադինն դարձեալ արար ժողով և առ ընդ իւր զտէրն Մերտինայ և զՀարանբէքայն, և եկն 'ի վերայ Սալահադինին վաթսուն հազարաւ ։ Եւ Սալահադինն ունէր երկոտասան հազար, և առաքեաց առ Սեփադինն և ասէ . « Մի գար 'ի վերայ իմ և մի կռուիր ընդ իս . զի ինձ չէ անարգանք թէ յաղթիմ 'ի յիմ տեառնէդ . բայց քեզ մեծ կորանք է՝ թէ յաղթիս 'ի ծառայէ քումմէ . » և ոչ լուաւ նմա ։ Իսկ ապա Սալահադինն զապա խօսեցաւ ընդ ամիրայսն խոստանալով նոցա բարի առնել . և յորժամ խմբեցաւ պատերազմն, դարձեալ զօրացաւ Սալահադինն և պարտեցաւ Սեփադինն, և փախեան առաջի նոցա . և Սեփադինն նստեալ յուղտ փախեաւ 'ի Մօսլ . և Սալահադինն առ ըզ-Մնբէճ, և եկին 'ի հնազանդութիւն նմա տէրն Նթափայ և Թըլբաշարայ ։ Եւ գնաց 'ի Ազազն (2) և կռուէր 'ի վերայ նորա . և ե-

(1) Ըստ պատմութեան Արաբացի պատմագրաց ոչ Մեհքր Մալէհ, այլ Սալահատտին հաներալ զգերիսն վաճառեաց ։
(2) Ազազ քաղաք է մերձ 'ի Հալպայ ։

լին յանկարծակի Հաշիշիքն[1] ՚ի վերայ նորա և խոցոտեցին զնա և ոչ մեռաւ. և ինքն ըս-պան զնոսա, և առաքեաց զօր ՚ի վերայ Հաշի-շեացն, և գերեաց զերկիրն նոցա, և զԱզազն եառ պատերազմաւ և գնաց նստաւ ՚ի վերայ Հալպայ։ Իսկ առաքեցին Հալպցիքն առ Փռանգսն, և եկն Մնաղոն որ վաճառեցաւն և կոտորեաց ՚ի զօրացն Սալահադինին, և ա-րար զնա փախստական. և Սալահադինն դար-ձոյց զԱզազն ՚ի Հալպ, և ինքն գնաց յԵ-գիպտոս։

Ի թուին Ասորւոց ՌՆՂԸ (1487) և Հայոցն ՈԺԴ (614), մեռաւ Նաջմադինն (Նէճմէտ-տինն) տէրն Մերտինոյ՝ կեցեալ իշխան ամս քսանևերկու, այր բարի և քաղցր ՚ի վերայ քրիստոնէից. և առ զիշխանութիւնն Խուտ-բէդին որդի նորա։

Ի նոյն ամի վարազ մի եհար զԹագաւո-րըն Յունաց ՚ի յորս և համբաւեցաւ՝ թէ մեռաւ անտի. և Կիլիճասլան ապստամբեաց յաշխարհն նորա և գերեաց զքաղաքս։ Իսկ Թագաւորն ողջացաւ ՚ի խոցոյն և առեալ զօր բազում յոյժ, և կային առ նմա յօրդւոցն Դանիշմանայ փախուցեալ առ նա, արար ըն-

(1) Հաշիշիքն էին իբր աղանդաւորք ոմանք հպատակք գլխաւորի միում որ կոչէր Ծերունին լերին, որոյ կուրօրէն ամենայն հրամանացն հպատակէին՝ զմահ ՚ի բուռն ունելով միշտ։

քաղում յոյժ, և պաշարեցին զնոսա աւուրս հինգ, և խոցոտէին զնոսա գլօք քարանցն և նետիւք 'ի տուէ և 'ի գիշերի, և սպանին 'ի նոցանէ հազարս և բիւրս՝ մարդ և գրաստ, և առին զանձինս նոցա հարիւր հազար բեռնաւոր ձի. և երկեան յոյժ, և տկարացան և տուաքեցին առ սուլտանն և ետուն երեք քաղաք զոր ինքեանք չինեալ էին. և խնդրեցին ակր, և աղաչեցին զի զերծուսցէ զնոսա 'ի նեղութենէ անտի։ Եւ կամեցաւ սուլտանն, և առաքեաց երեք ամիրայ հեծելօք՝ հանել զնոսա անտի և տանել 'ի Կոստանդինուպօլիս խաղաղութեամբ։ Եւ ելեալ առ նոսա ամիրայքն 'ի գիշերի և հալածեցին զԹուրքմանսն և հանին զնոսա անտի, և յուղի անկեալ գընային։ Եւ Թուրքմանն երթայր աստի և անտի, և անարգէին զսուլտանն զի արար սէր ընդ նոսա՝ որ պաշարեալ էին 'ի ձեռս նոցա, և հետզհետէ բախէին յանկարծակի և սպանանէին, և յափշտակէին. այլ և 'ի հեռաստանէ նետաձիգս լինէին և սպանանէին։ Եւ Յոյնք ասէին ընդ ամիրայսն որ տանէին ըզնոսա, թէ՝ «Ի ձեռն է ծախուցն մեր՝ թէ յարափանչացդ։» Եւ նոքա երդնուին թէ՝ «Ոչ է 'ի մէնջ, այլ անհաւանք և վայրենամիտք են և ոչ լսեն մեզ։» Եւ մինչ 'ի Կոստանդինուպօլիս պակասեաց 'ի նոցանէ քսան հազար այր։ Եւ այսպէս պակասեալ 'ի զօ-

րաց և լի ամօթով գնաց Մանկին յերկիր իւր, այն որ ջանայր երեւելի պատերազմաւ յաղթել աշխարհի, և իմանալի խորհրդով՝ ուղղափառաց եկեղեցւոյ։ Յետ այնորիկ առաքեաց գանձս բազումս առ սուլտանն, և գնեաց զկենդանի մնացեալսն 'ի զօրաց իւրոց որ կային 'ի գերութեան. և եղև այս 'ի թուին Ասորւոց ՌՆՁԸ (1488) և Հայոցն ՈԺԷ (617)[1]։

Զայսու ժամանակաւ քրիստոնեայք որ կային 'ի Մելիտինի՝ անկան 'ի մեծ նեղութիւն յերկուց պատճառաց, 'ի սովոյ և 'ի չարութենէ, և 'ի խիստ բարուց ամիրային իւրեանց՝ որ մնացեալ էր յազգէն Դանիշմանայ. և ազդ առաւել նոցա եկեղեցականքն, եթէ թշուառութիւնս այս 'ի մեղաց է. զի կատարեալ է բանն Տեառն առ մեզ որ ասէ թէ՝ «Խառնակեցան ընդ հեթանոսս և ուսան ըզգործս նոցա, և եղեւ նոցա 'ի գայթակղութիւն»։ Արդ եկայք դարձցուք 'ի չարեաց մերոց, և աղաչեսցուք զերեսս ողորմածին Աստուծոյ, զի սպառեցաք, պակասեցաք, իսպառ ընչեցաք։ Նա լուան ժողովուրդքն և միաբան պահել և աղօթել արտասուօք, և հրաժարել և պաղատել առ Աստուած։ Նա դադարեաց Տէր 'ի բարկութենէ իւրմէ, և էարկ

(1) Սմբատ, (յեր. 103), յիշէ համառօտ զպարտութիւն Մանուէլի 'ի Խլիճ—Արսլանայ, և զդաշն զոր ընդ նմա կռեաց։

'ի սիրտ ամիրային և զղջացաւ 'ի գործս իւր. և առաքեաց առ սուլտանն և առ 'ի նմանէ զանձս և ետ 'ի նա զՍելորինի, և ինքն ել և գնաց 'ի Խարբերդ. և եղեւ մեծ դիւրութիւն քրիստոնէից և առատութիւն հացի, և ամենայն իրաց ընդարձակութիւն:

Ի թուին Ասորւոց ՌՆՁԹ (1489), ել Սալահադինն յԵգիպտոսէ երեսուն հազար հագած հեծելով, զատ 'ի ստակականացն և 'ի հետեւակացն, և յիսուն և երկու հազար բեռնակիրս զինազարդս զկնի իւր: Եւ եկն 'ի Պաղեստինէ, և կալաւ Փռանգ մի և զենեաց և արեամբ նորա լուացաւ աղօթից՝ և աղօթեաց, և պատրաստեցաւ պատերազմի և աւերման երկրին: Իսկ Թագաւորն Երուսաղէմի Պաղտինն (Դ.) ժողովեաց զամենայն զօրսն իւր, և առաջի նոցա անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց ընդդէմ՝ արեւելից. աղաչէին և զօրքն նոյնպէս. և լացին և կարդացին առ Տէր սրտի մտօք. և երդուան զօրքն առաջի Աստուծոյ և առաջի Թագաւորին ոչ դարձուցանել թիկունս 'ի թշնամեաց, այլ մեռանել յօժարութեամբ 'ի վերայ սուրբ Եկեղեցւոյ. և գնացին 'ի վերայ նոցա: Եւ յորժամ տեսին զբազմութիւն . . . նոցն և հայեցան 'ի սակաւութիւն իւրեանց, իջան դարձեալ յերիվարացն, և մոխրամած երեսօք արտասուեցին և պաղատեցին առ Տէր, և

կազմեցան այնիւ հաւատով, և դիմեցին 'ի
մերձայ նոցա իբրև վարժութիւն յերամս կա-
քաւաց։ Եւ տէր Յիսուս Քրիստոս Աստուա-
ծըն քրիստոնէից եհան հողմն մրրկեալ ըն-
դէմ նոցա ընդդէմ երեսաց Այլազգեացն.
և թափէր զնոսա յերիվարացն, և դարձու-
ցանէր զնոսա 'ի փախուստ առաջի նոցա.
և նոքա կոտորէին զնոսա յանխնայ և ոչ առ-
բեցուցանէին 'ի նոցանէ։ Եւ փախեան և
ցրուեցան Այլազգիքն ընդ կողմն հարաւոյ
յանապատն. և յառաւօտէ մինչև 'ի մտա-
նել արեգականն ոչ դարձան 'ի նոցանէ։ Այն-
պէս և 'ի վաղիւն, և մինչև 'ի հինգ օրն եր-
թային և գտանէին 'ի նոցանէ լքեալ 'ի սովոյ
և թարշուցեալս. և առին զամենայն ծանրու-
թիւն ռազմից նոցա և զկապ և զկարասի, և
լցան և փարթամացան. և ուրախ արար Տէր
զհաւատացեալս իւր, և 'ի համբաւս յաղթե-
բեկ զմէջս . . . նոցին։ Իսկ Սալահադինն
յայն ժամանակս անկաւ 'ի Մսր, և զզեցա-
նեաւ, և փախեցաւ 'ի տանն խաւարի տառապու-
բաղում։

Եւ 'ի սոյն ամի ամիրայն որ կայր 'ի Հե-
րիմն, պատսպարեցաւ 'ի Հալպայ թէ խորհե-
ցան նմա չարիս՝ սպանանել զնա. և խօսեցաւ
ընդ բրինձն Անտաքոյ, և պահանջեաց 'ի նը-
մանէ երդումն զի մի հանցէ զնա 'ի քեր-
դէն, և կացցէ նմա 'ի հնազանդութիւն.

և երդուաւ նմա 'ի խաչն և յԱւետարանն . Իսկ ամիրայն դարձաւ 'ի Հալպայ և տապատա-բեաց և եղև ընդ Մնաքու . Բայց յետոյ զղ-ջացաւ բրինձն , և ստեաց երդմանն , և եբեր ապաշխանօք զՍոթքէն Սիլիկիոյ իշխանն, և գնաց 'ի վերայ Հերմին . և ոչ ետ Տէր 'ի ձեռս նո-րա վասն ստութեան նորա , այլ բաղումք անկան 'ի զօրացն Փռանգաց . և դարձաւ ա-մօթով , և զՀերիմն դարձուցին 'ի Հալպ՝ առեալ երդումն 'ի նոցանէ .

Ի Թուին Ասորւոց ՌՆՂ (1490) և Հայոցն ՈԺԷ (617) , ժողովեցան Փռանգք 'ի Պաղես-տինէ , և գնացին 'ի վերայ Յորդանանու և ե-ջան , և սկսան շինել անդ քաղաք 'ի տեղւոջն որ կոչի տուն Յակոբայ , զի նստեալ առցեն զԴա-մասկոս : Իսկ լուաւ Սալահադինն , և ժողո-վեաց դարձեալ զօրս և եկն 'ի Դամասկոս : Իսկ զի ամիրայն Բալբաքու որ կոչի Սերգակեան քաղաք , որ է Իլիուպօլիս , ապստամբեալ էր , գնաց 'ի վերայ , և երդմամբ և սիրով և խոստմամբ առ զնա և զօրացաւ . Իսկ գնաց 'ի վերայ Նոր քաղաքին , զոր շինեալ էին Փռ-անգք . և զօրքն Փռանգաց մինչեւ 'ի գալն Սալահադինին լքեցին զշինուածս գաւառ նորա , և գնացին ընդ դէմ նորա , և փախուցին զնա մինչեւ 'ի Դամասկոս . և եկն զօրն Փռան-գաց մինչեւ 'ի դուռն Դամասկոսի , և գե-րեաց զերկիրն : Իսկ Սալահադինն քաջալե-

րեալ. եղաւ զհետ նոցա, և կալաւ ’ի նոցանէ հարիւր փրեր. և դարձեալ տատանայնդեալ չոգաւ ’ի վերայ քաղաքին զոր շինէին՝ և կալաւ ’ի նոցանէ հարիւր փրեր, և պաշարեաց զքաղաքն և յաղթեաց նոցա, և ընկէց հուր ’ի քաղաքն և սկսաւ այրել. և կային անդ հինգ հարիւր փրեր Մետորաւն(1) իւրեանց։ Եւ նոքա յորժամ տեսին թէ պարտեցան և յաղթեցան, ընկեցին զանձինս ’ի հուրն և ’ի գետն՝ զի մի անկցին ’ի ձեռս . . . նացն և զմնացեալսն ’ի նոցանէ կոտորեաց Մալահադինն։

Ի թուին Ասորուոց ՌՆՂԱ (1491) և Հայոցըն ՈԺԸ (618), մեռաւ թագաւորն Յունաց Մանիլն՝ թագաւորեալ ամս երեսուն և եւթն, և առ զթագաւորութիւնն Ալէքս (Բ) որդի նորա ամաց երկոտասանից. և երկոտասան իշխան կարգաւորէին զթագաւորութիւնն։ Եւ մայր նորա եղև հաւատաւոր. բայց ընդ ձեռամբ ունէր զոտունս գանձուցըն. և յետոյ անկաւ ’ի պոռնկութիւն ընդ մի յիշխանացն երկոտասանից, և յայանեցաւ գործն, և խորհեցան մետասան իշխանքըն սպանանել զմայրն և զորդին, և գնել թագաւոր զդուստր Մանիլին, որ էր յառա.

(1) Մէտոր նշանակէ ըստ հին գաղղիերէն լեզուին՝ գլխաւոր, պետ կամ տէր, որով իմանի գլուխն կամ կառավարողի Տաճարականաց որք Փրերք կոչէին։

ջին կնոջէն յօրինաւորէն, և ոչ կարացին։ Եւ
լուան մայրն և որդին, և ջանացին ըմբռնել
զնոսա. և փախեան մետաստան իշխանքն յե-
կեղեցին մեծ. և պեւթն օր կալաւ ամբոխ
զքաղաքն, և սկսան ծեծել զեկեղեցին փե-
լիկոնաւն (1). և յետ եւթն աւուր էառ ըզ-
նոսա յերաշխի Պատրիարքն, և եհան յե-
կեղեցւոյն և տարաւ յարքունիսն, զի կայ-
ցեն 'ի խաղաղութեան և յանհոգութեան,
զի առեալ էր երդումն 'ի նոցանէ։ Իսկ Թա-
գաւորն և մայրն ստեցին երդմանն և հանին
զաչս նոցա։ Եւ բարկացաւ Պատրիարքն
Թէոդորոս (Թէոդոս) անուն և անէծ զքա-
ղաքն, և ինքն ելաւ և գնաց 'ի քաղաքէն.
և անմտութեամբ արար անիծելով զքաղա-
քն և զանմեղսն. որ և ութ ամիս պատա-
րագ ոչ մատեաւ 'ի նմա, և մեռեալ ոչ հա-
ղորդեցաւ և թաղեցաւ։

Ի թուին Ասորւոց ՌՆՂԲ (**1492**) և Հայո-
ցն ՈԺԹ (**619**), եղեւ պատերազմ ընդ սուլ-
տանն և ընդ Նորադինն ընդ տէրն Հասան-
քէփայ և Բեսնոյ, զի առեալ Նորադինն ըզ-
դուստրն սուլտանայ որ էր կին նորա, և յա-
սացաւ 'ի Սալահադինն։ Եւ սուլտանն չոգաւ
քակեաց զԲեսունն. և ելեալ Սալահադինն
ընդդէմ սուլտանայ առնուլ զվրէժ Նորադ-

(1) Փէլլիկոան կամ Փիլիկոան, է գործի պատերազմական, որով ձգէին զմեծամեծ քարինս 'ի կործանել զպարիսպս քա-ղաքաց։

և չորեքտասան հազար. զգիւղս և զվանս աւե-
րեալ ՚ի Յունաց. և առ զինն Սալոնիկէն իսկ
՚ի կռուելն. Հալածեաց զփաղանգսն զօրե-
պետ ՚ի քաղաքին և ՚ի գաւառին, և ինքն
թագաւորեաց: Այլ խորհեցաւ սպանանել
զՓոփկոս(1) իշխանն մեծ, որ էր յազգէ թա-
գաւորացն, և առաքեաց կոչեաց զնա. և
ոչ կամեցաւ գնալ, այլ ազդեցաւ նմա խոր-
հուրդ թագաւորին: Այլ թագաւորն առա-
քեաց զզօրագլուխն իւր բերել զնա. և նա
քամեաց զթուրն և եհար զզօրագլուխն և
սպան զնա: Այլ ինքն երթայր յեկեղեցին,
և սուրն արիւնոտ ՚ի ձեռին իւրում և աղա-
ղակէր. «Տեառնէք և լուսաւորք ազգ.ք և հա-
սակք ամենայն, որ ընդ կամս Անդրոնիկոս
զթագաւորութիւնս Յունաց:» Այլ լուան
զայս, և ժողովեցան յեկեղեցին իշխանք և
զինուորք և ամբոխ քաղաքին. և ամենեքեան
խոցեալ էին յԱնդրոնիկեայ և բարկութեամբ
կային ընդ նմա. և ասացին ցՓոփիկն (ցԻսա-
հակն). «Թագաւորեա դու ՚ի վերայ մեր, և
անցցէ մրրիկս այս:» Այլ փութացուցանէին
զԿաթողիկոսն օծել զնա թագաւոր. և բա-
րձրացաւ ընդ քաղաքն: Այլ լուաւ Անդրո-
նիկոս և եմուտ ՚ի նաւ և փախեաւ. և հա-
սեալ նմա դարձուցին. և ՚ի բերդին ապաստա-

(1) Այս է Իսահակ Բ Անգեղոս կոչեցեալ, որ որդի էր Անդրոնիկոսի Անգեղոսի:

պատուար կոտորէին զնա, և բերեալ 'ի քա-
ղաքն այրեցին զնա հրով 'ի Թուին Ասորւոց
ՌՆՂԷ (1497)։

Իսկ 'ի Թուին Ասորւոց ՌՆՂԳ (1493) և
Հայոցն ՈԻԳ (623), իջաւ Սալահադինն և
ամենայն ամիրայքն միջագետաց 'ի վերայ
Քարաքոյ(1). և ժողովեցան Փռանկք, և գը-
նացին փախուցին զնոսա և ամրացուցին ըզ-
քաղաքն։

Ի նոյն ամի Թագաւորն Երուսաղէմի
Պաղտինն (Գ) անկաւ 'ի ցաւս գողութեան, և
արար իւր փոխանորդ զքորորդին իւր տղայ,
ասէին և նմա Պաղտին. և յետ սակաւ ա-
ւուրց մեռաւ, և Թագաւորեաց տղայ Պաղ-
տինն։

Ի նոյն ամի գնաց Սալահադինն 'ի Մու-
փարկինն և առ զնա. և դարձեալ գնաց 'ի
Մօսլ, և ոչ կարաց առնուլ զնա. բայց յոյժ
նեղեաց զնոսա, մինչեւ երդուան նմա որ

(1) Քարաքէ քերեկ քաղաքն՝ յարեւելից Երուսաղէմի, յայն-
կոյս Յորդանանու, յորում կային առաջնորդին հասուածք 'ի
Հայոց, որպէս ցուցանեն ցարդ Յոյն բնակիչք տեղւոյն զեկե-
ղեցին իւրեանց որ էր Հայոց. և քաղաքի իսկ 'ի Յունաց
խոստովանին ցարդ եթէ նախահարք իւրեանց էին Հայ ազ-
գաւ և ապա յարեալ 'ի յունական եկեղեցին։ Գոյ 'ի գրա-
տան սուրբ Յակոբայ Յայսմաւուր ձեռագիր յիշատակ ա-
րարեալ Լեւոնի Ետքայի Կիլիկիոյ՝ եկեղեցւոյն Քերեկայ, 'ի
Թուին Հայոց ՉՀԹ։ Առ եկեալ Ռուբէն Բ իշխան Կիլի-
կիոյ յամի 1181, առ զդստր Ռենալդայ տէր Շաղխեան Փը-
ռանգ իշխանին։ Սմբատ. յեր 103.

տան նմա հեծեալ և կացցեն 'ի հնազանդու-
թիւն։

Եւ 'ի նոյն ամի մեռան Նորադինն և
խուդբադինն (1) տէրն Համթայ և Մերտինայ,
որ էին ազգականք միմեանց յԱրթուխեաց
անտի. զի բազում եկեղեցիս քակեաց Նորա-
դինն 'ի յԱմիթ, վասն որոյ և հարաւ բար-
կութեամբ 'ի Տեառնէ, և եառ զիշխանու-
թիւնն հարճորդին իւր խուդբադինն (2), և
զՄերտինն եառ Հասամադինն որդին խուդ-
բադնին։ Եւ 'ի մեռանելն Նորադնին, Սե-
մրդդինն տէրն Բալուայ եառ զԽարթբերդ։
Եւ յայսմ ժամանակի մեռաւ ամիր Միրանն
տէրն Խլաթայ, որ էր այր բարեմիտ և ողոր-
մած առ աղքատս և կարօտեալս, և բազում
դիւրութիւնս առնէր եկեղեցեաց և քրիս-
տոնէից. և յետ մահուան սորա եառ զտե-
ղի նորա Բակտամուր (Պէք—Թիմուր) ծառայն
իւր։

Եւ 'ի սոյն ժամանակս բրինձն Անտաքոյ
արար սէր ընդ Սալահադնին, և նենգիւ որ-
սաց զՌուբէն զտէրն Կիլիկիոյ, և ըմբռնեաց
զնա և եդ 'ի բանտի. և եմուտ 'ի Կիլիկիա

(1) Քոթպ—էտտին Իլ—Կազի որդի էր Նէճմ—Էտտին Ալբեայ որդւոյ Դիմուրտաշայ՝ Որդոքեա իշխան Մերտինոյ և Մուփարկինոյ։

(2) Իմա՝ զԱմիթն եառ միւս խուդբադին հարճորդք Նուրէտտնի։

ամին երկու հարիւր Թուրք՝ դարձեալ յեր-
կիրն Ճապղթնայ փոքր մասամբ, և սպանին ըղ-
նոսա. և յետ այսորիկ ժողովեցան տասն հա-
զար Թուրք, և Թուրքմանքն կրկին քան զնո-
սա, և եղեւ կռիւ մեծ յերկիրն Ճապղթանայ,
և յաղթեցաւ Թուրքն և փախստ կոտորե-
ցան: Եւ յետ այսորիկ ձայն եհան դար-
ձեալ ազգն Թրքաց, և ժողովեցան 'ի կող-
մանցն Մծբնայ և 'ի Ջուրաբդնայ երեսուն
հազար, նոյնպէս և Թուրքմանքն առանց
Թուոյ. և կռուեցան մերձ Մծբնայ. և դար-
ձեալ զօրացաւ Թուրքմանն և կոտորեցին
զԹուրքն հարուածս մեծամեծս յոյժ, և փա-
խուստ առաջնորդեցին զնոսա. և գնացին առ Իմ-
զպատնակերտողս նոցա: Եւ յետ այսորիկ հատաւ
ազգն Թրքաց 'ի Միջագետաց. քանզի սա-
կաւ զերծեալք անկան յերկիրն Կիլիկեցւոց
և յամուր տեղիս ուրեք ուրեք:

Բայց քրիստոնէից ոչ մեղանչէին Թուրք-
մանքն, մինչեւ գտան զոմանս Թրքեր Թա-
գուցեալ 'ի տունս քրիստոնէից, և այսու-
պատճառաւ սկսան նեղել զքրիստոնեայսն
'ի տեղիս տեղիս: Եւ էառ Թուրքմանն զԱ-
բրայթիլն և զԹլղամէ (1). կոտորեցին և մա-

(1) Աբուլֆարաճ՝ որ 'ի քրոնիկոնի իւրում (յեր. 406)
հետեւի ասորական բնագրին Միխայելի. փոխանակ անյայտ
բառիցս Աբրայթիլ և Թլղամէ ունի՝ Կարսուղէփ և Թլղամէ, որք
էին մենաստանք երկու, զորս առեալ Թուրքաց այրեցին և
զկրօնաւորսն 'ի սուր հանին:

Ճառէլին զքրիստոնէայսն, մինչեւ ամենայն ամիրայքն սկսան զզուշանալ երկրի իւրեանց։

Ի Թուին Յունաց ՌՆՂԸ (1498) և Հայոց ՈԻԵ (625), ժողովեցաւ Սալահադինն ամենայն հնազանդեալովք իւրովք՝ Եգիպտացովք, Աթուրացովք, Միջագետօք, և խաղաց գնաց ՚ի վերայ Փռանկին մերձ ՚ի Տաբարիա (1)։ Ելեալ Փռանգքն և Թագաւորն Երուսաղէմի ընդդէմ նոցա, և յաղթեցաւ մեղք քրիստոնէից առաջի Տեառն, և քննեցաւ յարդար իրաւանց նորա, և եղեւ հարուած և բեկկութիւն ՚ի Տեառնէ ՚ի վերայ Փռանգաց։ Եւ զօրացան Տաճկիքն և կոտորեցին և առին ՚ի սուր սուսերի իւրեանց զՔրիստոնէից զօրքն Փռանգաց. և կալան զԹագաւորն Երուսաղէմի և զամենայն Փրերսն, և

(1) Յաւուրց անտի արքային Երուսաղէմի Պաղտինի զոգն կոչեցելոյ, կալեալ էին Փռանգք դաշինս ուխտի ընդ Սալահատինի. զոր Ռընալտ ոմն Շադիլեօն իշխանն Քերեկոյ աւերեալ՝ աւազակելովք զկարաւան ուխտաւորացն Մահմետականաց որ երթային ՚ի Մեքքա. վասն որոյ և Սալահատին հրամանս արձակեաց յԵգիպտոս, յԱսորիս և ՚ի Միջագետս ժողովել ամենայն խալամաց ընդ դրօշու սրբազան պատերազմին։ Եւ Սալահատին արշաւեաց բանակաւ իւրով ՚ի Տիբերիա և առ ղայն, ուր հասեալ Կիտ ոմն Լուսինեան Թագաւորն Երուսաղէմի հանդերձ իշխանօք, վտանգեալ ՚ի պատերազմին անկաւ ՚ի ձեռս թշնամեաց, գերեցաւ և խաչն սուրբ։ Իսկ Ռեմոնտ կոմս Տրիպոլսի նախ քան զպարտել քրիստոնէից՝ փախուցեալ էր ՚ի պատերազմէն, և զկնի սակաւու մեռաւ յուսահատութեամբ. Վարդան, յեր. 177։

եղեւ ուրախութիւն մեծ Թուրքաց ազգին ։ Բայց նախ քան զպատերազմին փախեա-կանն Տրապօզեւոյ , եւ զնա առեն պատճառ-քրիստոնէից կործանմանն, զի բանս եղեալ էր յառաջագոյն ընդ . . . սն ։ Իսկ Մալահա-դինն էառ զՏաբարիա , եւ կոտորեաց եւ ա-ւերեաց զնա . եւ այսն ձեռօք իւրովք ըղ-Անաղոն զբրինձն Ռնտուքոյ եւ երեք հարիւր Փրեր , եւ լուացաւ արեամբ նոցա . եւ ապա գնաց 'ի յԱքայ , եւ իշխանքն որ կային անդ , փախեան նաւով 'ի Սուր . եւ էառ զԱքայ , եւ էառ գերի բազում յոյժ ։ Եւ Կեսարիա եւ Նազարեթ եւ Յոպպէ թողին զքաղաքսն , եւ զիւրեանս տիրեաց 'ի վերայ նոցա Մալահա-դինն ։ Եւ ոչ ոք կարէ պատմել զնախատինս քրիստոնէից՝ զթուք եւ զանհարութիւն . . . նացն ։

Իսկ Մալահադինն գնաց 'ի յԱսխալան եւ եր-դուաւ նոցա թողուլ զնոսա կենդանւոյն ուր եւ կամիցին գնալ ։ Եւ ետ նոցա զԹագաւորն Երուսաղէմի , եւ առ զքաղաքն . եւ բնակիչքն առին զԹագաւորն եւ գնացին 'ի Սուր ։ Եւ ապա ելեալ Մալահադինն 'ի վերայ Երուսա-ղէմի , եւ աւուրս ինչ պաշարեաց զնա . եւ զի ոչ գոյր նոցա ուստեք ակնկալութիւն , խոր-հեցան տալ զքաղաքն . եւ կտրեաց Մալահա-դինն զգինս բնակչաց քաղաքին դահեկանս տասն , զի տացեն նմա բաս գլուխս եւ եր-

թիցեն յո և կամիցին (1)։ Եւ տարարին այնու-պէս, և ետուն զքաղաքն. և որ ոչ կարաց գնել զանձն իւր, մնաց անդէն 'ի ծառայու-թեան։ Եւ ոչ ոք էր բաւական ժուժալ. ար-տասուացն զոր հեղուին քրիստոնեայքն յե-րանելին յաստուածընկալ քաղաքէն. և որ մը-նացին 'ի տեղւն՝ էին թուով քառան հազար այր և կանայք. և 'ի նոցանէ չորս հազար ծերս և պառաւունս ազատեաց Սալահա-դինն, և եօթն հազար տղայս արու և էգ բաժանեաց զօրաց իւրոց. և հինգ հազար երիտասարդս առաքեաց 'ի Սեր գործել ա-ղիւս 'ի շինութիւն պարսպաց, և հինգ հա-զար եթող Երուսաղէմ շինել զպարիսպ նորա։ Եւ զՏաճարն լուացին արեամբ քրիս-տոնէից, և դարձեալ լուացին վարդաջրով. և եդին սահման ոչ մտանել 'ի նա քրիստո-նէից, և որ մտանէ՝ մեռանի։ Եւ տուաք ըն-տանեացն Յարութեան ընդ հարկաւ, զի որ մտանէ՝ տացէ կարմիր մի։ Եւ դարձաւ գը-նաց Սալահադինն 'ի վերայ Սրոյ (Տիւրոս)։ Եւ եկն յաւուրսն յայնոսիկ կոմս մի Մարգիս անուն (2), այր հզօր և իմաստուն, և 'ի ձեռն

(1) Վարդան ասէ՝ յարուաց մա զանհեկանս տասն և ի-գաց՝ հինգ. յեր. 177։

(2) Մարքիզն ոչ է անուն մարդոյ՝ այլ պատուոյ, և կո-չէր նորին Կոնրատոս՝ ... Մոնֆերրատ. որոյ հայրն 'ի քաղաք կայր 'ի Դամասկոս։

նորա փրկեցաւ Սուգ։ Եւ Սալահադինն գնաց և էառ զՍայդա և զՊէրութն և զՃէպէլն և զԹ·պնին, և տիրեաց նոցա։

Ի Թուին Յունաց ՌՆ (1500) և Հայոցն ՈԻԷ (627), էառ Սալահադինն զՃաւալաք և զՇաքար որ 'ի վերայ ծովուն (1). և գտան 'ի Շաքար քարայր մի մեծ յորմ՝ լցեալ թերապարդ արծաթով, որ հալ մի պակաս էր առ 'ի որքել զնա ամենեւին, և ոչ կարացին 'ի պէտս առնուլ զնա, և ոչ գտաւ արուեստաւոր այնպիսի որ գիտէր զհանգամանս նորա։ Եւ անտի դարձաւ և եկն և էառ զԼատիկն և զՃէպէլէ և զՍեհաւնն և զՊաղրաս և զԴարպասակն։

Եւ 'ի սոյն ամի որդին Կիլիճ Ասլանայ ժողովեաց զօր պատերազմել ընդ հօրն. զի Հասան զօրապետն սուլտանայ զայրացուցեալ էր զսուլտանն 'ի վերայ որդւոյն. և յորժամ կամէին դիպիլ միմեանց պատերազմաւ, Սարհամ շահն փեսայ սուլտանին, տէրն Եզնկայ, մտեալ 'ի մէջ և արար խաղաղութիւն. և քաղաքացիք որ ընդ որդւոյն էին, ամաչեցին 'ի ծերութենէ սուլտանին, և խափանեցաւ պատերազմն. բայց յետոյ սուլտանն կոտորեաց 'ի Թուրքէն որ միաբանեալ էին ընդ

(1) Քէրէկ է [illegible] ծով. [illegible] 'ի հարաւոյ նորա։ [illegible]

դղեակն՝ չորս հազար անձինս, և զ…տասան զօրապետսն սպանին Թուրքն։ Եւ ՚ի նոյն ամի տիրեաց Ըսկանդեր մի ՚ի յորդւոցն Սուլտանայ, որում անուն էր Խայր շահ Աղա-դին (1)։

Ի Թուին Ասորւոց ՌՇԱ (1501) և Հայոցն ՈԻԸ (628), շարժեցաւ տունն Փռանգաց, և եկին ընդ ծով առանց Թագաւորի բազմութիւն ազգաց յոյժ, և իջան ՚ի վերայ Աքայոյ, և պատերազմեցան ընդ քաղաքին, և ոչ կարէին առնուլ զնա, զի կային անդ հարիւր հազար պատերազմող. և Սալահադինն ոչ իշխէր պատերազմիլ ընդ նոսա։ Եւ շինեցին Փռանգքն տունս բազումս և եկեղեցիս և չորս հազար ջաղացս։ Յետոյ եկն և Թագաւորն Ալամանաց ՚ի վերայ Կոստանդնուպօլսի և պատերազմեցաւ ընդ նոսա, և ապա յետոյ արար ընդ նոսա սէր, և անց յայնկոյս. Եւ եկին ընդ անջուր և ընդ դժուար ճանապարհ առաջնորդութեամբ Յունաց, և կուտեցան ՚ի վերայ Թուրքմանք և կոտորեցին զքաղաքսն։ Եւ սուլտանն արար սէր, և ետ նոցա ճանապարհ, և եկին ՚ի Սելեւկիա. և անդ Թագաւորն նոցա խեղդեցաւ ՚ի գետն, և բերաւ մարմին նորա յԱնտաք (2)։ Յետոյ

(1) Խայրշահ—Ալադին. [illegible]

(2) Փրեդերիկոս Ա. [illegible]

ՈԻԹ (629), եղեւ հալածական յորդւոց իւրոց Իսլիմ ալան, և ժողովեցին զնա Լօնացիքն (Իկոնիացիք) առ իւրեանս. և աւագ որդի նորա ամբարձ զգլուխ իւր յԱ՚զատրայն(1), և անհամբեր եղեալ հայրն ժողովեաց բազ կարի զօրս գնալ ՚ի վերայ որդւոյն, և ՚ի ճանապարհին հիւանդացաւ և մեռաւ, և դարձուցին զնա ՚ի Լօնն. Իւր էր ընդ նմա որդի մի կրտսեր, զոր եդին ՚ի տեղի հօրն. և Իսլիմ ալան մեռաւ ՚ի Թուին Լատինաց ՌՇԴ (1504). Թագաւորեալ ամս երեսուն և ութ, և մնաց Թագաւորութիւնն երկոտասան որդւոց իւրոց:

Իսկ ՚ի Թուին Լատինաց ՌՇԵ (1505) և Հայոց ՈԼԱ (631), մեռաւ և Սալահատինն ՚ի Կռամանիոս, և եթող քառն և երեք որդի(2), որ և զաւագ որդին կացոյց ՚ի Կռամանիոս և զերկրորդն ՚ի Սիր, և զերրորդն ՚ի Հալպ. և անուանեաց զնոսա Թագաւորս և սուլտանս, և զայլսն ընդ ձեռամբ նոցա(3): Իւր կայր եղբայր նմա Մելիք Յետալ (Մալեք Ադել) անուանեալ և եւս նմա զՄեահա և զԽփաուան

(1) Աւագ որդի Իսլիմ ալանայ էր Քօթպ—էտտին Մալէք Շահ, որ տիրեաց Մելիտինի, Կեսարիոյ և Կոլոնիոյ.

(2) Առաջինորդն եթող եւ քառն, և տասն որդիս և երէ, և դուստր մի:

(3) Մալեք Աֆտալ տալպաննութեան ՚ի Կռամանիոս, տիրելով և Փռակիանին. երկրորդն Մուէզ—Ատին յեհակտաա. երրորդն Մալէք—Զահեր՚ ՚ի Հալպ.

և զՍուփարկին և զՍամոսատ և զԿողձապար, և զԹարաք և զՇաւպաք, և զայս հնգայա-մետ 'ի կատարած կենաց իւրոց։ Իսկ Սօսլայ տէրն(1) արար միաբանութիւն ընդ եղբարսն իւր ընդ տէրն Ռզլոյ և ընդ տէրն Մերտի-նայ և ընդ տէրն Սաղայ և ընդ Մնձարայ, և եկն նոքօք առնուլ զԽառան. և հիւան-դացաւ 'ի ճանապարհին և դարձաւ 'ի Սօ-սըլ, և այնքն ցրուեցան։ Իսկ Մելիք Յէտըն գնաց և էառ զՄծբին և զԽաղա և զԴա-րաւրն, և այլ ամիրայքն հնազանդեցան նմա որպէս և եղբօր իւրում Մալաքշահին։ Իսկ գնաց Մելիք Յէտըն 'ի կողմանս Հայոց 'ի Խլաթ, և ոչ կարաց առնուլ զնա, և դար-ձաւ։ Իսկ 'ի նոյն տարւոջ մեռաւ Շզադինն (Շպղ-էտտաւլին) տէրն Սօսլայ և առ զտեղի նորա Դորադին որդին իւր։

Յայսմ ամի Լեւոն քաջ և անուանի իշ-խանն Հայոց ըմբռնեաց զԱրքինձն Նաւաքոյ (Պոէմոնտ), և արկ զնա 'ի չարչարանս փոխա-րինել նմա զչարչարանս եղբօր իւրոյ Ռուբի-նայ։ Իսկ եկն կոմսն Ռաքայոյ Սիր Հենրի (Հեն-րի), մեծաւ աղաչանօք Թափեաց զԱրքինձն և առաքեաց Անտաքեայ(2)։ Իսկ յետն արքայորդին Լեւոն տիրեաց եւ Թագաւորեաց և երկու եբր-

(1) Աղղ-էտտաւլին Սուլտան Թոռն Զանգեայ։
(2) Սմբատ. յեր. 108.—Մեծատ. պատմութիւն Խաչակրաց. Հտ. Բ. Գլ. 9. յեր. 178։

չքնեալ և ատեալ զառանձին զանձնացն Սալա-
հադինն՝ ազատեցաւ. և ոչ եւս. այլ մնացեալ
'ի տուն մի լքեալ մնացուածով, և զայն ե-
բարձ քարանց բերան և մանկահարեալ ծած-
կարար և աղօթեաց առ Նա : Իսկ յորժամ
ետես (Մէլիք Սալէհ) զխաղաղութիւնն, խաղե-
ցաւ անմխիթար և ամաչեաց յոյժ. այլ ոչ
էր ձեռնհաս առնել նմա ինչ, և ընկէց զդա-
տաստանն յԱստուած որ յամենայնի բաւա-
կան է հատուցանել :

Իսկ պարոնն Լեւոն որդին Ստեփանէ որ
լաւ օրէ երեւէր և զօրանայր Աստուծով յա-
ջողեալ և յամենեցունց փառաւորեալ. և
յայնժամ յորժամ տկարացոյց Աստուած
շուրջանակի զթշնամիս նորա և 'ի կոր կոր-
ծանեաց զամենայն հակառակորդս նորա,
տիրեաց նա լիով երկուց Կիլիկէից լերանց
և դաշտաց, քաղաքաց և ամրականն գղեկաց.
և առ քաջութեամբ իւրով և զհնազանդն
Սուբացւոց և մասանս ոչ սակաւս յերկրորդ
Կապադովկացւոց, յԱրեւելից Հայոց. զոր ա-
մենքն Տաւրոսին անուանեն Հայք. գրաւեաց
ընդ իւրով իշխանութեամբ և յԱստուածա-
նեաց գաւառաց. Իսկ ցուցանէր իմաստութիւն
և ճոխ իշխանութեամբ, զի ոչ ոք տիրէր 'ի
վերայ նորա. և հանգոյն արիութեան նորա
թուլացուցանէր զձիս անօրինաց և պարզէր
զերեսս քրիստոնէից. և ընդ խնդութեամբ

մեցին գնալ 'ի վերայ նոցա պատերազմել.
և որչափ սաքա մատնեայքն 'ի բանակն նոցա,
նոքա օթեւանօք մի ընդ կրօնեկն դարձեալ
հեռանայրն։ Եւ յերկարեր այս 'ի բազում ա-
ւուրս, մինչեւ ձանձրացեալ քրիստոնէիցն
կամեցան յետս դառնալ՝ երկուցեալք 'ի
խարէութեանց նոցա. և յաղագս անծանօ-
թութեան աշխարհին խորհեցան դառնալ
Ա՚քայ, և համակամութեամբ ամենայն զօ-
րագլխացն խորհուրդ առեալ իջին Եգիպ-
տոս. և հասեալք 'ի քաղաքն որ կոչի Տի-
միաթ պաշարեցին զնա. և 'ի նեղս արկեալ
ընդ յերկար, մինչեւ երրորդ մասն քաղաքին
սատակեալ լինէր 'ի սովոյ և 'ի սաստկաժամ
մահուանէ որ անկաւ 'ի նոսա. և ապա առին
զքաղաքն և կոտորեցին զմնացեալսն առ հա-
սարակ, և առին յաւարի զմթերս գանձուց
նոցա, և լցան առ հասարակ ոսկւով և ար-
ծաթով։

Եւ յայսմ ամի մեռաւ Մելիք Ադլն. և
որդիք նորա Մելիք Քէմլն սուլտանն Եգիպ-
տոսի և Աշրաֆն (1), և սուլտանն Դամաս-
կոսի Մուազզամն (2), և այլ եղբարք նոցա

(1) Մալէք—Աշրաֆ էր եղբայր Մալէք—Քամիլայ և տէր էր Միջագետաց։ Արեւելեան, չեր. 111.

(2) Անդրանիկն յորդիս Մալէք—Ադիլայ՝ Մալէք—Քէմիլ (Քամիլ) [illegible] Շերիֆ[illegible] Մալէք—Մուազզամ—[illegible]

տուաւ նոցա, և նորին զօրագլուխն Պարոն Կոս-
տանդին գունդստապլն, որ էր քեռորդի Թագա-
ւորին Լեւոնի, առեալ սակաւ ինչ գունդս
'ի զօրացն, յառաջ մատուցեալ 'ի կիրճս լերան-
ցըն, և պատահեալ գնդի միում 'ի զօրացն
Թուրքաց, և անկեալ 'ի վերայ՝ զամենե-
սեան կոտորեաց, և ըմբռնեաց 'ի նոցանէ
արս գլխաւորս՝ որք ազդեցին նմա զբուն գա-
լուստ զօրացն սուլտանին, և աղաչէին դառ-
նալ և բաւական համարել զյաղթութիւնն
զոր արար։ Այլ նորա ոչ անսացեալ բանիցն
նոցա և առաւել եւս յանդգնեալ և քաջա-
լերեալ զզօրսն՝ հանդիպի ծանր զօրու կուռ-
վառելոց զինու, և 'ի պարտութիւն մատնի
գունդստապլն և զօրքն որ ընդ իւր, և ըմբռ-
նեցան ինքն և պարոն Կոստանդին լամբրոնա-
ցին և Կեռասկն (1) և այլ մեծամեծ իշխանք,
Թող զորս կոտորեցան 'ի նմին տեղւոջ իբրև
հազար այր պատերազմող, և ըմբռնեալ զնո-
սա դարձաւ 'ի Կեսարիա։ Իսկ Թագաւորն
Լեւոն իբրև լուաւ զկոտորումն զօրացն և
զըմբռնումն իշխանացն, առեալ զզօրս իւր ար-
շաւէր 'ի միւս այլ կողմն աշխարհին Հռո-
մոց; և բերէր աւար անթիւ և կուտէր իբ-
րև զաւազ առ ափն ծովու. և յետ սակաւ

(1) Կեռասկն. Թուքի սուրբ՝ Կես. Սահակ. էր իշխան և տէր Մաղվոյ և Սիկոյ բերդից. որ առաջիկայ դասու և հանդերձ Թագադրութեան Լեւոնի. Ալիշան. յեր. 112.

տուուրց արարեալ սէր ընդ միմեանս, եւ Թագաւորն Հայոց Լեւոն զբերդն Լուլուայ, և Թափեաց զիշխանսն որ ըմբռնեալ էին, և խոստացաւ տալ Հռոմոց սուլտանին յամենայն ամի երեք հարիւր այր 'ի ծառայութիւն և հնազանդեցաւ նմա. և այս լինէր 'ի ծերութենէ և յանկարութենէ մարմնոյն, և իշխանքն ոչ էին ընդ նմա ուղիղ (1)։

Եւ 'ի սոյն իսկ յայսմ ամի արարեալ ժողով սուլտանն Քէքաուզ զօրաց, առեալ և 'ի Թագաւորէն Հայոց օգնականութիւն,

(1) Սմբատ և Վահրամ փոքր մի տարբեր պատմեն զայսմանէ։ Սմբատ (յեր. 117). ասէ Ազզ—Էտտին Քայքաւուզ սուլտանն Իկոնիոյ որ 'ի Սեբաստիա, 'ի ծերութեան Լեւոնի կամեցեալ քինախնդիր լինել վասն հանելոյ նորա յիւրմէ զԱրակլիա և զԼարանդա քաղաքս, եկն և պաշարեաց զԿապան։ Եւ Լեւոն առաքեաց 'ի վերայ նորա զպայրոն Կոստանդին սպարապետն իւր և զպայրոն Ատան բազմութեամբ զօրաց. որք անխորհրդաբար 'ի մարտ մտեալ, գերի անկանէին Կոստանդին սպարապետ և Կեռասին և այլք յիշխանաց և 'ի հեծելազօրաց. և բազումք 'ի զօրացն խորտակէին։ Իսկ Քայքաւուզ առեալ զգերիսն գնաց յԻկոնիոն, և ունէր զնոսա 'ի բանտի ամ մի և աւելի չորս. մինչև զԹագաւոր 'ի նեղ Լեւոն, տայ սուլտանին զԼուլուայ բերդ և զգերսն Իսաւրիոյ և զայլ տեղիս և զիշխանսն իւր ազատէ 'ի գերութենէ։ Եւ Վահրամ ասէ եթէ տեսեալ Լեւոնի զպարտութիւն զօրաց իւրոց. ոչ ինչ ընդ այն տխրեալ, դիմէ հաջեալ զօրացն իւրովք յերկիրն սուլտանին. և աւարառեալ բազում աւարաւ և գերութեամբ դառնայ։ Լուեալ սուլտանին զաւեր աշխարհին իւրոյ, երդումն տայ Լեւոնի 'ի խաղաղութեան կալ ընդ նմա, և զիշխանսն Հայոց յետս դարձուցանէ։ (Յեր. 216).

գայ յերկիրն Հալպայ 'ի Սապան, և առ ըզ-
նա. և անտի գնացեալ 'ի Թլպաշար, առնու
և զԹլպաշար և զԱնթափ: Եւ կամեցաւ
գնալ 'ի վերայ Հալպայ. և երեք ամաւ յա-
ռաջ սուլտանն Հալպայ վախճանեալ էր՝
Մելիք Տահրն, և որդի նորա Մելիք Ազիզն
մանուկ գոլով ամաց հնգից՝ ունելով զիշխա-
նութիւնն: Եւ էր նորա աթաբակ մի յոյժ
իմաստուն, առաքեաց առ թագաւորն Հա-
յոց Լեւոն, և խնդրեաց 'ի նմանէ օգնական
լինել, թերեւս զերծանիցին հնարիւք նորա
'ի հասեալ բարկութենէն. և խոստացան նը-
մա տալ բազում գանձս ոսկւոյ: Եւ թագա-
ւորն Հայոց այնուհետեւ 'ի հոգս անկեալ
իւրով կորովամիտ իմաստութեամբն, առա-
քեաց զանխլաբար առ սուլտանն Հոռոմոց
մինչ 'ի սահմանս Թլպաշարայ էր, գրեալ առ
նա այսպիսի օրինակաւ. «Թագաւոր Հայոց
Լեւոն, եղբօր մերոյ Քէքաուզ սուլտանիդ՝
'ի տէր խնդալ: Յուշ լիցի քեզ իբրեւ սի-
րելւոյ մերում, զի իմացեալ հաստատեցաք
եթէ քառասուն ամիրայ 'ի զօրաց քոց դա-
շինս եդեալ են տալ զքեզ 'ի ձեռն Աշրա-
ֆուն. և դու այսուհետեւ զգուշաւ ան-
ձին քո խորհեաց, զի մի անկցիս 'ի ձեռս ա-
տելեաց քոց. ողջ լեր:» Եւ իբրեւ ընթեր-
ցան առաջի նորա զպատճէն նամակին, իւ-
կոյն զարհուրեալ ահիւ մեծաւ, հրաման

տայր զօրացն դառնալ անդրէն փութանակի. և ինքն յառաջ անցեալ աճապարէր գնալ։ Զոր իմացեալ Աշրափուն և զհետ մտեալ արար փախստական. և ինքն դարձեալ եառ զՄապան և զԹլպաշար և դարձոյց ՚ի Հալպ. և այսպիսի օրինակաւ այնքան մեծ սուլտանն չփոթեալ ՚ի պարտութիւն մատնէր. և հանեալ ՚ի Կեսարիա՝ զամիրայն զայնոսիկ դքառատուն խաչել հրամայէր։

Եւ յայսմ ամի եկն դեղին մարախ, և ծածկեաց զերկիր և զդաշտս, և եկեր զամենայն ծառ սահմանաց մերոց մինչեւ իսպառ զերիս և զչորս ամս։

Ի ՈԿԸ (668) Թուականին Հայոց Լեւոն թագաւորեալ ամս քսան և երեք մեռաւ, և յանձն արարեալ զիշխանութիւն աշխարհին և զդուստր իւր զԶապէլն ՚ի Սիր Ատանն, որ էր ազգաւ Հոռոմ, և զկնի սուղ ժամանակի սպանաւ ՚ի Հաշիշեացն, որպէս վերագոյնն գրեցաւ. և առնու զհոգաբարձութիւն աշխարհին պարոն Կոստանդին, որ էր քեռորդին թագաւորին Հայոց Լեւոնի։

Յայսմ ժամանակի ոմանք յիշխանացն Հայոց ապստամբեալք եղեն ընդ Ռուբինայ բըլինձին Անտիոքու (1), կամելով զնա թագա-

(1) Ռուբէն բրինձ (իշխան) Անտիոքու՝ էր որդի Պայմոնդ (Պօեմունդ) որդւոյ Պինմոնդայ (Պոհեմոնդ) կոմսին Անտիոքայ։ Եւ էր ծնեալ Ռուբէն ՚ի հայազգի մօրէ Աղիսա (Ա-

ւորեցուցանել, յորոց էր Ճօսլին մարաջախտ և Լեւոն Կապանուն տէրն և Կեռասկն, և այլք. որք առեալ զբրինձն Ռուբէն և մտին ՚ի Տարսոն և ամրացան: Իսկ պարոն Կոստանդին և տէր Յովհաննէս կաթուղիկոսն պնդեցին զօրօք և պաշարեցին զնոսա սուղ ինչ ժամանակս, և յաղթեցին նոցա և առին ըզքաղաքն, և ըմբռնեցին զապստամբսն որ և ամենեքեան բանտարգեալք եղեալ վախճանեցան ՚ի կապանս, և հանդարտեցաւ երկիրն(1). Բայց տէր Յովհաննէս կաթողիկոսն յառաջ քան զառնուլ քաղաքին վախճանեցաւ ՚ի Թուին Հայոց ՈԿԹ (669), և ապա միաբանութեամբ ամենայն իշխանացն և եպիսկոպոսացն ընտրեցաւ յամենեցունց տէր Կոստանդին (Ա) որ էր եպիսկոպոս Ճլիձոյն(2).

լիս) անուն, դուստր Ռուբենի Բ. զոր տուեալ էր Պաղտնոյ այսու դաշամբ. զի Պերմունդ հայր նորա զկնի վախճանին Լեւոնի զնա ինքն զՊաղտոնն կարգեսցէ յաջորդ փոխանակ երէց եղբօրն Փիլիպպի, որ ամուսնացաւ յետոյ ընդ Զապելի դստեր Լեւոնի, և իշխեաց Հայոց ամս երկուս: Գրէ Վահրամ ըստ մտաց Միխայելի. եթէ Ռուբէն բազում իշխանս յինքն յանդուգեալ զայս և առնու նախ զՏարսոն, և յառաջէ մինչեւ ՚ի Մսիս. և Կոստանդին զօրավար դիմեալ զօրօք ՚ի վերայ նորա, ըմբռնեալ ածէ զՌուբէն ՚ի Տարսոն քաղաքէ և զհամախոհս իւր և արկանէ զնոսա ՚ի բանտ, ուր և մեռանին: (Յեր. 217—218):

(1) Այս դէպք կարեւոր ոչ յիշատակի ՚ի գիրս պատմութեան Միքայէլ վարդապետի Չամչեան, նոյնպէս և ոչ գործք Քայքաուզ սուլտանին որ նախ քան զմահն Լեւոնի:

(2) Կոստանդին կաթողիկոս էր ՚ի Բարձրբերդոյ, սնեալ ՚ի վանս Մաշկեւորայ:

և եղաւ յայնժամ հայրապետութեանն Հա-
յոց ՚ի թուին ՃՀ (670). և եղեւ ուրախու-
թիւն ամենեցուն յաղագս սուրբին և բա-
րեբարոյ և խաղաղասէր մտացն, որով ա-
մենեցուն հոչակաւոր լինէր։ Իսկ իշխանացն
Հայոց բազում՝ անմիաբանութիւն լինէր
վասն ընելոյ թագաւոր, զի ոչ հաւանէին
միմեանց, և ապա ՚ի մի կամս եկեալ ընտրե-
ցին զորդին բրինձին Անտիոքու թագաւո-
րեցուցանել, զոր և արարին իսկ, և ետուն
զդուստր թագաւորին Հայոց Լեւոնի նմա
՚ի կնութիւն. և թագաւորեցուցին ՚ի վե-
րայ Հայոց ՚ի թուին Հայոց ՃՀԲ (672), և
անուանեցին զնա Փիլիպ թագաւոր։

Ի թուին Հայոց ՃՀԲ (672) եղեւ երաշտ
սաստիկ և յերկարեաց յոյժ, մինչ զի ՚ի Դեկ-
տեմբերի հասարակն նշենիք ծաղկեալ եղեն
՚ի ջերմութենէ օդոյն, և անպատմելի վշտօք
տառապէր երկիր զերիս և զչորս ամս։ Յայսմ
ժամանակի մեռաւ սուլտանն Քէքաւուզն,
և առնու զսուլտանութիւնն կրտսեր եղբայր
նորա Ալադինն (1)։

Ի թուին Հայոց ՃՀԳ (673) Փիլիպ թա-
գաւորն Եպպրով հօր իւրոյ (Պեմունդայ)
կամեցաւ ըմբռնել զերկուս մեծամեծ իշ-
խանսն, զպարոն Կոստանդին որ էր թագա-

(1) Ալա—էտտին Քէյքապատ.

ւորահայրն և զպարոն Կոստանդին Լամբրու-
նին տէրն (1). զոր խմացեալ յառաջնոց պա-
րոն Կոստանդին (Թագաւորահայրն), և ըմ-
բռնեաց զնա 'ի Թիլն Համտնոյ, և տարաւ
'ի Նարձրբերդ և անդ վախճանեցաւ (2)։ Իսկ
հայր նորա բրինձն Անտիոքու լուեալ՝ տրտմ-
եցաւ յոյժ. և զի անկարանայր առնուլ ընդ-
վրէժ որդւոյն, առաքէ առ Սուլ-
տանն Հոռոմոց, որոյ եկեալ էառ զՃանճին
և զԿանչին, և զՄազոտ խաչն (3), և արար
վնաս բազում 'ի լեռնակողմանս. և բրինձն
ժողովեալ զօրս եմուտ յերկիրն, եկն ընդ-
առհմանն որ կոչի Ճկեր, և եհաս մինչեւ
'ի Թիլն Համտնոյ, և ոչ ինչ օգտեալ դար-
ձաւ ամօթով յԱնտաք։

Ի Թուին Հայոց ՈՀԵ (675) միաբանու-
թեամբ ամենայն իշխանացն առին զԶա-
պէլ դուստր Լեւոն Թագաւորին 'ի կնու-
թիւն Հեթմոյ որդւոյ պարոն Կոստանդեայ,
և թագաւորեցուցին 'ի վերայ Հայոց, որ էր
տղայ հասակաւ. և հայր նորա կարգաւորէր
զթագաւորութիւնն, որ և արար սէր ընդ-

(1) Այս Կոստանդին էր որդի պարոն Հեթմոյ՝ որդւոյ Օշնի, որք էին տեարք անուանի ամրոցին Լամբրոնի, վասն որոյ և ապստամբք էին միշտ ազգային իշխանութեանն, զորս Լեւոն Բ նուաճեալ՝ առեալ 'ի նոցանէ զամրոցն։

(2) Սմբատ. յեր. 121։

(3) Ճանճի և Կանչի և Մազոտ խաչ էին առանձին ամրոցք, որոց իշխէին Պարոնք։

Սըրպղին սուլտանն և հնազանդեցաւ նմա՝ տալով նմա յամենայն ամի երեք հարիւր այր ՚ի ծառայութիւն [1]։

Յայսմ ժամանակի լուաք զհամբաւ երկուց ազգաց անաստուածից և գազանաբարոյից, որոց անուանքն Խորազմ և Տաթար, որք իբրեւ հուր ընդ խուխ ընթացեալ ապականեցին զերկիր ուր և հասան, և ոչ ոք ընդդիմացաւ նոցա, և սարսեցին ՚ի համբաւոյ նոցա ամենայն որ ՚ի ներքոյ երկնից։ Նոյն սկիզբն ելից նոցա ՚ի բուն աշխարհէն իւրեանց ՚ի վաղուց ժամանակաց է, և զբազում աշխարհս և զազգս և զթագաւորութիւնս աւերեալ և քանդեալ հասին յաշխարհն արեւելից։

Իսկ յայսմ ժամանակի. Թագաւորէր Վրաց դուստր Թամարին Ռուսուդական, և էր աթաբակ նորա Իւանէ եղբայրն Զաքարիայի, որ էին ազգաւ Հայք, և ՚ի հրապուրանաց Թամարին Վրացի եղեւ Իւանէ, և ՚ի հակառակս դառնայր կրօնից Հայոց [2]։ Իսկ յայսմ ժամանակի ՚ի գաւառն Գանձոյ եղեւ նշան ինչ. զի կրօնաւոր մի սուրբ և ընտրեալ վախճանեալ, Հայ ազգաւ [3], որոյ գերեզմա-

(1) Սմբատ ասէ. թէ յանձն առ պարան կապանացն հայր նորա տալ ամ յամէ չորեքհարիւր հեծեալ։

(2) Կիրակոս, յեր. 96։

(3) Վարդան (յեր. 188)։ ասէ թէ էր երէց Գանձեցա

նորն երկնաւոր լուսովն մկրտեցաւ և փառաւ-
որեցաւ, որ ամենեքեան տեսին. և ել համ-
բաւ նորա ընդ ամենայն երկիրն։ Իսկ Իւա-
նէի նախանձ շարժեալ ամենայն Վրացեօքն,
նախատէին և Թշնամանէին. և յետոյ զոսկերս
սուրբ կրօնաւորին հրամայէին այրել հրով.
և 'ի տեղի պատուական ոսկերացն սատա-
կեալ շուն Թաղել։ Եւ եպիսկոպոսն Իշխանայ
տէր Յովհաննէս բազում բանիւք յանդիմա-
նէր զանաստուածն Իւանէ. իսկ նա սպառ-
նայր կամ դարձուցանել 'ի վրացութիւն զա-
մենայն Հայս, և կամ հանել յաշխարհէն։

Եւ մինչ յայսմիկ էին, եհաս համբաւ
Խորազմին (1), և նոքա մաւթով ժողովեալ
զօրս կամէին ելանել ընդդէմ նոցա 'ի դաշ-
տամէջն Գառնի քաղաքի (2), զոր շինեաց
մեծ արքայն Հայոց Տրդատ, բերդ և ապա-
ւոյթ 'ի մեծամեծ վիմաց Թագաւորութեան
իւրոյ, որ կայ անխախտելի մինչեւ ցայսօր։

անուն, յորոյ գերեզմանին վերայ կառուցաւ յետոյ եկեղեցի։

(1) Խորազմիա է աշխարհ 'ի հիւսիսոյ Խորասանու, յորոյ անուն և բնակիչքն կոչէին Խորազմիք. կամ Խորազմեցիք։ Զայսու ժամանակաւ եկեալ այսմ երկիր Մահամէտ Խո-րազմ շահ՝ հայր Ջալալադինի, որ և Ճէլալէտտին, որ կան-գնեաց զԹագաւորութիւնն Խորազմեայց։

(2) Գառնի քաղաք շինեցաւ նախ 'ի Գեղամայ Նահապետ-էն և անուանեցաւ Գեղամի, յետոյ նորոգեալ 'ի Թոռանէ նորին Գառնիկ անուն՝ կոչեցաւ Գառնի։ Մովսէս Խորե-նացի. Ա. 12։ Իսկ Տրդատ շինեաց անդ տուն հովանոց զարմանաշէն վասն քեռ իւրոյ Խոսրովիդխտոյ։ Անդ. Բ. 87։

Իսկ ամիրապետութիւն Իւանէ ամենայն զօրօքն Վրաց գնաց և իջաւ 'ի լեառն Գառնոյ, որ կոչի Կղուշերտն. և այսպ խորհեցան միաբան առնուլ զմեծ իշխանն քաջ և անուանի զԻւանէ զեղբայր Շալուային (1) փոքր ինչ զօրօք ընդառաջ թշնամեացն. որոյ հասեալ 'ի դաշտն Գառնոյ որ կայր առաջի թուրքաց հարիւր մղոնօք 'ի զառէ. այպա ընդդէմ ելին ամօրէն թշնամիքն, և սկսան պատերազմել ընդ նմա. և յորժամ խառնեցան 'ի միմեանս Իւանէ եղբայր Շալուային (2) և թշնամիքն, յայնժամ առաքեաց զմի 'ի զօրաց իւրոց առ մեծ զօրհեծելոյն գալ փութանակի յօգնութիւն նմա. և նա 'ի գնալն ձայնէր որպէս ավարութիւն է, թէ՝ շուտով հասիք։ Եւ ձայնն ձիաւորին ոմանց լսելի լինէր թէ՝ փախիք և մի գայք, զի չենք կարող դիմանալ դոցա. և ոմանց լսիւր թէ՝ փութանակի հասիք, կարող ենք յաղթել։ Եւ մինչ 'ի յայս էին.

(1) Իւանէ և եղբայր իւր Շալւէ էին իշխանք ազատք Վրաց։

(2) Կիրակոս որ զայս պատերազմ պատմէ. (Երես 131) ասէ զայսր Իւանեայ, եթէ ուխտ եդեալ էր ընդ թագաւորին Վրաց, զի թէ յաղթեսցեն թշնամեացն. զամենայն Հայս որ ընդ իշխանութեամբ թուրքաց կային, դարձուցանել 'ի կրօնս Վրաց։ Այլ ընդ հակառակն զօրքն նոցա անկեալ 'ի գերութիւն բռնաբար թլփատեցան 'ի թշնամեացն։ Եւ եղեւ այս բան Կիրակոսի 'ի թուին Հայոց ՈՀԴ. այն է 1225.

փախեաւ ալթարաքն Յուանէ անկանելով յա-
մուրս երկրի իւրոյ , և բազմութիւն զօրացն
փախստեամբ անկանէին 'ի գիւղաքաղաքն
Պռանի , որ շինեալ է 'ի վերայ բարձր քա-
րախորամի , և գտեալ յորդ անցանի ընդ տակ
խորամին : Նա յորժամ 'ի փախուստ դարձան
անկանելով յամուրս տեղեացն , նոյն ժամէն
մրրիկ փոշւոյ մթացոյց զաչս փախուցելոցն ,
և առ հասարակ լցան ընդ բարձր և ընդ յորժ
ահագին խորամն Պռանոյ 'ի գետն յորձա-
նուտ : Նա խորաղմիքն յետոյ հաւաքեալ զմնա-
ցեալն որոյ մատնէին , և ասացին թէ՝ ալամ (1)
վրացւոյն հրով այրեցաւ , նշանակեալ թէ՝
աստուածային է բարկութիւնն : Իսկ զքաջ
իշխանն Շաւէ ըմբռնեցին կենդանւոյն , և
տարան առ սուլտանն իւրեանց : Նա այսպիսի
ահագին վրէժս էառ Աստուած յամբարտա-
ւան և 'ի կենցաղաւէր ազգէն Վրաց , վասն
անարգելոյ նոցա զհաւատս Հայոց :

Իսկ Պարսիկքն որ 'ի Դուին քաղաք , լու-
եալ զպարտութիւն Վրացւոյն , ըմբռնեցին
զգլխաւորս քաղաքին և սպանին , և տարա
սուր եդեալ կոտորեցին զամենայն քրիստո-
նեայսն որ 'ի քաղաքին : Նա զայսոսիկ լու-
եալ քաջ և անուանի իշխանն Հայոց որդին
մեծին Վասակայ՝ թոռն Խաղբակայ , Պռօշ

(1) Այն է դրօշ . Սանճաք .

ածուն, և առեալ զզօրս իւր գնայ 'ի Դը-
ւին, և գտեալ պատճառս բանի մտէ 'ի քաղա-
քն սիրոյ պատճառաւ, և զուգէ սէր խա-
բէութեամբ, և կոչէ զամենայն մեծամեծսն
որ 'ի նմա. և 'ի սիրելն զնոսա՝ յանկարծակի
յիշէ զկոտորումն քրիստոնէից թէ զինչ
պատճառաւ արարին. և ապա հրամայեաց
զօրացն իւրոց, առ ժամայն սուր 'ի վերայ
եդեալ կոտորեցին առ հասարակ. և ինքն
դարձաւ խաղաղութեամբ 'ի տուն իւր։

Յայսմ ժամանակի եկին Խորազմիքն և
պաշարեցին զմեծ քաղաքն Վրաց զՏփխիս.
և Պարսիկքն որ կային 'ի քաղաքին, ետուն զը-
քաղաքն 'ի ձեռս Խորազմեացն. և Խորազմիքն
խոստացան թողուլ զՊարսիկսն խաղաղու-
թեամբ ստացուածօք իւրեանց. Իսկ ապա ա-
ռեալ զքաղաքն կոտորեցին զամենայն քրիս-
տոնեայսն որ 'ի նմա, նոյնպէս և զՋհուտսն
և զամենայն ազգ բաց 'ի Պարսիցն (1). Եւ ա-
րարեալ ընդ ձեռամբ իւրեանց զքաղաքն
գնացին։ Իսկ 'ի գալն գառնանային ժամա-
նակին, եկն Թագաւորն Վրաց 'ի Տփխիս,
և կոտորեաց զՊարսիկսն որ 'ի նմա. և մը-
նաց քաղաքն աւեր 'ի մարդոյ և յանասնոց։
Յայսմ ամի աստղ մի գիսաւոր երեւեցաւ
յերկինս, և անյայտ եղեւ։

(1) Կիրակոս, յէր. 132.

Ի Թուին Հայոց ՈԿԶ (677). Նմանապէս Թագաւորն Ամբրուրն(1) եւ բազում զօրօք ՚ի Կիպրոս կղզի. և գնացեալ յԵրուսաղէմ երկրպագեաց սուրբ տեղեացն: Իսկ Փրերք Դամբլուն(2) առաքեցին ՚ի Քէմլն, որ էր սուլտան Մսրայ, գալ նմա զօրօք, որպէս զի տացեն զԱմբրուրն ՚ի ձեռս նորա: Իսկ Քէմլն առեալ զԹուխտ Փրերացն և յղեաց առ Ամբրուրն, և եցոյց նմա զնենգութիւն ազգին իւրոյ. և ետ սիրով զԵրուսաղէմ յԱմբրուրըն. և հաստատեցին ընդ միմեանս դաշն և ուխտ սիրոյ յաւիտեան: Եւ Ամբրուրն առեալ զԳերեզմանն(3) ետ ՚ի Ֆռանգն, և հանին զՏաճիկքն: Եւ ինքն Ամբրուրն գնաց յաշխարհն իւր. և յայնմ հետէ սպառնայր Դամբլուն քակել զտունս նոցա որ յայնկոյս ծովուն:

(1) Այն է կայսրն (Ամբրուր. Empreur) Փրետերիկոս Բ, որդին Հենրիկոսի Զ:

(2) Դամբլուն փրերք՝ էին եղբարքն Տաճարականաց կարգի, որք մեծէին և պատերազմ ընդդէմ Այլազգեաց. և զօրաւորք էին յայնժամ բանիւ և մեծութեամբք:

(3) Ոչ միայն Գերեզմանն սուրբ, այլ և բովանդակ քաղաքն Երուսաղէմ առաւ Փրետերիկոսի ՚ի սուլտանէն հանդերձ պայմանաւ և դաշամբ սիրոյ տասն ամաց և վեց ամսոց: Իսկ կայսրն պսակեալ անդ առաջի Գերեզմանին Թագաւոր Երուսաղէմի՝ առանց եկեղեցական արարողութեան, քանզի նզովեալ էր ՚ի պապէն, թողեալ և զՏաճարն սուրբ Յարութեան և զքաղաքն՝ չոգաւ ՚ի Պտղոմայիդ: Տես ՚ի Միշօ. Պատմ. Խաչակրաց. Հտ. Գ. Գլ. 13.

*Ի Թուին Հայոց ՈՀԸ (678), Քէմլն էառ զԴամասկոս 'ի Մելիք Նասրէն, և ետ եղ-բօր իւրում Աշրաֆուն, և տայ նմա տեղիք բնակութեան զՀաւպայք և զԲարայք և ըզ-Սամլուզ և այլ քաղաքս տեղիս . իսկ զՄիջա-գետս Ասորւոց զՄուռհա և զԽառան և զՍը-րուճ, որ էր եղբօրն իւրոյ Աշրաֆուն, յին-քըն առնու Քէմլն ։*

## Յիշատակարան հին գրչագրիս

*Ի Թուականին Հայոց ՈՀԸ, կատարե-ցաւ աշխարհապատում պատմութիւնս Տէր Միխայելի սուրբ պատրիարքին Ասորւոց, զոր ստուգիւ գրեաց ծայրաքաղ առնելով յաստուածաստեղծ մարդոյն Ադամայ . սկիզ-բըն առնելով ասաց մի ըստ միոջէ զկարգ և զծնունդ և զշինութիւն արարածոց զոր նախ-քան զՋրհեղեղն աշխարհակործան, և զոր յետոյ Ջրհեղեղին յորդւոյն Նոյի շինել և աճել ըստ հրամանի և ուխտին ամենակալին Աստուծոյ՝ որ ետ ընդ Նոյա յետ Ջրհեղե-ղին ։ Եւ 'ի վերայ այսորիկ զկարգ և զԹիւ-Թագաւորացն Հռոմոց և Պարսից . և զկնի Պարսից Թագաւորութեանն վճարելոյ՝ սկիզ-*

բըն առնէ Թագաւորութեանն Արաբկաց որ են Տաճիկք. և'ի կատարածի սոցա զԹուր-քաց սուլտանութիւնն և զտիրելն բազում աշխարհաց և գաւառաց, զոր դեռ այժմս ունին բռնացեալք ընդդէմ բազում ազգաց և ազանց: Որ են Թիւք ամացն յելիցն Ադամայ մինչեւ 'ի ժամանակ կատարելոյ գրոցս 'ի ձեռն Միխայելի Ասորւոց պատրիարքի, ամք վեց հազար չորս հարիւր և երեսուն. և այժմ է Թիւս Հայոց ՉԻԲ, որ գրեցաւ գիրքս ձեռամբ տառապելոյ Գրիգորոյ. զոր կամաւքն Աստուծոյ գրեսցուք և մեք զպակասութիւն սորա ամաց քառասուն և չորից:

# ՆՈՐԻՆ

# ՏԵԱՌՆ ՄԻԽԱՅԵԼԻ ԱՍՈՐԻՈՑ

# ՑԱՂԱԳՍ

# ՔԱՀԱՆԱՅՈՒԹԵԱՆ

# ՆՈՐԻՆ

## ՏՆ. ՄԻԽԱՅԵԼԻ ՊԱՏՐԻԱՐՔԻ

## ԱՍՈՐՒՈՑ

**Յաղագս քահանայութեան թէ ուստի՛ սկսանի եւ ո՛ւր կատարի, եւ թէ զի՛նչ է քահանայութիւնն.**

ՍԿԻԶԲՆ քահանայութեան Աստուած է, անսկզբնաբար և անբաւապէս ունելով զնա և ոչ յումեքէ առեալ, և ոչ զոք ունելով վերագոյն, որում քահանայեաց և փառաւորեաց. և վասն այնորիկ միայն բաշխելով և պարգեւելով է քահանայութիւն, և ոչ է ընդ հարկիւ: Իսկ արդ համարձակելի է մեզ 'ի ծանօթութենէ գրոց իշխել և ասել զամենասուրբն Հայր քահանայել զանհասական ծնունդն Որդւոյ, և 'ի բղխումն Հոգւոյն անթարգմանաբար և անսկզբնապէս, անժամանակ, անմիջնորդ, անհատապէս և անախտաբար, յէութենէ և 'ի բնութենէ իւրմէ. անձինք և դէմք կատարեալք, և 'ի նոյն բնութեան և յաստուածութեան և 'ի մի զօ-

